ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ ● 1966

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

# Содержание








# ՀՈՅԱԿԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Ավարտվեց Հայաստանի կոմունիստական պարտիայի XXIV համագումարը: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն իրենց հերթական համագումարն էին եկել կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած աննախընթաց հաջողություններով, Սովետական Միության կոմունիստական պարտիայի ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը սերտ համախմբվածությամբ:

Համագումարը լսեց և քննարկեց ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ե. Քոչինյանի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմպարտիայի Կենտրոնական կոմիտեի 1964 թվականի հունվարից մինչև 1966 թվականի մարտ ամիսը ընկած ժամանակամիջոցի գործունեության մասին և նրա կատարած աշխատանքին տվեց բավարար գնահատական: Համագումարը լսեց ու քննարկեց նաև Հայաստանի կոմունիստական պարտիայի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումը, ընտրեց ՀԿՊ Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի նոր կազմ:

Համագումարում «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿՊ XXIII համագումարի դիրեկտիվների նախագծի» մասին զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Բ. Հ. Մուրադյանը: Համագումարը միահամուռորեն հավանություն տվեց նոր հնգամյա պլանի դիրեկտիվների նախագծին:

***

Համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ և պատգամավորների ելույթներում արծարծվեցին հրատապ հարցեր և նշվեցին այն մեծ տեղաշարժերը, որ հաշվետու ժամանակաշրջանում տեղի են ունեցել մեր երկրի բազմաբովանդակ կյանքում, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական ու մյուս կազմակերպությունների աշխատանքում: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները հետևողականորեն կենսագործելով ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան, նոյեմբերյան (1964 թվական), մարտյան և սեպտեմբերյան (1965 թվական) պլենումների որոշումները, գործնականում զգալիորեն բարելավեցին տնտեսության ղեկավարումը, նրա հիմքում դնելով գիտական բազա: Այդ ժամանակաընթացքում ավելի բարձրացավ պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը, նրանք սկսեցին ավելի գործնական ու խոր կերպով զբաղվել աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց ստեղծագործական

նախաձեռնության վարգացման, տնտեսական ու կուլտուրական շինարարության հրատապ հարցերով:

Ուղեցույց ունենալով Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXII համագումարի, պարտիայի Կենտրոնական կոմիտեի վերջին պլենումների որոշումները և ՍՄԿՊ ծրագիրը, Հայաստանի պարտիական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում ավելի են ամրապնդել բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի հետ ունեցած իրենց կապերը և ամենօրյա կազմակերպական ու քաղաքական աշխատանքի միջոցով նրանց մոբիլիզացրել հաջողությամբ լուծելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, կոմունիստական հասարակական հարաբերությունների վարգացման և նոր մարդու ձևավորման բարդ ու պատասխանատու խնդիրները: Այդ ուղղությամբ շատ գործ է կատարված, բայց գլխավոր անելիքները դեռ առջևում են:

Ինչպես միշտ, այնպես էլ հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմունիստական պարտիան և նրա Կենտրոնական կոմիտեն իրենց գլխավոր ուշադրությունը բևեռել են ժողովրդական տնտեսության հիմքերի հիմքի՝ արդյունաբերության և, ամենից առաջ, ծանր արդյունաբերության վարգացման վրա: Նրանք կոնկրետ միջոցառումների են դիմել արտադրական ձեռնարկությունները ժամանակակից վարգացած տեխնիկայով և սարքավորումներով վինելու, տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, արտադրության մեջ գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը լայնորեն արմատավորելու և ներքին ռեզերվներն արդյունավետ օգտագործելու համար: Այդ և մյուս միջոցառումների շնորհիվ ռեսպուբլիկայում արդյունաբերությունը վարգացել է արագ տեմպերով:

Հայաստանի պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները իրենց համագումարին ու ժողովրդին օրինական հպարտությամբ վեկուցեցին, որ յոթնամյակում ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության ծավալն ավելացնելու վերաբերյալ Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXI համագումարի դիրեկտիվները պատվով են կատարված: Սերտորեն համագործակցելով ՍՍՌՄ եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորների հետ, Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները անցած յոթնամյակի տարիներին արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը ավելացրին մոտ 2,2 անգամ և նախատեսված պլանից դուրս թողարկեցին 36 միլիոն ռուբլու տարբեր տեսակի արտադրանք: Ռեսպուբլիկայում առավել բարձր տեմպերով վարգացան գունավոր մետալուրգիան, էլեկտրատեխնիկական, քիմիական, շինանյութերի, սարքաշինական, հաստոցաշինական արդյունաբերությունը և այլն:

Պարտիական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ ու օգնությամբ յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայում հաջողությամբ կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին 300 արդյունաբերական նոր ձեռնարկություն և խոշոր արտադրամաս: Դրանց թվում են Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, Կիրովականի արհեստական մետաքսաթելի և ճշգրիտ հաստոցների գործարանները, Երևանի ավտոբեռնիչների, հաստոցանորմալ, Լենինականի ստրոմմաշ, հղկող հաստոցների գործարանները և բազմաթիվ այլ ձեռնարկություններ, որոնք երկրին տալիս են մեծ քանակությամբ արտադրանք:

Ուշագրավն ու բնորոշն այն է, որ յոթնամյակի տարիներին լայն ծավալ ստացավ կապիտալ շինարարությունը, որի հաշվին ռեսպուբլիկայի ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկների հիմնական ֆոնդերն աճեցին ավելի քան 1,7 միլիարդ ռուբլով:



Նշանակալից աշխատանք է կատարվել էներգետիկայի վարգացման ուղղությամբ, որը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերելքի հիմքն է: Մեր շինարարների ու մասնագետների գործադրած ջանքերի շնորհիվ յոթնամյակի տարիներին շարք մտան էլեկտրաէներգիայի արտադրության այնպիսի հսկաներ, ինչպիսիք են Երևանի և Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանները, Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները:

Բայց, ինչպես նշեց ՀԿՊ XXIV համագումարը, էլեկտրաէներգիայի արտադրության ներկայիս մակարդակը չի բավարարում ժողովրդական տնտեսության աճող պահանջները: Դրա համար էլ նախատեսվում է 1966 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը, անցած տարվա համեմատությամբ, ավելացնել 36 տոկոսով, ըստ որում իր լրիվ կարողությամբ գործարկել Երևանի ջերմաէլեկտրակայանը, Հրազդանի ջերմաէլեկտրակայանի 50 հազար կիլովատ կարողությամբ առաջին ագրեգատը: Դրա հետ միասին համագումարը խնդիր դրեց ամեն կերպ արագացնել Տաթևգէսի, ինչպես նաև Արփա-Սևան թունելի շինարարական աշխատանքները, որոնք պարտիական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններից, բոլոր շինարար բանվորներից ու մասնագետներից պահանջում են ուժերի առավել լարում:

Ինչպես Սովետական Միության, այնպես էլ Սովետական Հայաստանի արդյունաբերության հետագա վարգացման լուրջ խթան հանդիսացավ արդյունաբերության կառավարումը բավարարելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումը, որի կենսագործման առաջին արդյունքներն ակներև են: Բավական է նշել, որ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերական արտադրանքի արտադրությունը աճեց 12,3 տոկոսով:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը և գլխավորելով բանվորների ու ինժեներա-տեխնիկական անձնակազմի ստեղծագործական նախաձեռնությունը, որոշակի հաջողությունների են հասել նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, խնայողության ռեժիմի արմատավորման բնագավառներում: Միայն անցած տարի, նախորդ տարվա համեմատությամբ, ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացումը կազմում է 104, իսկ շինարարության մեջ՝ 106 տոկոս: Թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ վերջին երկու տարում ստացվեց 21 միլիոն ռուբլու գերպլանային տնտեսում:

Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարն ըստ արժանվույն գնահատեց ռեսպուբլիկայի գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպությունների, գիտության տարբեր բնագավառների գործիչների՝ մաթեմատիկոսների, ֆիզիկոսների, քիմիկոսների և մյուսների արգասաբեր գործունեությունը: Արտադրության աշխատողների սերտ համագործակցությամբ նրանք հաշվետու ժամանակաշրջանում նշանակալից գործ են կատարել արտադրության մոդեռնացման, նրա կատարելագործման ու ավտոմատացման, նորագույն տեխնիկայի ստեղծման ու արտադրության մեջ դրա ներդրման ասպարեզներում: Բավական է ասել, որ միայն 1965 թվականի ընթացքում ստեղծվել ու պատրաստվել են 28 նոր տեսակի մեքենա, մեխանիզմ, ապարատ և նոր սարքավորում: Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել են 25 նոր տեսակի արտադրանքի արտադրությու-

նը, այդ թվում բարձր արտադրողական հաստոցներ, սինթետիկ կաուչուկներ, քիմիական թելեր, լայն սպառման իրեր և կուլտուր-կենցաղային առարկաների լավագույն տեսակներ: Այդ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում մոդեռնացված է 2879 միավոր արտադրական սարքավորում: Ի վերջո մեր գիտնականների, մասնագետների և արտադրության վարպետների ստեղծագործական մտքի, բարդ ու նուրբ աշխատանքի արդյունք են «Հրազդան—2» և «Նաիրի» էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, որոնք միջազգային տոնավաճառներում գերազանց քննություն բռնեցին ու արժանացան բարձր գնահատականի:

Այս ամենի հետ միասին, համագումարը լուրջ թերություններ բացահայտեց արդյունաբերության ասպարեզում: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ չնայած արդյունաբերությունն ընդհանուր առմամբ գերակատարել է համախառն արտադրանքի պլանային առաջադրանքները, բայց, միաժամանակ, չի կատարել արտադրանքի մի քանի տեսակների արտադրության պլանը:

Դեռևս քիչ չէ արդյունաբերական այն ձեռնարկությունների թիվը, որոնք գործարկված կարողությունների դանդաղ յուրացման, աշխատանքի վատ կազմակերպման ու նյութատեխնիկական անբավարար մատակարարման պատճառով սիստեմատիկաբար չեն կատարում արտադրանքի թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները: Ավելին, որոշ արտադրական ձեռնարկություններ, օգտվելով անհրաժեշտ հսկողության ու պահանջկոտության բացակայությունից, թույլ են տալիս անարտադրողական մեծ ծախսեր, վատ են օգտագործում եղած տեխնիկան ու սարքավորումները, շարունակում են պահանջարկ չունեցող մի շարք ցածրորակ ապրանքների թողարկումը, որից պետությունն զգալի վնաս է կրում: Լուրջ թերություն է և այն, որ վերջին տարիներս ձեռնարկությունների ավելի քան 25 տոկոսը չի կատարել շահույթների պլանը: Ընդ որում, միայն 1965 թվականին այդ պլանը չկատարեցին 123 ձեռնարկություն, որոնք ժողովրդական տնտեսությանը պակաս տվեցին մոտ 10 միլիոն ռուբլու շահույթ:

Չնայած կապիտալ շինարարության ուղղությամբ կատարված որոշակի աշխատանքին, այդ ասպարեզում դեռևս կան էական թերություններ: Շատ ճյուղերում արտադրական կարողությունների գործարկման պլանը չի կատարվում: Այսպես. 1965 թվականին հիմնական ֆոնդերի գործարկման պետական պլանը կատարվել է 73 տոկոսով. չի կատարվել նաև պետական կապիտալ ներդրումների պլանը: Առանձին կառույցներում վատ են կազմակերպված շինարարական ու հարդարման աշխատանքները, ցածր է դրանց որակը, անբավարար են օգտագործվում շինարարական մեքենաներն ու մեխանիզմները:

Համագումարը պարտիայի քաղկոմներից, շրջկոմներից, սկզբնական կազմակերպություններից, մինիստրություններից ու գերատեսչություններից պահանջեց վճռական միջոցների դիմել արդյունաբերության ու շինարարության բնագավառներում եղած թերությունները վերացնելու և պետական պլանային առաջադրանքներն անթերի կատարելու համար: Համագումարը նրանց առաջնահերթ ու ամենահիմնական խնդիրը համարեց ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումի որոշումների հետևողական ու անշեղ կենսագործումը, որը կապահովի ռեսպուբլիկայի արդյունաբերության առավել ծաղկումը, ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների կատարումը: Այդ առաջադրանքները մեծ են ու պատասխանատու: Բավական է նշել, որ նոր



հնգամյակում ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը ավելանալու է մոտավորապես 1,8, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,3, հանքային պարարտանյութերի արտադրությունը՝ 3,7, սարքերի և ավտոմատացման միջոցների արտադրությունը՝ 1,7, մետաքսե գործվածքներինը՝ 1,8, տրիկոտաժեղենինը՝ 1,8—1,9, գինենյութերինը՝ 2, պտղաբանջարեղենի պահածոներինը՝ 2 անգամ:

Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց գյուղատնտեսության զարգացման հարցերին, նշելով, որ հաշվետու ժամանակաշրջանում և, հատկապես, ՍՄԿՊ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել գյուղատնտեսության վերելքի, կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի ամրապնդման, վճռական տեղամասերը գործիմաց կադրերով ապահովելու, կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և մյուս աշխատողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման ուղղությամբ:

Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան ամրապնդելու, հանքային պարարտանյութերի մատակարարումը ավելացնելու, ջրովի ցանքատարածություններն ընդլայնելու, հողամշակության կուլտուրան բարձրացնելու և աշխատանքի կազմակերպումը բարելավելու միջոցով ռեսպուբլիկայի պարտիական, սովետական կազմակերպությունները, կոլտնտեսային ու սովխոզային աշխատողները հասան այն բանին, որ ընդհանուր առմամբ ավելացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, աճեց կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտը, զգալի չափով բարձրացավ գյուղի աշխատավորների կենսամակարդակը:

Գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին և որակով կատարելու շնորհիվ 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը 9,8 ցենտներից հասավ 11 ցենտների, շաքարի ճակնդեղինը՝ համապատասխանաբար 240-ից 297-ի, ծխախոտինը՝ 6,8-ից 17,7-ի, կարտոֆիլինը՝ 66-ից 115 ցենտների:

Շաքարի ճակնդեղի աճեցման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար միութենական կառավարությունը 1965 թվականին ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրեց Ախուրյանի և Սպիտակի շրջանների ճակնդեղագործների մի մեծ խմբի: Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման արժանացավ Ախուրյան գյուղի կոլտնտեսության անվանի ճակնդեղագործուհի Մ. Շահբազյանը, որը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 555 ցենտներ շաքարի ճակնդեղ: Բարձր բերքի անվանի վարպետներ կան նաև մյուս շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում:

Որոշակի հաջողություններ են ձեռք բերված նաև անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման ուղղությամբ: Անասնաբուծական ֆերմաներում ավելացել է անասունների գլխաքանակը, կաթի, մսի, բրդի ու ձվի արտադրությունը:

Այս ամենի շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզները հաջողությամբ կատարեցին պետությանը մսի, կաթի, հացահատիկի, պտղի, բոստանային կուլտուրաների և շաքարի ճակնդեղի վաճառքի պլանները:

Սակայն, ինչպես արձանագրեց համագումարը, գյուղատնտեսության բնագավառում դեռևս կան էական թերություններ ու բացեր: Մեր շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում ցածր է գյուղատնտեսության վարման կուլտուրան, վատ

են օգտագործվում հողն ու տեխնիկան, քիչ են մտահոգվում գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը արմատավորելու, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության պրոգրեսիվ ձևերը կիրառելու համար: Ռեսպուբլիկայի մի շարք շրջանների առանձին տնտեսություններում անբավարար է անասնաբուծության կերի կայուն բազա ստեղծելու ուղղությամբ տարվող աշխատանքը, մեծ է կովերի ստերջությունն ու մատղաշների անկումը, ցածր է անասնաբուծության մթերատվությունը: Այդ բոլորի հետևանքով շատ տնտեսություններ ստանում են ցածր եկամուտ:

Գյուղատնտեսության համակողմանի զարգացումը համարելով կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներից մեկը, համագումարը պարտիական կազմակերպություններից, գյուղատնտեսական օրգաններից ու գիտահետազոտական հիմնարկներից պահանջեց ավելի մոտիկից ու խոր զբաղվել կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի հարցերով, օգնել նրանց եղած թերություններն արագ վերացնելու, արտադրությունն ամեն կերպ զարգացնելու, գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու:

Համագումարը գյուղական պարտիական ու սովետական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է ընթացիկ տարվանից լայն պայքար ծավալել Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների նոր հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները կատարելու և, առանձնապես, խաղողի, մրգի, բանջարեղենի, եթերայուղատու կուլտուրաների ու ծխախոտի արտադրությունն ավելացնելու համար:

Հայաստանի կոմպարտիան ու նրա Կենտկոմը հատուկ ուշադրություն են նվիրել ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացմանը, որը պարտիայի գործունեության գլխավոր նպատակն է: Վերջին երկու տարում ռեսպուբլիկայի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման ուղղությամբ իրագործվել են խոշոր միջոցառումներ: Միայն անցած տարում բանվորների ու ծառայողների միջին աշխատավարձը աճել է 8,7 տոկոսով: Դրա, ինչպես նաև կոլտնտեսականների եկամուտների ավելացմամբ բնակչության դրամական եկամուտներն աճեցին մոտ 15 տոկոսով: Զգալի չափով աճեցին նաև ժողովրդական կրթության, կուլտուրայի, առողջապահության, սոցիալական ապահովության, բնակարանաշինարարության, կենցաղային սպասարկման և այլ ծախսերը:

Լենինյան ազգային քաղաքականությունը հետևողականորեն կիրառելու շնորհիվ հաշվետու ժամանակաշրջանում իրենց զարգացումն ու ծաղկումն են ապրել Սովետական Հայաստանի կուլտուրան, արվեստն ու գրականությունը: Պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ վերջին երկու տարում ռեսպուբլիկայի քաղաքներում, բանվորական ավաններում ու գյուղերում զգալի չափով ընդարձակվեց դպրոցների, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների, ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների, կինոթատրոնների, ռադիոյի և հեռուստատեսության ցանցը: Մայրենի լեզվով լույս տեսան, սովետական ու արտասահմանյան շատ ժողովուրդների լեզուներով թարգմանվեցին և հրատարակվեցին սովետահայ նշանավոր գրողների ու արվեստագետների գործերը:

Առաջնորդվելով պարտիայի XXII համագումարի որոշումներով և ՍՄԿՊ ծրագրի դրույթներով, Հայաստանի կոմունիստական պարտիան հաշվետու ժամանա-



կաշրջանում որոշակիորեն բարելավվել է պարտիական կազմակերպական ու քաղաքական աշխատանքը, առաջադրված խնդիրների լուծման գործում բարձրացրել է սկզբնական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը: Պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել պարտիական կյանքի լենինյան նորմերի կենսագործման, ներպարտիական դեմոկրատիայի զարգացման և կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման ուղղությամբ:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել նաև արտադրության, կուլտուրայի ու գիտության բնագավառների առաջավոր մարդկանցով իրենց շարքերը համալրելու և երիտասարդ կոմունիստներին դաստիարակելու ուղղությամբ: 1964 և 1965 թվականներին Հայաստանի կոմունիստական պարտիան աճել է 12.013 մարդով:

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները խոշոր աշխատանք են կատարել բանվորներին, կոլտնտեսականներին, ինտելիգենցիային, մեր բոլոր աշխատավորներին ժողովուրդների լենինյան բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու, Սովետական Միության ռեսպուբլիկաների անխախտ միասնությունն ու սերտ համագործակցությունը ամրապնդելու և համատեղ ուժերով կոմունիզմի կառուցման գործն առաջ տանելու համար:

Գոհունակությամբ պետք է նշել, որ վերջին տարիներում Սովետական Հայաստանն ավելի ու ավելի մեծ չափերով է լայնացրել իր տնտեսական ու կուլտուրական կապերը Ռուսաստանի, ուկրաինական, վրացական, ադրբեջանական, էստոնական և սովետական մյուս եղբայրական ռեսպուբլիկաների հետ:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման համար մղվող պայքարում Հայաստանի կոմպարտիան որոշակի աշխատանք է կատարել նոր մարդու ձևավորման, նրան կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներով դաստիարակելու և մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով զինելու գործում: Պարտիական կազմակերպությունների օգնությամբ կոմունիստներն ու տասնյակ հազարավոր անպարտիականներ քաղխմբակներում, սեմինարներում և ինքնակրթության միջոցով բարձրացնում են իրենց քաղաքական մակարդակը, խորապես ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմը, որը նրանց ուղղություն է ցույց տալիս և օգնում պրակտիկ աշխատանքները հաջողությամբ կատարելու: Հաշվետու ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունները քիչ գործ չեն կատարել նաև կադրերի որակավորման, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ:

Այդ ամենով հանդերձ, դեռևս լուրջ թերություններ կան աշխատավորության և, առանձնապես, երիտասարդության դաստիարակության գործում: Առանձին պարտիական կազմակերպություններ ձևական մոտեցում են ցուցաբերում քաղաքական-մասսայական աշխատանքի նկատմամբ, շերտավորված աշխատանք չեն կատարում բնակչության տարբեր խավերի շրջանում, անբավարար են օգտագործում իդեոլոգիական աշխատանքի նոր ձևերն ու մեթոդները:

Պարտիայի առանձին քաղկոմներ ու շրջկոմներ դեռևս ամբողջապես չեն հրաժարվել տնտեսության ղեկավարման հնացած ձևերից ու մեթոդներից, մակերեսորեն են ղեկավարում սկզբնական պարտիական կազմակերպություններին, նրանց բազմակողմանի օգնություն ցույց չեն տալիս կազմակերպական ու քաղաքական աշխատանքը լայնորեն ծավալելու և առաջադրված խնդիրների ժամանակին կա-

տարումն ապահովելու համար: Առանձին պարտիական կազմակերպություններում երբեմն թույլ են տրվում պարտիական կյանքի նորմերի, պարտիական ղեկավարության, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության լենինյան սկզբունքների խախտումներ, կազմակերպական կենդանի աշխատանքը փոխարինվում է դեկլարատիվ որոշումներով, անհրաժեշտ պահանջկոտություն չի ցուցաբերվում հանձնարարված գործում թերացող ղեկավարների ու կոմունիստների նկատմամբ, վճռական պայքար չի տարվում պարտիական ու պետական կարգապահության բարձրացման համար:

Համագումարը պարտիայի քաղկոմներին, շրջկոմներին ու սկզբնական կազմակերպություններին հանձնարարեց հետևողականորեն կատարելագործել պարտիական աշխատանքի ձևերն ու մեթոդները, կոնկրետ միջոցների դիմել եղած թերությունները վերացնելու, պարտիական մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը բարձրացնելու, պարտիական կյանքի լենինյան նորմերը խստորեն պահպանելու և բյուրոկրատիզմի երևույթներին իսպառ վերջ տալու:

Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարը պարտիական կազմակերպություններից, ստեղծագործական միություններից, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության օրգաններից, կուլտուր-լուսավորական հիմնարկներից պահանջեց ուժեղացնել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, մեր ամբողջ բնակչության կոմունիստական դաստիարակության աշխատանքը, բոլոր միջոցներով ծավալել ու խորացնել մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան, հարձակողական, անզիջում պայքար մղել բուրժուական գաղափարախոսության դեմ, հաղթահարել ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումները:

Ամփոփելով հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշխատանքի արդյունքները, Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության հետագա զարգացման, պարտիական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի ծավալման և մյուս հարցերի մասին ընդունեց համապատասխան որոշում:

Համագումարը պարտիայի քաղկոմներից, շրջկոմներից և սկզբնական կազմակերպություններից պահանջեց կազմակերպական ու քաղաքական ամենօրյա աշխատանքի միջոցով ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և մյուս բնագավառների բոլոր աշխատողներին մոբիլիզացնել ու նրանց ողջ ուժերը ի սպաս դնել պատվով կատարելու Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանը, որը կոչված է ապահովելու մեր հասարակության նշանակալի առաջընթացը կոմունիստական շինարարության ուղիով, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հետագա ծաղկումը, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը:

Հայաստանի կոմունիստները, մեր բոլոր աշխատավորները, ոգևորված սովետական երկրի զարգացման վառ հեռանկարներով, ջանք չեն խնայի պարտիայի առաջադրած մեծ ու հոյակապ խնդիրների լուծման համար:



# ՄԵԾ ԱՌԱՋԸՆԹԱՑ ՔԱՅԼ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան պլենումը քննարկեց և հավանություն տվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվների նախագծին: Պլենումը որոշեց դիրեկտիվների նախագիծը քննարկել պարտիական կազմակերպություններում, աշխատավորների ժողովներում, մամուլում:

Լիակատար վստահությամբ կարելի է ասել, որ պարտիայի մշակած այդ կարևորագույն փաստաթղթի քննարկումը իրոք համաժողովրդական բնույթ կկրի, կնպաստի աշխատավորների արտադրական ու քաղաքական ակտիվության աճմանը, սոցիալիստական մրցության ծավալմանը:

Սովետական ժողովուրդը, անշեղորեն հետևելով լենինյան գլխավոր գծին, հաջողությամբ լուծում է մեր երկրում կոմունիզմի կառուցման՝ ՍՄԿԿ ծրագրով առաջադրված պատմական խնդիրը: Դրա փայլուն վկայությունը յոթնամյա պլանի կատարման ընթացքում սովետական ժողովրդի խոշոր հաջողություններն էին տնտեսական ու կուլտուրական շինարարության, գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների պլանը մի նոր առաջընթաց քայլ կլինի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման տեմպերն արագացնելու գործում: Հիրավի, դիրեկտիվների նախագիծն ապշեցնում է առաջադրված խնդիրների, հիմնական պլանային ցուցանիշների վիթխարիությամբ: Հնգամյակում Սովետական Միության ազգային եկամուտը կմեծանա 38—41 տոկոսով, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ 1,3 անգամ: Հինգ տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը կմեծանա մոտ 1,5 անգամ, այդ թվում՝ արտադրության միջոցների արտադրությունը՝ 49—52, իսկ սպառման ապրանքների արտադրությունը՝ 43—46 տոկոսով:

Արդյունաբերության զարգացման նախատեսվող թվերը, իրոք, վիթխարի են: Բայց դրանք միանգամայն ռեալ են և հիմնվում են մեր էկոնոմիկայի ունեցած արտադրական ռեսուրսների ու ռեզերվների օբյեկտիվ գնահատման վրա, բխում են սոցիալիստական հասարակության գիտականորեն հիմնավորված պահանջմունքներից:

Նոր հնգամյա պլանը,— ասված է դիրեկտիվների նախագծում,— կոչված է ապահովելու մեր հասարակության նշանակալի առաջընթացը կոմունիստական շինարարության ուղիով, նյութատեխնիկական բազայի հետագա զարգա-

ցումը, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը: Պարտիան հնգամյակի գլխավոր տնտեսական խնդիրն է համարում՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերության հետագա նշանակալի աճ, գյուղատնտեսության զարգացման արագ ու կայուն տեմպեր և դրա շնորհիվ էապես բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, ավելի լրիվ բավարարել բոլոր սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները:

Դիրեկտիվների նախագծում նշված են ժողովրդական տնտեսության առավել արդյունավետ զարգացման ուղիները: Հնգամյա պլանի միջուկն է հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որը ձեռք կբերվի տեխնիկական առաջադիմության, աշխատանքի ու արտադրության կազմակերպումը կատարելագործելու, արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործումը բարելավելու, արտադրանքի որակը լավացնելու, խնայողության խստագույն ռեժիմի պահպանման շնորհիվ:

Նոր հնգամյակի հիմնական ուղղություններից մեկը հանրային արտադրության կառուցվածքի կատարելագործումն է՝ ծանր ինդուստրիայի բազայի վրա: Այդ վերաբերում է, ամենից առաջ, գյուղատնտեսությանը. նպատակ է դրվում ո՛չ միայն ապահովել նրա կայուն զարգացումը, այլև գյուղատնտեսության աճի տեմպերը մոտեցնել արդյունաբերության աճի տեմպերին: Գյուղատնտեսության գլխավոր խնդիրը պարտիան համարում է հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ավելացումը՝ բնակչության սննդամթերքների և արդյունաբերության գյուղատնտեսական հումքի պահանջմունքներն ավելի լավ բավարարելու նպատակով: 1966—1970 թվականներին նախատեսվում է գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը, նախորդ հինգ տարիների համեմատությամբ, մեծացնել 25 տոկոսով: Գյուղատնտեսության բնագավառում ուշադրությունը պետք է կենտրոնացվի հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրության ավելացման վրա: Հնգամյակում հացահատիկի միջին տարեկան արտադրությունը ամբողջ երկրում, նախորդ հինգ տարիների համեմատությամբ, կավելանա 30 տոկոսով:

Արտադրության արդյունավետության բարձրացումը, արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործման բարելավումը, մեքենաների, սարքերի, արտադրանքի բոլոր տեսակների հուսալիության, դիմացկունության մեծացումը, լավորակ արտադրանքի թողարկման ապահովումը ուղղակի պայմանավորված են երկրի էկոնոմիկայի ղեկավարման բարելավմամբ: Դիրեկտիվների նախագծում նշված է պլանավորումը, արտադրության տնտեսական խթանումը կատարելագործելու, ձեռնարկությունների նախաձեռնությունն ու տնտեսական ինքնուրույնությունն ընդլայնելու, աշխատանքի արդյունքների հանդեպ աշխատավորների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու մասին: Պետք է անշեղորեն կենսագործել պարտիայի որոշումները, բոլոր մարդկանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով:

1966—1970 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվների նախագիծը նորից հաս-



տատում է, որ մեր պարտիայի Կենտրոնական կոմիտեն, սովետական կառավարությունը անդուլ հոգատարություն են ցուցաբերում ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ: Դրա փայլուն վկայությունն այն է, որ նախատեսվում է հինգ տարում բանվորների ու ծառայողների աշխատավարձը միջին հաշվով բարձրացնել 20, իսկ հանրային տնտեսությունից կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները՝ 30—40 տոկոսով:

Առնվազն 40 տոկոսով կավելանան նաև սպառման հանրային ֆոնդերի հաշվին բնակչությանը տրվող դրամական եկամուտները, կմեծանան արտոնությունները, 1,3 անգամ կընդարձակվի բնակարանային շինարարության ծավալը, կընդլայնվի առևտուրը, կիջեցվեն ժողովրդական սպառման առանձին ապրանքների պետական մանրածախ գները, կբարելավվեն բնակչության կենցաղային և կուլտուրական սպասարկման ձևերը, կառաջանան նորերը:

Հնգամյակում է՛լ ավելի կծավալվի ժողովրդական կրթությունը: Հիմնականում կլուծվի երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության հարցը, կպատրաստվեն մոտ 7 միլիոն մասնագետ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ: Նորանոր միջոցառումներ կիրականացվեն առողջապահության, աշխատավորների հանգստի կազմակերպման, ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման բնագավառներում: Ավելի կփոքրանան գյուղական և քաղաքային բնակչության կենսամակարդակի զանազանությունները, որը կընպաստի քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների հաղթահարմանը, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի, սովետական ժողովրդի միասնության հետագա ամրապնդմանը:

Նախատեսվում է համակողմանի զարգացնել միութենական բոլոր ռեսպուբլիկաների էկոնոմիկան, ապահովել արտադրողական ուժերի նոր հուժկու վերելք և բարձրացնել բնակչության բարեկեցության մակարդակը: Ծրագրելով այդ՝ պարտիան ելնում է այն բանից, որ արտադրությունը տեղաբաշխելիս երկրի ամբողջ ժողովրդական տնտեսության շահերը ճիշտ զուգակցվեն ռեսպուբլիկաների շահերին: Այդպիսի պլանավորումը ավելի է ամրապնդում ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, ընդլայնում նրանց տնտեսական փոխհարաբերություններն ու սերտ համագործակցությունը:

Ինչպես հայտնի է, յոթնամյակում հսկայական վերելք ապրեց Սովետական Հայաստանի էկոնոմիկան: Այդ տարիներին արդյունաբերական արտադրության ծավալն ավելի քան կրկնապատկվեց, յոթնամյակը կատարվեց ժամկետից շուտ: Արդյունաբերությունը զինվեց նորագույն տեխնիկայով, ստեղծվեցին նոր ճյուղեր, բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ:

Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման համար նոր հնգամյակում ավելի պայծառ հեռանկարներ են բացվում. 1966—1970 թվականներին նախատեսվում է գունավոր մետալուրգիայի, ճշգրիտ մեքենաշինության, թեթև և սննդի արդյունաբերության հետագա զարգացում: Արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալն ավելանալու է մոտ 1,8 անգամ, այսինքն՝ միութենականի միջինից 30 տոկոսով ավելի: Այդ տարիներին ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 2,3 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ 3,7, սարքերինը և ավտոմատացման միջոցներինը՝ 1,7, մետաքսյա գործվածքներինը՝ 1,8, տրիկոտաժեղենինը՝ 1,8—1,9, գինենյութերինը՝ 2 և պտուղ-բանջարեղենի պահածոներինը՝ 2 անգամ: Հնգամյակում ավարտվելու է Երևանի խոշոր ջերմաէլեկտրակայանի և Տաթևի

հիդրոէլեկտրակայանի կառուցումը: Նոր կարողություններ են գործարկվելու Հրազդանի ջերմաէլեկտրակայանում, սկսվելու է ատոմային էլեկտրակայանի շինարարությունը: Մեծ աշխատանքներ են կատարվելու գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների արտադրական կարողությունների ավելացման ուղղությամբ: Հիմնականում կավարտվի Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը, որը մեծ նշանակություն կունենա ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման համար: Հնգամյակում արագ քայլերով առաջ կընթանա գյուղատնտեսությունը: Հատկապես կավելանա խաղողի, մրգի, բանջարեղենի, եթերայուղատու կուլտուրաների, ծխախոտի արտադրությունը, կընդլայնվեն ոռոգվող հողատարածությունները:

Արդեն ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, աշխատավորների ժողովներում, մամուլում լայնորեն քննարկվում է դիրեկտիվների նախագիծը: Սովետական մարդիկ հետաքրքրական շատ առաջարկություններ, դիտողություններ են անում, ցանկություններ հայտնում նախագծի առանձին գլուխների, արտադրողական ուժերի տեղաբաշխման, պլանավորման, արտադրության արդյունավետության բարձրացման և այլ հարցերի շուրջ:

Սովետական ժողովուրդը նոր հնգամյակի կատարումը համարում է իր ինտերնացիոնալ պարտքը՝ աշխարհում հեղափոխական ուժերի հանդեպ:

Դիրեկտիվներում նախատեսված է ընդլայնել արտաքին տնտեսական կապերը: Այդ հնարավորություն կտա է՛լ ավելի բարձրացնելու տնտեսական համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ, ամրապնդելու եղբայրական կապերը, ուժեղացնելու տնտեսական փոխհարաբերությունները Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի զարգացող երկրների հետ, ընդլայնելու արտաքին առևտուրը: Սովետական Միությունը կծավալի արտաքին առևտուրը նաև արդյունաբերությամբ զարգացած կապիտալիստական երկրների հետ, որոնք, իհարկե, պատրաստակամություն կցուցաբերեն այդ գործում: Նոր հնգամյակի կատարման շնորհիվ մեր երկիրը ավելի բարձր բնագծեր կնվաճի կապիտալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ, դրանով իսկ ավելի կմեծացնի սոցիալիզմի գաղափարների ազդական ուժը:

Նոր հնգամյա պլանի կատարումը կլինի միլիոնների, ամբողջ սովետական ժողովրդի, նրա նախաձեռնության, բանականության ու կամքի գործադրման արգասիքը: Բոլոր կոլեկտիվներից, յուրաքանչյուր աշխատողից պահանջվում է ուժեղացնել պատասխանատվությունը, ամրապնդել կարգապահությունը և զարգացնել ինքնագործունեությունը: Նոր պլանի հաջող կենսագործումը սերտորեն կապված է աշխատավորների գաղափարական դաստիարակության գործում պարտիական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման, մասսաների ստեղծագործական ակտիվության աճման համար ծավալված կազմակերպչական աշխատանքի կատարելագործման հետ:

Սովետական իշխանության տարիներին պարտիայի ղեկավարությամբ մեծ սխրանքներ են գործել մեր բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, փառապանծ ինտելիգենցիան: Սովետական ամբողջ ժողովուրդը ոգևորությամբ է ընդունում նոր հնգամյա պլանը և կկենսագործի նրա նախագծումները: Նոր հնգամյակը առաջընթաց քայլ կլինի այդ ճանապարհին:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Մ. ԱՆՏՈՆՅԱՆ

## ՍՈՒԲՅԵԿՏԻՎԻԶՄԻ ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐՄԱՏՆԵՐԸ ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ*

*Նախքան սուբյեկտիվիզմի իմացաբանական ու սոցիալական արմատներին անդրադառնալը անհրաժեշտ է թեկուզև ընդհանուր գծերով բացահայտել սուբյեկտիվիզմի էությունը:*

*Մարքսիզմ-լենինիզմը ինչպես միշտ, այնպես էլ այժմ անհաշտ պայքար է մղում ամեն տեսակ սուբյեկտիվիզմի դեմ, որի ծայրահեղ դրսևորումը վոլյունտարիզմն է: Սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի մեկնակետն իդեալիստական այն դրույթն է, թե հասարակական-պատմական պրոցեսի հիմքում դրված են ոչ թե հասարակության կյանքի օբյեկտիվ նյութական պայմաններն ու օրինաչափությունները, այլ այնպիսի հոգեկան գործոններ, ինչպիսիք են առանձին անհատների գիտակցությունն ու կամքը: Սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի կողմնակիցները գտնում են, թե մարդկանց գործողությունները պայմանավորված, պատճառաբանված են ոչ թե օբյեկտիվ պարագաներով, այլ գիտակցությամբ, կամքով, որոնք ամենևին կախված չեն շրջապատող սոցիալական միջավայրից և կազմում են պատմության վճռական ուժը:*

*Հասարակական զարգացման և, հատկապես, մեր երկրում սոցիալիստական շինարարության փորձն ակնառու ցույց է տալիս, որ պատմության ընթացքը որոշվում է ոչ թե աչքի ընկնող անձնավորությունների սուբյեկտիվ ցանկություններով, այլ ժողովրդական մասսաների պրակտիկ գործունեությամբ, որը պայմանավորված է պատմության օբյեկտիվ օրինաչափություններով:*

*Կոմունիզմի կառուցումը ժողովրդական մասսաների գիտակից ստեղծագործությունն է, որը հիմնված է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների վրա, իսկ այդ մասսաներին առաջնորդում է կոմունիստական պարտիան: Կոմունիզմը կարող է կառուցվել խիստ գիտական հիմունքներով: Ուստի և այն իր բնույթով չի հանդուրժում ոչ մի տեսակի սուբյեկտիվիզմ, որը խեղաթյուրում է օբյեկտիվ պրոցեսների ու փաստերի էությունը, անտեսում պատմական զարգացման օրենքները և արդարացնում կամայականությունը:*

*Ձնայած այս ակնհայտ ճշմարտությանը, այնուամենայնիվ, սոցիալիզմի*

** Հարցադրման կարգով (խմբ.):*

ժամանակ ևս մենք հանդիպում ենք սուբյեկտիվիզմի, որն, անշուշտ, մեծ վնաս է հասցնում մեր ընդհանուր գործին։ Սուբյեկտիվիզմը դրսևորվում է այնտեղ, որտեղ բացակայում է օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների հարաբերակցության գիտական, մարքս-լենինյան ըմբռնումը, որտեղ մարդկանց գործունեությունը խարսխվում է ոչ թե օբյեկտիվ պայմանների ու օրինաչափությունների, այլ զուտ սուբյեկտիվ նկատառումների ու դրդապատճառների վրա։

Սոցիալիզմի պայմաններում սուբյեկտիվիզմի դրսևորման մի քանի ձևերը համառոտակի բնութագրելիս կարելի է ասել, որ դրանք արտահայտվել են առավելապես ժողովրդական տնտեսության, գաղափարական ճակատի ղեկավարման տարբեր մարզերում, առհասարակ կոմունիստական շինարարության պրակտիկայում։

Սուբյեկտիվիզմը առանձնապես մեծ վնաս հասցրեց տնտեսական շինարարության և կոմունիզմի տնտեսական պրոբլեմների տեսական մշակման բնագավառում։ ՍՄԿՊ Կենտկոմի 1965 թվականի մարտյան և սեպտեմբերյան պլենումները բացահայտեցին գյուղատնտեսության ու արդյունաբերության զարգացման ասպարեզում եղած թերությունների պատճառները։ Այդ թերությունների արդյունք էին գլխավորապես այն բանի, որ էկոնոմիկայի ղեկավարման գործում թույլ էին տրվել սուբյեկտիվիզմ ու վոլյունտարիզմ, որոշ չափով անտեսվել էին տնտեսական օրենքների պահանջները։

Սուբյեկտիվիզմը, վոլյունտարիզմն առանձնապես վնասակար եղան ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման գործում։ Այսպես, մեր առաջընթացն արգելակող լուրջ դժվարությունների և հակասությունների գլխավոր պատճառներից մեկն այն էր, որ պլանավորման մեջ կիրառվում էր «կամային» մեթոդը։ Երկար ժամանակ կար և այժմ էլ նկատվում է անհամապատասխանություն ու որոշ հակասություն արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման տեմպերի, արտադրության ու սպառման միջև։ Մեր գյուղատնտեսությունն, ըստ էության, դեռ չի հասել այն մակարդակին, որպիսին անհրաժեշտ է սոցիալիստական երկրում և լիովին չի բավարարել ժողովրդական տնտեսության կարիքները։ Պլանավորման ասպարեզում «կամային», սուբյեկտիվիստական մեթոդն արտահայտվում էր, մասնավորապես, այն բանում, որ էկոնոմիկայի առանձին ճյուղերում առաջնորդվում էին վերևից կարգադրած, սակայն տնտեսապես չհիմնավորված որոշումներով։ Այսպես, օրինակ, երկրի հյուսիսային շրջաններում եգիպտացորեն ցանելը ոչ մի տնտեսական հիմնավորում չուներ։ Դեռ ավելին, այդ հսկայական վնաս հասցրեց մեր ժողովրդական տնտեսությանը։

Սուբյեկտիվիզմը դրսևորվեց նաև գների քաղաքականության, գյուղատնտեսության ֆինանսավորման ու վարկավորման ասպարեզում։ Մինչև վերջին ժամանակներս գյուղատնտեսական շատ մթերքների գները չէին հատուցում արտադրության օբյեկտիվ ծախսումները։

Սուբյեկտիվիզմ նկատվեց նաև գաղափարական ճակատում։ Գաղտնիք չէ, որ ՍՄԿՊ պատմության ներկայիս դասագրքի մեջ խիստ չափազանցված է առանձին անհատների դերը մեր պատմության այս կամ այն էտապում։

Փիլիսոփաների շրջանում սուբյեկտիվիզմը դրսևորվեց մի շարք հարցերում, մասնավորապես այն բանում, որ սովետական առանձին փիլիսոփաներ թերագնահատեցին մարքսիստական դիալեկտիկայի հետագա գիտական մշակումը որպես սոցիալական երևույթների հետազոտության մեթոդ, իսկ ոմանք



էլ, հակառակ օբյեկտիվ փաստերի, սկսեցին պնդել, թե հակասությունները կորցնում են իրենց նշանակությունը սոցիալիզմի պայմաններում։

Վերոհիշյալով, իհարկե, մեր պայմաններում սուբյեկտիվիզմի դրսևորման փաստերը չեն սպառվում, սակայն բերածն էլ բավական է ցույց տալու, թե որքան հակագիտական և քաղաքականապես վնասակար է սուբյեկտիվիզմը։

***

Օրինական հարց կարող է ծագել, թե սուբյեկտիվիզմն իմացաբանական և սոցիալական ինչ արմատներ ունի սոցիալիստական հասարակության պայմաններում։ Ինչպե՞ս կարող է պատահել, որ սուբյեկտիվիզմ լինի սոցիալիզմի ժամանակ, որը կառուցվում է խիստ գիտական հիմունքներով և որն իր բնույթով չի կարող հանդուրժել սուբյեկտիվիզմը։

Այդ հարցերը դեռևս պատշաճ լուծում չեն ստացել մեր սոցիոլոգիական գրականության մեջ, դեռևս բացահայտված չեն սուբյեկտիվիզմ, վոլյունտարիզմ ծնող արմատները։ Մենք առանձնապես կարևոր ենք համարում սուբյեկտիվիզմի սոցիալական արմատների բացահայտումը։ Սակայն այդ հարցը մեզանում անգամ չի էլ դրվել։ Ըստ երևույթին, մեր որոշ փիլիսոփաներ կարծում են, թե այդպիսի արմատներ չեն կարող լինել սոցիալիզմի ժամանակ, քանի որ մեզ մոտ չկան հակամարտ դասակարգեր ու դրանից բխող սոցիալական համապատասխան հետևանքներ։ Սակայն մենք գտնում ենք, որ մեր հասարակության մեջ հակամարտ դասակարգերի բացակայությունը դեռևս չի բացառում այդպիսի արմատների առկայությունը, որոնք կարող են սովետական հասարակարգի այս կամ այն կողմի, սոցիալիստական դեմոկրատիայի պահանջների խախտման արդյունք լինել։ Դեռ ավելին, այդպիսի սոցիալական արմատներ ո՛չ միայն գոյություն ունեն, այլև վճռական դեր են խաղում սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի առաջացման գործում։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսն իրենց «Սուրբ ընտանիք» աշխատության մեջ ընդգծել են, որ կապիտալիզմի ժամանակ սուբյեկտիվիզմի իմացաբանական արմատներն օրգանապես առնչված են իդեալիստական փիլիսոփայության հետ։ Վերջինիս կողմնակիցները այս կամ այն ձևով հանգում են հակագիտական ու սուբյեկտիվիստական այն հետևության, թե պատմության ընթացքը որոշում են ոչ թե ժողովրդական մասսաները, նրանց պատմական գործունեությունը, այլ, այսպես ասած՝ մեծ ձիրքով օժտված անհատները, որպես թե նրանք են միայն պատմական պրոցեսի միակ ակտիվ տարրերը։ Մարքսը և Էնգելսը սպառիչ կերպով ցույց տվեցին, որ դա տանում է դեպի պատմության մեջ անհատների դերի լիակատար իդեալականացում, ինչը որ բնորոշ էր Բրունո Բաուերի և յուրայինների համար։ Բ. Բաուերի կարծիքով՝ մի կողմում կանգնած է մասսան՝ որպես պատմության պասսիվ, հոգեզուրկ, այսպես ասած՝ նյութական տարր, իսկ մյուս կողմում՝ ոգին, քննադատական անհատը որպես, այսպես ասած, ակտիվ տարր, որը և ամեն մի պատմական գործողության հեղինակն է։

Իսկ երբ խոսքը սոցիալիզմի պայմաններում սուբյեկտիվիզմի իմացաբանական արմատների մասին է, ապա պետք է նկատի ունենալ, որ դրանք այստեղ ոչ անմիջականորեն, անուղղակի են կապված իդեալիզմի հետ, քանի որ վերջինս սոցիալ-դասակարգային հող չունի մեր հասարակության մեջ։ Այսպես թե այնպես այդ արմատներն ամենից առաջ արտահայտվում են, երբ գի-





տակից տարրի դերն ըստ էության իդեալիստական, միակողմանի կերպով չափից շատ են ուռցնում (կարևոր չէ՝ գիտակցաբար, թե անգիտակցաբար) մեր սոցիալիստական հասարակության կյանքում։ Խոսքը վերաբերում է օբյեկտիվ պայմանների ու սուբյեկտիվ գործոնի հարաբերակցության խեղաթյուրմանը սոցիալիզմի պայմաններում։ Օբյեկտիվի ու սուբյեկտիվի դիալեկտիկայի այդպիսի խեղաթյուրումը, որի նպատակն է բացարձակ դարձնել սուբյեկտիվ գործոնի հարաճուն դերը և նսեմացնել օբյեկտիվ հանգամանքների դերը, մեր իրականության մեջ սուբյեկտիվիզմի իմացաբանական արմատներից մեկն է։

Այն ճիշտ պատմական իրողությունից, որ սոցիալիզմը ծագում է ոչ թե տարերայնորեն, այլ աշխատավորների նպատակասլաց գործունեության շնորհիվ (այդ իրողությունն արտացոլում է էկոնոմիկայի նկատմամբ քաղաքականության առաջնության լենինյան հայտնի միտքը), որոշ ղեկավար աշխատողներ ոչ ճիշտ հետևություններ են անում իրենց գործունեության մեջ, թույլ են տալիս սխալներ։ Նրանք, մասնավորապես, սխալվում են այն ժամանակ, երբ կարծում են, թե քանի որ քաղաքականությունն առաջնություն ունի էկոնոմիկայի նկատմամբ, ապա, ուրեմն, դա վկայում է քաղաքականության ամենազորությունը, որ հնարավոր է գործել սուբյեկտիվ կամքի թելադրանքով, հակառակ տնտեսական զարգացման պահանջների, ի վնաս նյութական ու հոգևոր բարիքներ ստեղծողների շահերի։ Նրանք մոռանում են, որ քաղաքականության պրակտիկ կիրառումը միայն այն ժամանակ կարող է ցանկալի արդյունք տալ, երբ դրա կենսագործման համար ստեղծված են համապատասխան օբյեկտիվ պայմաններ կամ նախադրյալներ։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ մարդկանց սուբյեկտիվ ձգտումները, որոշումները կամ գործունեության դրդապատճառները սերտորեն կապված են օբյեկտիվ պահանջմունքների հետ և որոշվում են դրանցով։

Մինչև վերջին ժամանակներս մեզանում միանգամայն անբավարար ուշադրություն էր նվիրվում սոցիալիստական հասարակության արտադրողական ուժերի զարգացման այնպիսի հզոր գործոնին, ինչպիսին է աշխատողների նյութական շահագրգռվածության (բարոյական ազդակների հետ միասին) ըստ ամենայնի բարձրացումը։ Այլ կերպ ասած, մենք հասարակության զարգացման մեջ, ամբողջությամբ վերցրած, փաստորեն բացարձակ էինք դարձրել գաղափարական մղումները, մարդկանց վարքագծի գաղափարական դրդապատճառները, լուրջ ուշադրություն չդարձնելով այն բանը պարզելու վրա, թե հատկապես ինչ պահանջմունքներով են հարուցվել գաղափարական դրդապատճառները։

Նյութական արտադրությունն է կազմում վերջին հաշվով մարդկանց վարքագծի հիմքը և հենց նա էլ որոշում է նրանց բոլոր պահանջմունքների բովանդակությունը։ Նյութական և այլ պահանջմունքների բավարարումը արտադրության զարգացման կարևոր խթանիչ ուժն է։

Հասարակության կյանքում գիտական տարրի դերն ու նշանակությունը բացարձակ դարձնելու ձևերից մեկն արտահայտվում է այն պնդման մեջ, թե գիտակցությունը երբեք էլ ետ չի մնացել և ետ չի մնում հասարակական կեցությունից, թե այն միշտ էլ առաջ է անցնում այդ կեցությունից։ Այդպիսի տեսակետ է պաշտպանում, օրինակ, Ի. Ի. Մատվեենկովը. նա գրում է. «Եթե մեզ շրջապատող առարկայական աշխարհը և հասարակական ձևերը մարդկանց գործունեության արդյունքն են, իսկ մարդիկ միշտ էլ գործել են և գործում են՝ գիտակցական նպատակներ հետապնդելով, ապա բոլորովին տրամաբանական



չէ կեցությունից գիտակցության ետ մնալու հարցն անգամ դնելը և առավել ևս՝ դա անհիմն կերպով օրենքի աստիճան բարձրացնելը»։

Դժվար է համաձայնել Ի. Ի. Մատվեենկովի նաև այն կարծիքին, թե իբր ո՛չ միայն հասարակական, այլև անհատական գիտակցությունն անգամ ետ չի մնում հասարակական կեցությունից։ Եթե մարդկանց գիտակցությունը ո՛չ միայն ետ չի մնում, այլև առաջ է անցնում մեր սոցիալիստական հասարակական կեցությունից, ապա, ուրեմն, ավելորդ կարող է համարվել պարտիայի և սոցիալիստական պետության հսկայական դաստիարակչական աշխատանքը։

Գիտակցական տարրի դերի չափազանցումը, հասարակության զարգացման մեջ այդ տարրի ամենազորության վերաբերյալ պատրանքը որոշ մարդկանց, հատկապես որոշ ղեկավար կադրերի մոտ առաջ է բերում սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի այնպիսի դրսևորումներ, ինչպիսիք են, օրինակ, ինքնապարծությունն ու ինքնահավանությունը, մասսաների փորձն ու կոլեկտիվի կարծիքը անտեսելը, անհիմն կերպով երևակայությանը զոռ տալը, վարչարարությամբ տարվելը և հասարակության նյութական ու հոգևոր կյանքի տարբեր ոլորտները անձեռնհաս կերպով ու վատ ղեկավարելը։

Վերոհիշյալից պետք է հետևցնել, որ մեզանում դեռևս քիչ չէ այն մարդկանց թիվը, հատկապես զանազան ղեկավար աշխատողների շրջանում, որոնք իրար հետ շփոթում են երկու՝ միանգամայն անհամատեղելի հասկացություններ, այն է՝ սուբյեկտիվ գործոնի դերի աճը սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման պրոցեսում և հասարակական զարգացման խնդիրների, արտադրական և այլ հարցերի «կամային» լուծումը։

Խոսքը, իհարկե, այդ հասկացությունների տրամաբանական շփոթման կամ նույնացման մասին չէ, թեպետ այդ էլ է տեղի ունենում, այլ այն, որ այդպիսի նույնացում մենք տեսնում ենք իրականության մեջ, պրակտիկայում։ Դա արտահայտվում է նրանով, որ սուբյեկտիվ գործոնի դերի աճն ըմբռնվում է որպես հասարակական կյանքի հարցերի «կամային» լուծման ուժեղացում։ Այդ սխալը տանում է դեպի սուբյեկտիվիզմ ու վոլյունտարիզմ։

Սուբյեկտիվ գործոնի դերի, մասսաների գիտակցականության, կազմակերպվածության, կոմունիստական պարտիայի և սոցիալիստական պետության գործունեության դերի բարձրացման ճիշտ ըմբռնումը ոչ մի ընդհանուր բան չունի սուբյեկտիվիզմի հետ։

Սուբյեկտիվիզմի իմացաբանական արմատների մասին խոսելիս չի կարելի մոռանալ, որ դրանք կապված են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման դըժվարությունների հետ։ Այդ դժվարությունները, որոնք խորանում են միջազգային ասպարեզում մղվող դասակարգային սուր պայքարի պայմաններում, տարբեր կերպ են ազդում սովետական հասարակության առանձին խավերի կամ անհատների հոգեկան աշխարհի վրա։ Ոմանք դրանք ընկալում են որպես մեր աճման դժվարություններ, իսկ ոմանք էլ, հատկապես գաղափարական տեսակետից անկայուն մարդիկ, չկարողանալով պարզել այդ դժվարությունների էությունը, ընկնում են բուրժուական գաղափարախոսության ազդեցության տակ։ Բուրժուական աշխարհայացքի այդ ազդեցության տուրք տալը նույնպես սնուցում է սուբյեկտիվիզմի իմացաբանական արմատները։

Այժմ քննենք սուբյեկտիվիզմի սոցիալական արմատների հարցը։

Ամենից առաջ նշենք, որ սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի սոցիալ-դասակարգային արմատները բուրժուական կարգերում ամենևին դժվար չէ

հայտաբերելը։ Այդ արմատներից է նաև արտադրամիջոցների մասնավոր սեփականության առկայությունը, որն իր բնույթով իսկ հարուցում է անհատապաշտություն, եսասիրություն, կամայականություն՝ հանուն շահագործողների տիրապետության հավերժացման։ Երկրորդ, կապիտալիզմի ժամանակ, ինչպես և մյուս բոլոր անտագոնիստական ֆորմացիաներում, չկա իսկական դեմոկրատիա, դեմոկրատիա աշխատավորության համար։ Շահագործման իրավակարգն իր օբյեկտիվ էությամբ մարդկանց մեջ արհամարհական վերաբերմունք է դաստիարակում դեպի նյութական բարիքներն ստեղծողները, հիմք է ծառայում, որ սուբյեկտիվ, քմահաճ մոտեցում ցուցաբերվի հասարակական կյանքի երևույթների ու պրոցեսների, հենց պատմության կերտողների նկատմամբ։

Սուբյեկտիվիզմը և վոլյունտարիզմը չեն կարող նման սոցիալական արմատներ ունենալ սոցիալիստական հասարակության մեջ։ Այստեղ վերացված է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը, վերացված են դրանից բխող ամեն տեսակ արատները. «...Մասնավոր սեփականության վերացումը,— գրում է Մարքսը,— նշանակում է մարդկային բոլոր զգացմունքների ու ունակությունների լիակատար ազատագրություն» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, էջ 592)։

Այդ ազատագրությունն իրականացվել է միայն սոցիալիստական հասարակության մեջ։ Սոցիալիստական իրավակարգն իր էությամբ, պատմական դերով և կառուցման մեթոդներով ու եղանակներով իսկական դեմոկրատական իրավակարգ է։ Ուստի, սուբյեկտիվիզմը չի կարող ճակատագրական անխուսափելիություն լինել սոցիալիզմի պայմաններում։ Սակայն դա չի նշանակում, թե մեզ մոտ չկան սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի այնպիսի սոցիալական արմատներ, որոնց վերացմանը շատ ավելի մեծ ուշադրություն պետք է նվիրել, քան նվիրվել է մինչև այժմ։

Որո՞նք են այդ արմատները։

Խոսքն այն մասին է, որ մեր հասարակության տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքի այլևայլ ոլորտներում երբեմն սահմանափակվում է սոցիալիստական դեմոկրատիան. այս կամ այն պաշտոնատար անձը, ելնելով իր եսասիրական շահերից, խախտում է սահմանված դեմոկրատական նորմերը։

Բնորոշ է, որ այդ ամենը երբեմն արվում է դեմոկրատիա, մասնավորապես, անմիջական դեմոկրատիա ծավալելու անվան տակ։ Բայց իրականում անմիջական դեմոկրատիան զուտ ձևական բնույթ է կրում, քանի որ դա ենթարկված է առանձին անհատների եսասիրական շահերին։ Վերցնենք, օրինակ, աշխատավորների զանազան համագումարներն ու խորհրդակցությունները, որոնք անմիջական դեմոկրատիայի դրսևորման ձև են։ Ինչ խոսք, որ ճիշտ օգտագործման դեպքում անմիջական դեմոկրատիայի այդ ձևերը կարող են վիթխարի նշանակություն ունենալ երկրի արտադրողական ուժերի զարգացման համար։ Սակայն վերջինիս ձևական-բյուրոկրատական օգտագործումը կարող է դրանք դարձնել սուբյեկտիվիզմի տարածման օրգաններ։

Եթե 5 տարվա ընթացքում (1953—1957 թվականներին) կայացել էին 25 խորհրդակցություն՝ շուրջ 40 հազար մարդու մասնակցությամբ, ապա միայն 1963 թվականին կայացան 80 խորհրդակցություն՝ մոտ 100 հազար մարդու մասնակցությամբ (տե՛ս Վ. Ֆ. Կոտով «Աշխատավորների համագումարներն ու խորհրդակցությունները որպես անմիջական դեմոկրատիայի ձև», Իրավագիտ. գրականութ. հրատ., 1964, էջ 71, ռուս.)։



Աշխատավորների համագումարների ու խորհրդակցությունների թիվը շարունակ ավելացել է նաև միութենական ռեսպուբլիկաներում։ Ահա փաստերը։ Եթե 1956 թվականին դրանց թիվը եղել է 21, ապա 1963 թվականին այն կազմել է 181 (տե՛ս նույն տեղը)։

Բոլոր խորհրդակցությունների ավելի քան 67 տոկոսը նվիրված է եղել արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության և տրանսպորտի զարգացման հարցերին։ Առանձնապես շատ են գյուղատնտեսությանը նվիրված խորհրդակցությունները։ Սակայն դրանք, ըստ էության, բացասական դեր են խաղացել, քանի որ նպաստում էին էկոնոմիկայի առանձին հարցերի վերաբերյալ որոշ ղեկավար աշխատողների սուբյեկտիվիստական հայացքների տարածմանը։ Այդ հանգամանքը որոշ իմաստով կասեցնում էր երկրի արտադրողական ուժերի, հատկապես գյուղատնտեսության զարգացումը։

Այսպիսով, անմիջական դեմոկրատիան ի սպաս էր դրվել Տիտ Տիտիչի «կարող եմ հաստատել, կարող եմ չհաստատել» սկզբունքին։ Իսկ դա կատարյալ սուբյեկտիվիզմ, վոլյունտարիզմ էր։

**Երկրորդ.** դեմոկրատիզմի և ցենտրալիզմի սկզբունքների աղավաղումների առկայությունն անխուսափելիորեն տանում էր դեպի սուբյեկտիվիզմ ու վոլյունտարիզմ։ Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ խնդիրն առաջին հերթին դեռ արդյունաբերության էքստենսիվ զարգացումն էր, «...առաջացավ չափից ավելի կենտրոնացման ու վարչարարության պատմականորեն բացատրելի տենդենցը...

Հետագայում այդ տենդենցն սկսեց դիտվել որպես սոցիալիզմի բուն իսկ էության անհրաժեշտ ասպեկտ։ Տնտեսական կյանքի առանձին բջիջների ու օղակների մեջ սոսկ պլանային օրգանների գործիքներ էին տեսնում։ Առաջացավ այն վտանգավոր վստահությունը, թե հնարավոր է կառավարման բարձրագույն մակարդակում ճշգրիտ պլանավորել տնտեսական կառուցվածքի ամեն մի տարր» («Вопросы философии», 1965, № 11, էջ 4)։

Ժողտնտխորհների գոյության ժամանակաշրջանում վարչարարության ու վոլյունտարիզմի տենդենցները, տնտեսական ամբողջ կյանքը դիրեկտիվային ռեգլամենտացիաներով վարելու տենդենցն ավելի ազդու նկատվեց տնտեսական շրջանների սահմաններում, որը և սերտաճում էր տեղայնական տրամադրությունների հետ (տե՛ս նույն տեղը)։

**Երրորդ.** մեր պետական ապարատում բյուրոկրատիզմի առկայությունը նույնպես սուբյեկտիվիզմի, վոլյունտարիզմի, ամեն տեսակ քմահաճության սոցիալական լուրջ արմատներից մեկն է։ Բյուրոկրատիզմը տեղիք է տալիս հակասությունների և դժվարացնում մեր հասարակության առաջընթացը։ Ուստի, արժե մի փոքր ավելի մանրամասն խոսել բյուրոկրատիզմի մասին։

Բյուրոկրատիզմը, որպես սոցիալական երևույթ, ներհատուկ է բուրժուական պետական ապարատին, ինչպես նաև մյուս շահագործող դասակարգերի գերիշխանության ապարատին։ Դրա պատճառը պարզ է՝ բուրժուական պետությունն իր նպատակներով ու խնդիրներով, իր դասակարգային էությամբ ու կառուցվածքով ո՛չ միայն ընդհանուր բան չունի ժողովրդի շահերի հետ, այլև ուղղակի հակասում է այդ շահերին։ Նրա ողջ ջանքերի, ամբողջ քաղաքականության, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, նպատակն է ժողովրդական մասսաներին հեռու պահել պետության, հասարակական գործերի ղեկավարումից։

Հենց այդ էլ կազմում է բյուրոկրատիզմի գլխավոր աղբյուրը, որը և ուղղված է հինը, իր դարն ապրածը հավերժացնելուն։

Կ. Մարքսը գտնում էր, որ բյուրոկրատիզմը կվերանա այն ժամանակ, երբ մասսաների շահերը համընկնեն համապետական շահերին, իսկ դա կարող է լինել միայն սոցիալիզմի ժամանակ։ «Բյուրոկրատիայի վերացումը,— գրում էր Մարքսը,— հնարավոր է միայն այն պայմանով, որ համընդհանուր շահը հատուկ շահ դառնա իրականության մեջ, այլ ո՛չ միայն, ինչպես Հեգելի մոտ, մտքի մեջ, աբստրակցիայում. դա իր հերթին, հնարավոր է միայն այն պայմանով, որ ճատուկ շահը իրականության մեջ դառնում է համընդհանուր» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, հ. 1, էջ 273, ռուս.)։

Սոցիալիստական հասարակության մեջ, որտեղ ժողովուրդն ինքն է իր բախտի լիակատար տնօրենը, իսկապես ասած, սոցիալական հող չկա բյուրոկրատիզմի համար։ Եվ այդպիսի հող չի էլ կարող լինել, քանի որ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում ժողովուրդը պրակտիկայում սովորում էր և արդեն սովորել է կառավարել երկիրը, այսինքն՝ անել այն, ինչ առաջներում բուրժուազիայի մենաշնորհն էր։

Չնայած այդ ամենին, հակառակ մեր կարգերի սոցիալական բնույթին, սովետական պետական ապարատում հանդիպում ենք հնի վերապրուկներ՝ բյուրոկրատիզմի ու քաշքշուկի ձևով։ Դրանք, անշուշտ, մեծ վնաս են հասցընում նոր կյանքի կառուցմանը, հասարակական ինքնագործունեության զարգացմանը, սոցիալիստական դեմոկրատիայի, ամբողջ սոցիալիստական կարգի բոլոր հնարավորությունների բացահայտմանը։

Դա վկայում է, որ հնի վերապրուկները նույնիսկ այն ժամանակ, երբ վերացված է դրանց սնող նյութական հիմքը, այնուամենայնիվ, դեռ երկար ժամանակ պահպանվում են, բացասական ազդեցություն թողնելով պետական ապարատի կադրերի որոշ մասի վրա։ Դրանով էլ արտահայտվում է հնի մնացուկների հարաբերական կայունությունը։

Իսկ ի՞նչ ձևերով է արտահայտվում բյուրոկրատիզմը մեր պետական ապարատում։ Դրանց շարքին պետք է դասել.

— անտարբեր ու անհոգի, ոչ-գաղափարական վերաբերմունք ընդհանուր գործի, ինչպես նաև աշխատավոր մասսաների պահանջների ու կարիքների նկատմամբ, այդ մասսաներից կտրվելը.

— անպատասխանատու վերաբերմունք ընդունված որոշումների ու պարտավորությունների նկատմամբ, որի հետևանքով էլ ձախողվում են դրանք.

— ամբարտավանություն ու դատարկաբանություն.

— քննադատության, հատկապես ներքևից եկող քննադատության ճնշում, համոզման, դաստիարակման մեթոդի անտեսում.

— իշխանության չարաշահում.

— ուրիշների հաշվին բավականություններ ստանալու ձգտում։

Այդ ամենն էլ վկայում են, որ ինչպես Մարքսն էր ասում, «աշխարհը բյուրոկրատի համար իր գործունեության օբյեկտն է» (նույն տեղը)։

Բյուրոկրատը, երևան գալով որպես հասարակական գործիչ, անտարբեր է ընդհանուր գործի նկատմամբ և հասարակությանը նայում է բացառապես իր անձնական շահի տեսակետից։ Ներփակվելով անձնական շահերի ու հոգսերի շրջանակում, նա, հիրավի, ոչ թե գործիչ է, այլ գործամոլ ու կարիերիստ։

Բյուրոկրատիզմի վնասն արտահայտվում է այն բանում, որ այն կաշ-



կանդում է ժողովրդական մասսաների գիտակից ու կազմակերպված գործունեությունը, առաջացնում պասսիվություն, անբանություն, անհատապաշտություն։

Պարտիան իր կազմակերպական ու գաղափարական գործունեության մեջ զանազան ուղղություններով է պայքար մղում բյուրոկրատիզմի դեմ, ամեն կերպ բարձրացնելով նոր կյանքի կառուցման մեջ սուբյեկտիվ գործոնի դերը։

Դա, նախ արտահայտվում է զանազան թերությունների, բյուրոկրատիզմի բոլոր ու ամեն տեսակ դրսևորումների առավել ծավալուն քննադատությամբ։ Այնուհետև, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալմամբ, սովետական քաղաքացիների բոլոր իրավունքների զարգացմանը զարկ տալով Վ. Ի. Լենինը գրում էր. «Բյուրոկրատիզմի դեմ պայքարել մինչև վերջ, մինչև նրա դեմ լիակատար հաղթանակ տանելը, կարելի է միայն այն ժամանակ, երբ ամբողջ բնակչությունը մասնակցի կառավարմանը» (Երկեր, հ. 29, էջ 214)։

Բյուրոկրատիզմի դեմ պայքարի մյուս կարևոր միջոցը պարտիական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական ղեկավար օրգանների կազմի սիստեմատիկ նորոգումն է։ Այդ արվում է ղեկավար օրգանների մեջ նոր, թարմ և ընդունակ ուժեր ներգրավելու, ինչպես նաև իշխանությունը երկար ժամանակ միևնույն աշխատողների ձեռքում մնալու հնարավորությունը կանխելու համար։

Բյուրոկրատիզմի դեմ պայքարի գլխավոր միջոցներից մեկը մեր պետական ապարատի գործարարության բարձրացումն է, հաստիքների ուռճացման, հիմնարկների ապարատի ծանրաշարժության վերացումը։ Իսկ եթե այդ չարվի, ապա դժվար թե հնարավոր լինի ազատվել բյուրոկրատիզմից։

**Չորրորդ.** սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի սոցիալ-քաղաքական լուրջ պատճառներից են նաև ինչպես տնտեսական ու կուլտուրական շինարարության կազմակերպման, այնպես էլ կադրերի ընտրության ու տեղաբաշխման ասպարեզում եղած թերությունները։ Ինչպես այդ նշվել է մեր մամուլում, ոչ մի բնագավառում այնպես ուժեղ չի արտահայտվում սուբյեկտիվիզմը, որքան կադրերի ընտրության ու տեղադրման ասպարեզում։ Դժբախտությունն այն է, որ մենք հոգ չենք տանում այս կամ այն աշխատողի ընդունակությունները կամ գործունեությունը գնահատելու օբյեկտիվ չափանիշներ գտնելու մասին (տե՛ս «Коммунист» ամսագիր, 1965, № 17, էջ 29)։

Այս բնագավառում սուբյեկտիվիզմը գլխավորապես դրսևորվում է այն բանում, որ կադրերի ընտրության ելակետը դառնում են ծանոթությունը, բարեկամական հարաբերությունները, անձնական հավատարմությունը, ոչ թե մարդու օբյեկտիվ հատկանիշները։ Անձեռնհաս ու անորակ կադրերն էլ հենց սուբյեկտիվիզմի կրողներն են տնտեսական ու կուլտուրական բնագավառների ղեկավարման ասպարեզում։

Կյանքը հրամայաբար պահանջում է կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ խստորեն առաջնորդվել օբյեկտիվ մոտեցման սկզբունքով, հաշվի առնելով մարդկանց բարոյական-քաղաքական հատկանիշները, նրանց գիտական, հատկապես տնտեսագիտական պատրաստականությունը, քանի որ արտադրության գիտական ղեկավարումը ներկայումս չափազանց կարևոր է։ Դա վերաբերում է, հատկապես, տնտեսական ղեկավարներին, քանի որ գնալով աճելու է մեր ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունը։

**Հինգերորդ.** սուբյեկտիվիզմի սոցիալական արմատ է նաև առանձին պաշտոնակատար անձանց այնպիսի հանցագործությունը, ինչպիսին է կաշառակե-

*րությունը։ Հիրավի, ինչպե՞ս կարող են հարցերը օբյեկտիվ լուծվել այնտեղ, ուր պաշտոնակատար անձինք, վա՜յ-ղեկավարները վաճառում են իրենց խիղճը և այս կամ այն հարցը լուծում կաշառք ստանալուց հետո։ Իրենց անձնական բարեկեցությունը հոգալու ձգտումով թելադրված նրանց արարքները պարարտ հող են սուբյեկտիվիզմի համար։ Ղեկավարը միշտ, բոլոր հարցերում պետք է անվերապահորեն ազնիվ լինի։ Չէ՞ որ նրա վարքագծով են կարծիք կազմում մեր կարգերի մասին։*



*Մենք հավակնություն չենք ունեցել սպառելու պրոբլեմի քննությունը։ Միայն առաջ ենք քաշել ու լուսաբանել մի որոշակի տեսակետ, որի համաձայն սոցիալիստական հասարակության մեջ էս կան սուբյեկտիվիզմի ինչպես իմացաբանական, այնպես էլ սոցիալական արմատներ, որոնք այս կամ այն ձևով առաջացել են սոցիալիզմի պայմաններում։*

*Սուբյեկտիվիզմը, իհարկե, ճակատագրական անխուսափելիություն չէ սոցիալիզմի ժամանակ։ Մեր պայմաններում կան սուբյեկտիվիզմն ու վոլյունտարիզմը հաղթահարելու բոլոր հնարավորությունները։ Մենք նկատի ունենք, առաջին հերթին՝ դեմոկրատիայի ըստ ամենայնի ծավալումը մեր կյանքի բոլոր ոլորտներում և այն էլ ոչ թե խոսքով, այլ գործով։ Դա անհրաժեշտ է, որպեսզի նոր կյանքի կառուցման բոլոր բնագավառներում այս կամ այն սոցիալ-տնտեսական խնդիրն արծարծելիս ցուցաբերվի գիտականորեն հիմնավորված մոտեցում և այն էլ հետևողականորեն, դեմոկրատական մեթոդների ո՛չ ձևական, այլ փաստական կիրառման միջոցով։ Այդ մեթոդների կենսագործումը պահանջում է այս կամ այն որոշման կամ օրենքի, այս կամ այն խնդրի խոր, բազմակողմանի քննարկում, որի ժամանակ հաշվի պիտի առնվեն հակադիր կարծիքները, իսկ այդպիսի կարծիքներ հայտնելու համար պետք է դեմոկրատական պայմաններ ստեղծել։ Առանց դրա դժվար է խոսել պարտիայի ու ժողովրդական մասսաների կոլեկտիվ փորձի օգտագործման մասին։*

*Սոցիալիստական սիստեմի, մասնավորապես, սոցիալիստական արտադրության վիթխարի հնարավորությունները կարող ենք լրիվ օգտագործել ու անհամեմատ ավելի մեծ հաջողությունների հասնել միայն ոչ ձևական, այլ լայն, հիրավի դեմոկրատական մեթոդների կիրառման դեպքում։*

*Մի՞թե ձևական դեմոկրատիզմի մասին չի վկայում այն փաստը, որ պարտիական կազմակերպությունների հաշվետու ժողովներում ու կոնֆերանսներում, ինչպես նշում է «Կոմունիստ» ամսագիրը, ոչ բոլոր պարտիական կոմիտեներն են իրենց հաշվետվությունը համարում կոմունիստների հետ խորհուրդ անելու մի եղանակ, որպես իրենց գործունեության քննադատական վերլուծություն։ Պակաս տարօրինակ չէ նաև այն, որ երբեմն կոմունիստները, պարտիական կոնֆերանսների պատգամավորները կարծես քաշվում են և չեն ուզում հենց իրենց ընտրած պարտիական օրգանից կամ ղեկավարից լրիվ հաշվետվություն պահանջել (տե՛ս* «Коммунист», *1965, № 18, էջ 40—41)։*

*Ոչ մի տարակույս չի կարող լինել, որ սոցիալիզմի բոլոր առավելությունների օգտագործման հարցին խորապես գիտական մոտեցում ցուցաբերելու, սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքները կենսագործելու դեպքում ոչ մի սուբյեկտիվիզմ չի կարող դրսևորվել սոցիալիզմի պայմաններում։*

---

Բ. ՄԻՐԶՈՅԱՆ

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ[1]

*Ժողովրդական տնտեսության պլանավորումը գիտական կարող է լինել, եթե հենվում է ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական պրոցեսների բազմակողմանի ուսումնասիրության վրա։ «Պլանավորումը սոսկ տնտեսական գործունեություն չէ, ինչպես շատերն այն համարում են։ Դա սոցիալական պրոբլեմների մշակում է, պրոբլեմներ, որոնք կապված են ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հետ։ Պլանը մենք դիտում ենք որպես տնտեսական ու սոցիալական խնդիրների ամբողջություն, խնդիրներ, որոնք հարկ է լուծել պլանային կարգով, որպես մարդու կյանքի հետ կապված բոլոր հարցերի ամբողջություն»* (**А. Н. Косигин,** Повышение научной обоснованности планов — важнейшая задача плановых органов (выступление на заседании госплана СССР, 19 марта 1965 г.). «Плановое хозяйство» № 4, 1965, стр. 3).

*Ա. Ն. Կոսիգինի այս դիտողությունը ելնում է լենինյան այն ցուցումից, որ սոցիալիզմի երկրում ժողովրդական տնտեսության պլանավորման հիմնական նպատակը սոցիալական փոփոխությունների գիտական կանխատեսումն ու իրականացումն է։*

*Սոցիալական պրոբլեմները գիտականորեն մշակելու և լուծելու համար քանակական թվականներին առանձնահատուկ նշանակություն էր տրվում հասարակական կյանքի բազմակողմանի ուսումնասիրությանն ու վիճակագրական լայն ինֆորմացիային։ Սակայն, հետագայում, հատկապես անհատի պաշտամունքի տարիներին, սոցիոլոգիական բնույթի հետազոտությունները փաստորեն վերացան և, կյանքի պայմանների ու մարդկանց վարվելակերպի խոր ու դիֆերենցված ուսումնասիրության փոխարեն, հասարակական գիտությունների բնագավառում լայնորեն տարածվեցին վերացական, կյանքից կտրված դատողությունները, առանձին փաստերը, «միջին թվերը»։ Հետևանքը եղավ այն, որ սոցիալ-տնտեսական բազմաթիվ ռեալ երևույթներ ու հասկացություններ կամայականորեն ժխտվեցին։*

*Դատապարտելով կյանքի իրական պատկերը սքողելու կամ գունազարդելու*

---

[1] *Տպագրվում է առաջարկության կարգով։*

արատավոր պրակտիկան, հասարակական երևույթների մեկնաբանման մեջ վոլյունտարիստական, կամայական մոտեցումն ու «հեղինակավոր» կարծիքները, պարտիան ներկայումս պահանջում է գիտական, օբյեկտիվ մոտեցում ցուցաբերել սոցիալ-տնտեսական պրոցեսների ուսումնասիրմանը, «խորամուխ լինել,— ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ,— մեր հասարակության տնտեսական հարաբերությունների էության մեջ, որպեսզի նրա տնտեսական օրենքները և ստեղծագործական վիթխարի հնարավորությունները ճիշտ օգտագործվեն հօգուտ ժողովրդի»:

Այդ տեսակետից նոր, ավելի բարդ խնդիրներ են դրվում տնտեսագետների, սոցիոլոգների և հասարակական գիտությունների մյուս բնագավառների աշխատողների առջև: Ընդ որում, հասարակական գիտություններն ավելի ու ավելի ճշգրիտ են դառնում և պահանջում սոցիալ-տնտեսական բարդ պրոցեսների ուսումնասիրության ժամանակ դիմել մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնության: Սոցիալական պրոցեսների ճանաչման ու կառավարման համար գիտական աբստրակցիան արդեն բավական չէ, անհրաժեշտ է կոնկրետ հետազոտությունների միջոցով թափանցել կյանքի բազմաբովանդակ երևույթների մեջ, պարզել դրանց վրա ազդող գործոնները և մշակել այնպիսի օպտիմալ ուղիներ, որոնք արագացնում են կոմունիստական հասարակության սկզբունքների իրականացումը:

Ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման մեջ անհամամասնությունների առաջացումը արտադրության և բնակչության կենտրոնացումը խոշոր քաղաքներում, բնական հարստությունների, նյութական և աշխատանքային ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործումը, ջրի և օդի կեղտոտումը, արտադրական էսթետիկայի ու հիգիենայի հարցերը, տարբեր տնտեսական շրջանների, բնակավայրերի, հասարակական ու ընտանեկան խմբերի կենսապայմանների չարդարացված դիֆերենցիացիան և սոցիալ-տնտեսական այլ խոշոր պրոբլեմներ իրենց դրական լուծումը դեռևս չեն ստացել մեծ մասամբ այն պատճառով, որ սոցիոլոգիական հետազոտությունները և այդ հիման վրա սոցիալական պլանավորումը մինչև հիմա չեն դարձել ժողովրդական տնտեսության պլանավորման ելակետը:

Սոցիալական պլանավորման օբյեկտն արտադրական հարաբերություններն են, իսկ ավելի կոնկրետ՝ աշխատավոր մարդը, նրա կյանքի պայմանները, պահանջմունքներն ու հակումները: Սոցիալական պլանավորման հիմնական նպատակը կենսամակարդակի բարձրացման, հասարակության բոլոր անդամների ֆիզիկական ու մտավոր ընդունակությունների հարմոնիկ զարգացման միջոցով սոցիալական հավասարության ապահովումն է (տե՛ս В. Шубкин, О конкретных исследованиях социальных процессов, «Коммунист», № 3, 1965, էջ 53):

Հայտնի է, օրինակ, որ սոցիալիզմը դեռևս լիովին չի վերացնում հասարակական ու ընտանեկան տարբեր խմբերի կյանքի պայմանների տարբերությունները: Հետևապես, կոմունիստական հասարակության սկզբունքներն իրականացնելու տեսակետից չափազանց կարևոր է պարզել այդ տարբերությունների աստիճանն ու կանխանշել դրանց վերացման ուղիները: Այստեղ սեփականության ձևերի, ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև տարբերությունների վերաբերյալ ընդհանուր դատողությունները մեզ ոչինչ չեն տա: Անհրաժեշտ է կոնկրետ



հետազոտության միջոցով ցույց տալ, թե ինչպես են փոխվում մարդկանց կենսապայմանները՝ կախված բնակության վայրից, աշխատանքի բնույթից, ընտանիքի կազմից ու շնչերի թվից և այլն: Ընդ որում, մեթոդապես սխալ է բնակչությունը դիտել որպես առանձին անհատների միասնություն, նրա կենսամակարդակը որոշել աշխատավարձով կամ մեկ շնչին ընկնող եկամտով:

Ըստ էության հասարակությունը բաղկացած է ոչ թե առանձին անձերից, այլ ընտանիքներից: Ընտանիքն է հասարակության բջիջը և նյութական բարիքների սպառողը: Հետևապես բնակչության կենսապայմանների տարբերությունները բացահայտելու և նյութական բարիքների արտադրության ու սպառման հարցերը լուծելու համար որպես ուսումնասիրության օբյեկտ պետք է վերցնել հենց ընտանիքը: Նրա կազմավորման, աճի ու շարժման պրոցեսների, եկամուտների ու ծախսերի կառուցվածքի և, առհասարակ, նրա վարվելակերպի ուսումնասիրությունն ու որոշակի օրինաչափությունների հայտաբերումը, հիրավի, ավելի բարդ ու դժվարին են, քան, ասենք, բջջի կամ ատոմի գաղտնիքների բացահայտումը: Չնայած դրան, մեզ մոտ մինչև այժմ չեն կազմակերպված սոցիոլոգիական և դեմոգրաֆիական հետազոտությունների խոշոր կենտրոններ:

Ընտանիքի կենսամակարդակի վերաբերյալ վիճակագրական գրեթե միակ աղբյուրը, այսպես կոչված, բյուջետային հետազոտություններն են, որոնք ընդգրկում են շատ սահմանափակ թվով ընտանիքներ և այդ պատճառով լրիվ ներկայացուցչական չեն: Օրինակ, ՍՍՌՄ կենտրոնական վիճակագրական վարչության բյուջետային հետազոտությունների մեջ Հայկական ՍՍՌ-ից ընդգրկված են Երևանի երեք ձեռնարկությունում աշխատող բանվորների մոտ 100 ընտանիք: Բնական է, որ դրանց վերաբերյալ տվյալները չեն կարող արտացոլել ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության կենսամակարդակը: Էլ չենք ասում այն մասին, որ գյուղական բնակչության կենսապայմանների վերաբերյալ մինչև այժմ վիճակագրական գրեթե ոչ մի ինֆորմացիա չի տրվում:

Բնակչության կենսապայմանների բնույթը կարող է բացահայտվել մասսայական ուսումնասիրությունների, մասնավորապես, մարդահամարի տվյալներով: Օրինակ, քաղաքային բնակչության բնակարանային պայմանների վերաբերյալ բազմակողմանի տվյալներ են ստացվել 1926 թվականի մարդահամարի ժամանակ: Մինչդեռ 1939 և 1959 թվականների մարդահամարների ժամանակ, չնայած ավելի լայն հնարավորություններին, այդպիսի փորձ չարվեց:

Արժե հիշատակել Հայկական ՍՍՌ ԳԱ տնտեսագիտական ինստիտուտի տնտեսական-վիճակագրական հետազոտությունների լաբորատորիայի (որն այժմ գործում է գիտությունների ակադեմիայի և Երևանի պետական համալսարանի հաշվողական կենտրոնում) ծավալած դեմոգրաֆիական և սոցիալ-տնտեսական բազմակողմանի ուսումնասիրությունները: Հայկական ընտանիքների կազմությունն ու ձևավորումն ուսումնասիրելու համար (հիմք ընդունելով 1959 թվականի մարդահամարի սկզբնական նյութերը) հատուկ թերթիկների միջոցով տրվել է ավելի քան 14 հազար ընտանիքի սեռա-տարիքային կազմի, ազգակցական կապերի, ամուսնական զույգերի կազմավորման և այլ հարցերի պատասխանը:

Ուշագրավ են փաստական տվյալները ամուսնական զույգի կազմավոր-

ման վերաբերյալ։ Եթե վերցնենք բանվոր ամուսին ունեցող 100 ընտանիք, ապա դրանցից 14-ում կինը պատկանում է նույն հասարակական խմբին (բանվորուհի), 18-ում ծառայող է, իսկ մնացած ընտանիքներում կինը չի աշխատում։ Սակայն 100 ծառայողի ընտանիքից միայն 4-ում է կինը բանվորուհի, իսկ 35-ում՝ ծառայող։ Հետաքրքրական են նաև ըստ կրթական մակարդակի ամուսնական զույգերի կազմավորման վերաբերյալ տվյալները․ 100 ընտանիքից, որտեղ ամուսինը բարձրագույն կրթություն ունի, 59-ում կինը ևս նույն կրթությունն ունի, 36-ում՝ միջնակարգ և միայն 4-ում՝ տարրական։ Ամուսնու տարրական կրթություն ունենալու դեպքում, 100 ընտանիքից 4-ում կինն ունի բարձրագույն կրթություն, 27-ում՝ միջնակարգ, իսկ 69-ում՝ տարրական։

Բերված տվյալներն ամենից առաջ ցույց են տալիս, որ աստիճանաբար վերանում են միատարր, սոցիալական նույն խմբին պատկանող «զուտ» ընտանիքները։ Սակայն յուրաքանչյուր հասարակական խմբի ներսում կենսամակարդակը կարող է խիստ տատանվել՝ կախված վարձատրության չափից, ընտանիքի աշխատող ու չաշխատող անդամների հարաբերակցությունից։ Այստեղ ընտանիքի կազմավորման մեջ որոշակի դեր են խաղում հասարակական նույն խմբին պատկանելը և, հատկապես, կրթական մակարդակների համապատասխանությունը։ Ընդ որում, որքան ցածր է ամուսնական զույգերի կրթական մակարդակը, այնքան շատ է երեխաների թիվը և այնքան ցածր է կնոջ զբաղվածությունը հասարակական արտադրության մեջ։ Այսպես, մարդահամարի նույն թերթիկների տվյալներով, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ յուրաքանչյուր մայր միջին հաշվով ունի 1,9 երեխա, միջնակարգ և յոթնամյա կրթությամբ մայրերը՝ 2,3, իսկ տարրական կրթությամբ մայրերը՝ 2,5 երեխա։ Գրեթե նույն արդյունքն է ստացվել 1963 թվականին Երևան քաղաքի 3100 կանանց կենսամակարդակի և ծննդի կայուն ուսումնասիրելու ժամանակ։ Մյուս կողմից, ինչպես նշեցինք, ընտանիքում որքան մեծ է երեխաների թիվը, այնքան ցածր է կանանց զբաղվածության մակարդակը։ Այդ կապը պարզ երևում է, օրինակ, Հայկական և Էստոնական ռեսպուբլիկաների համապատասխան տվյալները համեմատելիս։ Եթե Էստոնիայում 100 ընտանիքից միայն 4-ը ունի 3 և ավելի երեխա, ապա Հայաստանում ընտանիքների մոտ $1/3$-ը այդպիսին է։ Էստոնիայի քաղաքներում բնակվող յուրաքանչյուր 100 աշխատունակ կանանցից զբաղված են 77, իսկ մեր քաղաքներում՝ միայն 47 կին։

Ռեսպուբլիկայի քաղաքներում բնակչության եկամուտների և սպառման կառուցվածքն ըստ հասարակական տարբեր խմբերի և ընտանիքների պարզելու նպատակով վերոհիշյալ լաբորատորիան հատուկ հետազոտություններ անցկացրեց Լենինական և Երևան քաղաքներում։ Լաբորատորիան մշակեց մի նոր, այսպես կոչված, մոմենտային ուսումնասիրության մեթոդ, որը հնարավորություն է տալիս ընտանիքների անընդմեջ դիտումները փոխարինել մեկօրյա հաճախումներով և դրա հաշվին մեծապես ընդարձակել ուսումնասիրության ենթակա ընտանիքների ցանցը։ Այսպես, երկու վիճակագրի օգնությամբ 4 ամսվա ընթացքում Լենինականում հետազոտվեց 1200 ընտանիք, իսկ Երևանում 5 վիճակագրի միջոցով 3 ամսում՝ 3600 ընտանիք։ Այդ հետազոտությունն իր բնույթով Միության մեջ կատարված այն եզակի ուսումնասիրություններից է, որով առաջին անգամ փորձ է արվում բացահայտելու բնակչության կեն-



սամինիմումը և ապրուստի պայմանների տարբերությունները։ Ի՞նչ աղբյուրներից են կազմավորվում ընտանիքի ռեալ եկամուտները, ինչպե՞ս է փոխվում նյութական ապահովվածության մակարդակը հասարակական և ընտանեկան տարբեր խմբերում, ինչպիսի՞ն են ընտանիքի բյուջեի կառուցվածքը, բնակարանային պայմանները․ այս կենսական հարցերի մասին որոշակի տեղեկություններ կարելի է քաղել վերոհիշյալ հետազոտության նյութերում[1]։

Ուսումնասիրության տվյալներն ամենից առաջ ցույց են տալիս, որ բանվորների ու ծառայողների եկամուտների մեծ մասը (համապատասխանաբար, 73 և 74 տոկոսը) գոյանում է ընտանիքի գլխավորի և աշխատող մյուս անդամների աշխատավարձից, իսկ 25 տոկոսը կազմում են տարբեր տեսակի արտոնությունները ու անվճար ծառայությունները (երեխաների խնամքը մանկապարտեզներում, ուսուցումը դպրոցներում, տեխնիկումներում, ԲՈՒՀ-երում, բժշկական ծառայությունները և այլն)։ Ընդ որում, որքան աճում է ընտանիքի անդամների թիվը, այնքան մեծանում է հասարակական սպառման ֆոնդերից ստացվող եկամուտների բաժինը (օրինակ, 4 շնչից բաղկացած ընտանիքի բյուջեում արտոնություններն ու անվճար ծառայությունների բաժինը կազմում են 22,9, իսկ 7 մարդուց բաղկացած ընտանիքում՝ 32,3 տոկոս)։

Հասարակական ու ընտանեկան բոլոր խմբերում, աշխատավարձի մեծության, աշխատողների ու ընտանիքի մնացած անդամների թվի ու կազմի փոփոխության զուգընթաց փոխվում է նաև մեկ շնչին ընկնող եկամուտը։ Այսպես, մինչև 25 ռուբլի միջին շնչային համախառն եկամուտ (աշխատավարձ, հասարակական սպառման ֆոնդ, այլ եկամուտներ) է ստանում հետազոտված ընտանիքների 10 տոկոսը, 25—34 ռուբլի՝ 19, 35—49 ռուբլի՝ 30, 50—74 ռուբլի՝ 28, 75 ռուբլի և ավելի՝ 13 տոկոսը։ Ընդ որում, ծառայողների ընտանիքներում մեկ շնչին ընկնող եկամուտը զգալիորեն բարձր է, քան բանվորական ընտանիքներում։ Եթե բանվորական ընտանիքների միայն 3 տոկոսն ունի 75 ռուբլուց ավելի շնչային եկամուտ, ապա ծառայողների մեջ այդպիսի ընտանիքների տեսակարար կշիռը հասնում է 21 տոկոսի։

Ընտանիքների ռեալ եկամուտների համեմատ և դրանից անկախ առաջացել են բնակարանային և գույքային խիստ տարբերություններ։ Քաղաքային բնակչության բնակարանային պայմանները լրիվ չեն պայմանավորված ընտանիքի ստացած եկամուտների մեծությամբ, քանի որ բնակարանների բաշխման ժամանակ հաշվի են առնվում ո՛չ միայն մարդկանց աշխատանքի բնույթը և հասարակությանը մատուցած ծառայությունները, այլև բնակարաններով տարբեր ընտանիքների ապահովվածության աստիճանը և շնչերի թիվը։ Բնակարանային ու գույքային ապահովվածության մեջ որոշակի դեր են խաղում նաև տվյալ քաղաքում բնակվելու տևողությունը, ընտանիքի կազմի ու շնչերի թվի փոփոխությունը, ժառանգությունը և բազմաթիվ այլ գործոններ։ Նույնիսկ միևնույն հասարակական խմբում կարելի է հանդիպել ընտանիքների, որոնք հանդես են գալիս, մի դեպքում՝ որպես վարձակալ, իսկ մի այլ դեպքում՝ տնատեր։ Որոշակի օրինաչափություն չկա նաև պետական բնակարաններում ապրող ընտանիքների բնակարանային ապահովվածության մեջ։

Այնուամենայնիվ, հետազոտության տվյալները ցույց են տալիս, որ ծա-

[1] Հետազոտության հիմնական արդյունքները լուսաբանվել են «Հայաստանի ժողովրդական տնտեսություն» ամսագրում (տե՛ս № 4, էջ 30—75, № 6, էջ 55—66, 1965 թ.)։

ռայողների, մասնավորապես, ինտելիգենցիայի բնակարանային պայմաններն, ընդհանուր առմամբ, գերադասելի են։ Այսպես, Երևանի պետական շենքերում բնակվող 3600 ուսումնասիրված ընտանիքների 58 տոկոսը ծառայող է, 35-ը՝ բանվոր և 7-ը՝ թոշակառու։ Ընդ որում, մեկ շնչի հաշվով 5 մ$^2$ պակաս բնակելի տարածություն է զբաղեցնում ընտանիքների 26 տոկոսը, այդ թվում բանվորական ընտանիքների 40 և ծառայողների 18 տոկոսը։ Լենինականում ուսումնասիրված 1200 ընտանիքների թվում նվազագույն բնակելի տարածությամբ ապահովված կատեգորիայի մեջ մտնում են որակավորում չունեցող բանվորների ընտանիքները (մեկ շնչի հաշվով՝ 4,6 մ$^2$), իսկ առավել լավ պայմաններում՝ ձեռնարկությունների, հիմնարկությունների և դրանց ստորաբաժանումների ղեկավարների ընտանիքները (8,8 մ$^2$)։

Գոյություն ունի որոշակի կապ ընտանիքի մեծության, շնչային եկամտի և բնակարանային ապահովվածության միջև։ Պարզ է, բոլոր այլ հավասար պայմաններում, որքան ընտանիքում ավելանում է երեխաների թիվը, այնքան պակասում է մեկ շնչին ընկնող եկամուտը և բնակելի տարածությունը։ Այնուհետև, քանի որ ընտանիքի անդամների թիվը փոխվում է ավելի արագ, քան նրա բնակարանային դրությունը, ապա բնակարանային պայմանների վատացման և ծննդի միջև ստեղծվում է ուղիղ համեմատական կապ։ Դրան նպաստում է նաև այն հանգամանքը, որ առավել վատ բնակարանային պայմաններում են գտնվում ծննդի ավելի բարձր գործակից ունեցող ընտանիքները (երիտասարդ ամուսնական զույգեր, քաղաք տեղափոխված գյուղական ընտանիքներ և այլն)։

Կարելի է բերել հետաքրքրական տվյալներ նաև քաղաքային ընտանիքների տնային գույքի վերաբերյալ։ Երկարատև գործածության խիստ անհրաժեշտ իրերով (չնայած տարբեր որակի ու արժեքի) ապահովված են քաղաքում բնակվող գրեթե բոլոր ընտանիքները։ Սակայն կենցաղային ու կուլտուրական մի շարք իրեր դեռևս մասսայական չեն դարձել։ Օրինակ, հետազոտված երկու քաղաքներում 100 ընտանիքից միայն 40-ն ունեն սառնարան, 20-ը՝ փոշեծծիչ, 49-ը՝ լվացքի մեքենա, 21-ը՝ հատակմաքրիչ, 56-ը՝ հեռուստացույց, 81-ը՝ ռադիոընդունիչ, 14-ը՝ դաշնամուր, 30-ը՝ գրքի պահարան։ Ընդ որում, Լենինականում հիշատակված իրերով ընտանիքների ապահովվածության մակարդակը որոշ դեպքերում 2—3 անգամ ցածր է, քան Երևանում։

Հասարակական այս կամ այն խմբին պատկանելը, ընտանիքի եկամուտների չափը նույնպես որոշակիորեն անդրադառնում են առանձին, հատկապես, թանկարժեք տնային իրերով ապահովվածության վրա։ Այսպես, ծառայողների ընտանիքների ապահովվածությունը սառնարանով Երևանում 2, իսկ Լենինականում 4 անգամ բարձր է, քան բանվորներինը, գրապահարանով, համապատասխանաբար՝ 5 և 2, դաշնամուրով՝ ավելի քան 8 և մոտ 6 անգամ և այլն։ Տարբերությունն աննշան է զգեստապահարաններով, բազմոցներով, մահճակալներով, ռադիոընդունիչներով, կարի մեքենաներով և մի շարք այլ առաջին անհրաժեշտության իրերով ապահովվածության տեսակետից։

Այսպիսով, ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության կյանքի պայմանների ուսումնասիրության արդյունքները հիմք են տալիս եզրակացնելու, որ ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման պրակտիկան դեռևս բավարար չափով չի նպաստում մի շարք սոցիալ-տնտեսական լուրջ պրոբլեմների լուծմանը։ Ռեսպուբլիկայի բազմանդամ և ցածր եկամուտ



ունեցող ընտանիքների կենսամակարդակը բարձրացնելու համար, հատկապես կարևոր նշանակություն ունեն արտադրության աշխատատար ճյուղերի արագ զարգացման միջոցով զբաղվածության ապահովումը, նոր, ավելի բարձր որակավորում պահանջող մասնագիտությունների ձեռքբերումը, նախադպրոցական հիմնարկների ու գիշերօթիկ դպրոցների ցանցի ընդլայնումը, ԲՈՒՀ-երում և տեխնիկումներում ընդունելության հավասար պայմանների ստեղծումը, պետական բնակարանների ճիշտ բաշխումը և այլն։

Ռեսպուբլիկայի քաղաքներում, հատկապես փոքր բնակավայրերում շատ թույլ է զարգանում սպասարկման ոլորտը, որի դերը գնալով ավելի է մեծանում ինչպես բնակչության զբաղվածության, այնպես էլ նրա կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու և ազատ ժամանակն ավելի կազմակերպված ու արդյունավետ անցկացնելու տեսակետից։

Այստեղ մենք չենք քննարկում խոշոր քաղաքների աճի պրոբլեմը։ Անհրաժեշտ ենք համարում միայն նշել, որ առանց բնակչության շարժման տենդենցների խոր ուսումնասիրության և գիտական պլանավորման, հաճախ արդարացնում կամ անխուսափելի ենք համարում բնակչության հոսքը դեպի խոշոր քաղաքները, բավարարվելով այն ընդհանուր ու ոչինչ չասող ֆրազով, որ սոցիալիզմի պայմաններում միգրացիան տեղի է ունենում «կազմակերպված, պլանային կարգով»։ Իրականում բնակչության շարժումը մի վայրից մի այլ վայր, գյուղից դեպի քաղաք, պայմանավորված է տնտեսական, կուլտուրական, էթնոգրաֆիական, դեմոգրաֆիկական, կլիմայական բազմաթիվ գործոններով։ Այդ գործոնների անտեսումը հանգեցնում է նրան, որ առաջանում է աշխատուժի հոսունություն, նրա ավելցուկ մեկ վայրում և պակաս՝ մի այլ վայրում։ Ավելին, պլանավորման պրակտիկան հաճախ չի հակազդում բնակչության չափից դուրս կենտրոնացմանը, քանի որ արտադրողական ուժերի տեղաբաշխման ժամանակ գերապատվությունը փաստորեն տրվում է աշխատուժի ավելցուկ և պատրաստի կոմունիկացիաներ ունեցող խոշոր քաղաքներին։

Սակայն այդ բոլորը տալիս է միայն ժամանակավոր արդյունք, քանի որ հետագայում հսկայական անարտադրողական ծախսեր են կատարվում գործող կոմունիկացիաները վերակառուցելու և ընդլայնելու, հեռավոր վայրերից ջուր, վառելիք, էլեկտրաէներգիա, սննդամթերք տեղափոխելու համար։ Մեկ շնչի հաշվով խոշոր քաղաքներում կատարվում է մի քանի անգամ ավելի ծախս, քան փոքր քաղաքներում։ Բացի այդ, քաղաքի տերիտորիայի ընդլայնման համեմատ աշխատավորն ավելի շատ ժամանակ ու էներգիա է ծախսում աշխատանքի վայրը հասնելու և տուն վերադառնալու համար, ապրում է աղմկոտ միջավայրում, շնչում թունավորված օդ, կտրվում բնությունից, նյարդայնանում և անտարբեր դառնում շրջապատի նկատմամբ։ Այս ամենը, անկասկած, բացասաբար են անդրադառնում աշխատանքի արտադրողականության, մարդկանց առողջության ու բարոյական նորմերի վրա։

Ցավոք, կապիտալ ներդրումների արդյունավետ ուղղությունները որոշելիս, արտադրական ու ոչ արտադրական օբյեկտները տեղաբաշխելիս հաճախ հաշվի չեն առնվում սոցիալական բնույթի հարցերը։ Ավելին, ներկայումս էլ նյութական բարիքների ու հասարակական ֆոնդերի բաշխման ժամանակ խոշոր քաղաքները, մասնավորապես մայրաքաղաքները, դրվում են արտոնյալ վիճակում, որի հետևանքով տարբեր մեծության ու տիպի բնակավայրերի

բնակչության կյանքի պայմանների տարբերությունները ոչ թե մեղմանում, այլ խորանում են։

Վերցնենք, օրինակ, բնակչության բնակարանային պայմանների համահարթման պրոբլեմը։ Մեր ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տարբեր տնտեսական շրջանների ու քաղաքների պետական բնակարանային շինարարությանը հատկացվող միջոցների բաշխումը դեռևս գիտական հիմքերի վրա չի դրված։ Սովորաբար այդ միջոցները բաշխելիս հաշվի են առնվում ոչ այնքան տվյալ շրջանի կամ բնակավայրի բնակարանային ֆոնդի վիճակը, բնակարանային ապահովվածության մակարդակը և բնակչության աճի տենդենցը, որքան նախորդ տարվա ընթացքում կատարված ծախսումները։ Դրանով է հիմնականում բացատրվում, որ անցած 5 տարիների ընթացքում (1960—1964 թթ.), միութենական միջին մակարդակի համեմատությամբ, Հայաստանի քաղաքներում բնակարանային ապահովվածության տարբերությունը 7 տոկոսից հասել է 17—18 տոկոսի։

Մի շարք խոշոր քաղաքներում բնակարանային ֆոնդը՝ կոմունալ բոլոր հարմարություններով, ստեղծվել և ստեղծվում է հասարակության հաշվին, իսկ փոքր քաղաքներում և, առանձնապես, գյուղական վայրերում բնակչության բնակարանային պահանջմունքները գերազանցապես բավարարվում են ընտանիքի «խնայած» միջոցների և անձնական աշխատանքային ծախսումների հաշվին։ Մինչդեռ խոշոր քաղաքներում, որպես կանոն, մեծ եկամուտ ունեցող ընտանիքների տեսակարար կշիռն ավելի բարձր է, քան փոքր քաղաքներում ու գյուղական վայրերում։

Բնակչության բնակարանային պայմանների բարելավման ու համահարթման պրոբլեմը կարող է ճիշտ լուծվել, եթե հաշվի առնվեն երկրի տարբեր շրջանների ու բնակավայրերի առանձնահատկությունները, բնակչության կենսապայմանները, դեմոգրաֆիական կազմը, աճը և տրադիցիաները, ընտանիքների կառուցվածքի ու պահանջմունքների փոփոխության տենդենցները։ Ընդ որում, այդ հարցերի վերջնական լուծումը կախված է ո՛չ միայն հասարակական ֆոնդերի ճիշտ բաշխումից և ներքին հնարավորությունների օգտագործումից, այլև կառուցվող բնակարանների տիպից, սենյակների թվի հաբերությունից, ներքին հարմարություններից ու բաշխումից։ Չնայած կլիմայական ու դեմոգրաֆիական խիստ տարբերություններին, բոլոր վայրերում կենտրոնացված միջոցների հաշվին կառուցվում են գրեթե միևնույն տիպի բնակարաններ, որոնց բարձրությունն ընդունված է 2,5 մետր, իսկ բնակելի տարածությունը՝ մոտ 30 մ². Դա այն դեպքում, երբ Միության քաղաքներում 1959 թվականի մարդահամարի տվյալներով ընտանիքի միջին կազմը եղել է 3,5, իսկ մեր ռեսպուբլիկայի քաղաքներում, այդ թվում նաև Երևանում՝ 4,5 մարդ։ Դրա հետ ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության գերակշռող մասը բնակվում է խիստ կոնտինենտալ գոտում, որտեղ օդի ջերմաստիճանն ամառվա ամիսներին հասնում է 30—35, իսկ ձմեռվա ամիսներին —10-ից —20 աստիճանի։ Այս առանձնահատկություններն անտեսելու հետևանքով վերջին տարիներին կառուցված փոքրածավալ տիպային բնակարաններում խիստ պակասել է մեկ շնչին ընկնող օդի ծավալը, ավելացել է արտաշնչած ածխածնի կուտակվածությունը սենյակներում և բարձրացել օդի ջերմաստիճանը։

Բնակարանային շինարարության կառուցվածքի և ընտանիքների կազմի անհամապատասխանությունը պարզելու նպատակով 1964 թվականին մենք



ուսումնասիրեցինք Երևանի Աջափնյակում և Ծերեթելու փողոցում գտնվող 790 տիպային բնակարանների բնակեցման բնույթը։ Պարզվեց, որ մեկ շնչին ընկնող օդի ծավալը մեկ սենյականոց բնակարանում տատանվում է 6,2—43,2 խմ, երկու սենյականոցում՝ 7,4—40, իսկ երեք սենյականոց բնակարաններում՝ 12—41 խմ սահմաններում։ Ընդ որում, սանիտարական նորմայով (մեկ շնչի հաշվով 25 խմ և ավելի) ապահովված է բնակիչների միայն 8—10 տոկոսը։ Բավական է նշել, որ մեկ սենյականոց բնակարաններում ապրողների 30 տոկոսը կազմում են 4 և ավելի շնչից բաղկացած ընտանիքները, իսկ երեք սենյականոց բնակարանների 40,5 տոկոսը զբաղեցված է 7 և ավելի մարդկանցով, որոնց մի մասը բաղկացած է երկու ընտանիքից, այն դեպքում, երբ Միության քաղաքներում այդպիսի խտությամբ բնակեցված երեք սենյականոց բնակարանների տեսակարար կշիռը միջին հաշվով կազմում է 10,8 տոկոս։

Մենք փորձել ենք նաև հաշվել, թե Երևանում որքան և ինչ տիպի բնակարաններ պետք է կառուցել և ինչպես դրանք բաշխել, որպեսզի մոտակա 15 տարվա ընթացքում քաղաքի բոլոր ընտանիքների բնակարանային պահանջմունքներն առավել լրիվ բավարարվեն։ Դրա համար պետք է իմանալ, թե պլանային ժամանակամիջոցում որքանով կավելանա բնակչության թիվը, ինչպես կփոխվի ընտանիքների սեռա-տարիքային և թվական կազմը, որքան բնակարաններ պետք է քանդվեն և այլն։ Խնդրի լուծումը հատկապես դժվարանում է անհրաժեշտ ինֆորմացիայի բացակայության պատճառով։ Ուստի, մեր հաշվարկները խիստ մոտավոր են։ Սակայն դրանք ցույց են տալիս, որ քաղաքի բոլոր ընտանիքների բնակարանային պրոբլեմը քիչ թե շատ հիմնովին լուծելու համար անհրաժեշտ է հենց առաջիկա հնգամյակում (1966—1970 թթ.) փոխել տիպային նախագծերը և վերանայել բնակարանային շինարարության կառուցվածքն ու բաշխման նորմաներն այն հաշվով, որպեսզի նոր բնակարանները բնակեցնելիս մեկ շնչին ընկնի 9 քմ բնակելի տարածություն, իսկ մեկ սենյակին՝ ոչ ավելի, քան 2 մարդ։ Հակառակ դեպքում մենք կունենանք փոքրածավալ, հատկապես մեկ սենյականոց բնակարանների «գերարտադրություն», բնակարաններ, որոնք լիարժեք չեն կարող լինել նույնիսկ ամուսնական զույգերի բնակեցման համար։

Ինչպես տեսնում ենք, սոցիոլոգիական ու դեմոգրաֆիական կոնկրետ հետազոտությունները հերքում են այն տարածված տեսակետը, որ քանի դեռ գոյություն ունի բնակարանային սուր կարիք և իրացման պրոբլեմը մեզ չի անհանգստացնում, ապա որքան շատ ու էժան բնակարան կառուցենք, այնքան արագ կլուծենք բնակարանային պրոբլեմը։ Այնինչ նյութական բարիքների արտադրության ոչ մի ճյուղում մարդկանց պահանջմունքների փոփոխության ուսումնասիրությունն այնքան խոշոր դեր չի խաղում, որքան բնակարանային շինարարության մեջ։ Եվ դա հասկանալի է. բնակարանը ծառայում է մարդուն ոչ թե մեկ կամ տասը տարի, այլ մի ամբողջ հարյուրամյակ։ Այստեղ մեկ կոպեկի խնայողությունը, խիստ բացասաբար անդրադառնալով բնակարանի սպառողական արժեքի վրա, վաղը կստիպի մեզ տասնյակ անգամ ավելի ծախս կատարել բնակարանը վերանորոգելու, քանդելու և նորը կառուցելու համար։

Նույնը վերաբերում է նաև նյութական մյուս բարիքների արտադրությանը։ Ներկայումս լայն սպառման շատ ապրանքներ պարզապես չեն իրացվում։ Որպեսզի ձեռնարկությունները շահագրգռված լինեն ժողովրդական տնտեսության և բնակչության համար անհրաժեշտ ու բարձրորակ ապրանքներ տալու, ՍՄԿՊ

կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշմամբ հիմնովին փոխվում են ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը գնահատելու ցուցանիշները։ Սակայն տնտեսական ցուցանիշների փոփոխությունն իրացման պրոբլեմը լրիվ չի կարող լուծել, եթե մենք սիստեմատիկորեն չուսումնասիրենք բնակչության դնողունակ պահանջարկը և դրա հավանական փոփոխությունները։ Եթե Ամերիկայի Միացյալ Նահանգների կապիտալիստները, ունենալով պահանջարկի և առաջարկի հարաբերակցության այնպիսի «զգայուն» ցուցանիշ, ինչպիսին գինն է, այնուամենայնիվ, շուկան ուսումնասիրելու համար պահում են 3600 ֆիրմաներ ու գործակալություններ, ապա պլանային սոցիալիստական տնտեսությունում, որտեղ գինը չի սահմանվում առաջարկի ու պահանջարկի հիման վրա, անհրաժեշտ է ունենալ գնորդի պահանջմունքը և վարվելակերպը ուսումնասիրող հիմնարկների լայն ցանց (տե՛ս «Коммунист», № 3, 1965, էջ 50—51)։

Իրացման պրոբլեմի լուծումը սերտորեն կապված է բնակչության կենսամակարդակի բարձրացման հետ։ Ընդ որում, հետզհետե դրա գլխավոր պայմանը դառնում է ոչ թե սպառման ապրանքների քանակական աճը, այլ դրանց որակն ու օպտիմալ կառուցվածքը։ Հետևապես սոցիոլոգիական հետազոտության նպատակը միայն իրական դրության բացահայտումը չէ, այն պետք է ակտիվ ներգործի բնակչության պահանջմունքների ձևավորման վրա և մշակի սպառման այնպիսի օպտիմալ կառուցվածք, որն ապահովի մարդու ֆիզիոլոգիական նորմալ զարգացումը և երկարակեցությունը։

Այս հոդվածում հիմնականում շոշափեցինք բնակչության (ընտանիքի) վերարտադրության, շարժման, կյանքի պայմանների, պահանջմունքների ուսումնասիրության հարցերը և մի քանի արդյունքները։ Այստեղ մենք չանդրադարձանք արտաքուստ սուբյեկտիվ բնույթ կրող պրոցեսների՝ հասարակության անդամների հոգեկան ապրումների ու ձգտումների, սիրո և ամուսնության, հանցագործությունների և այլ հակահասարակական երևույթների հետազոտության հարցերին։ Միայն նշենք, որ օբյեկտիվ և սուբյեկտիվ սոցիալական պրոցեսները և երևույթները պետք է հետազոտվեն կոմպլեքսորեն, սերտ կապակցության մեջ։ Նոր մարդու դաստիարակության պրոբլեմը կարող է ճիշտ և արագ լուծվել միայն այն ժամանակ, երբ սիստեմատիկ և դիֆերենցված ուսումնասիրվում են կյանքի պայմանները, հասարակության անդամների, մասնավորապես, երիտասարդության աշխատանքային գործունեությունն ու անձնական հակումները և մշակվում իրական դրությունից բխող տնտեսական քաղաքականություն։

Միության մի շարք խոշորագույն քաղաքներում (Մոսկվայում, Լենինգրադում, Նովոսիբիրսկում) արդեն գործում են սոցիալական հետազոտությունների լաբորատորիաներ ու խմբեր։ Բնակչության զբաղվածության, կենսապայմանների, երիտասարդության մասնագիտական ուսուցման հետազոտությունների բնագավառում որոշակի աշխատանք է կատարվում նաև Երևանում։ Սակայն այդ աշխատանքները դեռևս կազմակերպական ամուր հիմքերի վրա չեն դրված, չեն կոորդինացվում և անհրաժեշտ օժանդակություն չեն ստանում։ Զպետք է մոռանալ, որ կոմունիստական հասարակության հաջող կառուցումը մեծապես կախված է սոցիալական պրոցեսների բազմակողմանի հետազոտությունից և գիտական պլանավորումից։

---

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

1965 թվականի սեպտեմբերի 2. Վիեննա. պատմաբանների XII միջազգային կոնգրեսի «Նոր և նորագույն պատմություն» մասնաճյուղի նիստում քննարկվում է սովետական պատմաբաններ Ա. Լ. Սիդորովի, Վ. Ի. Բովիկինի և Պ. Վ. Վոլոբուևի «Առաջին համաշխարհային պատերազմի տնտեսական և սոցիալական պրոբլեմները» զեկուցումը։ Եվ ահա ամբիոն է բարձրանում ամերիկյան պատմաբան Գ. Ժ. Սմիթը, որն իր ելույթն սկսում է հետևյալ բառերով. «Զեկուցումը հոյակապ էր, բայց այն խարսխված էր իմպերիալիզմի՝ որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիայի մասին լենինյան թեորիայի վրա։ Մինչդեռ մենք տարակուսում ենք, թե հենց իմպերիալիզմն է հանդիսանում պատերազմի աղբյուրը»։

Այս փաստը բնորոշ է այն սուր, գիտական ու գաղափարական պայքարի համար, որը ծավալվեց Վիեննայի հինավուրց համալսարանի լսարաններում 1965 թվականի օգոստոսի 28-ից մինչև սեպտեմբերի 5-ը՝ պատմաբանների XII միջազգային համաժողովի նիստերում, որին մասնակցեցին աշխարհի մոտ 3000 պատմաբաններ։ Սովետական պատմական գիտությունը ներկայացնում էին 70 պատմաբաններ։ Հայաստանից սովետական պատմաբանների պատվիրակության կազմում էին ՀՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Ա. Ռ. Հովհաննիսյանը, թղթակից-անդամ Ծ. Պ. Աղայանը և տողերիս գրողը։ Պետք է նկատել, որ պատմական գիտությունների ոչ մի միջազգային կոնգրեսի, այդ թվում և նախավերջին՝ Ստոկհոլմի և Հռոմի, երբեք այսքան շատ սովետական պատմաբաններ չէին մասնակցել. այդ իր ակնբախ բարերար ազդեցությունը թողեց կոնգրեսի աշխատանքների վրա։ Համընդհանուր ճակատ կազմելով սոցիալիստական մյուս երկրների և տարբեր մայրցամաքների մարքսիստ պատմաբանների հետ՝ սովետական գիտնականները կոնգրեսում ծավալված գիտական-գաղափարական մարտի բոլոր ճակատներում հանդես բերեցին հարձակողական ոգի, տվեցին պատմական պրոցեսների մարքսիստական-դիալեկտիկական վերլուծության օրինակներ։ Ամենուր, որտեղ հատկապես քննարկվում էին առավել հրատապ, այսօրվա հետ սերտորեն շաղկապվող պատմական գիտության կենսական հարցեր, սովետական պատմաբաններն ասում էին գիտական փաստարկումներով ծանրակշիռ իրենց խոսքը։ Դիմենք մի փոքր վիճակագրության։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին դիմադրության շարժման պատմության պրոբլեմի քննարկմանը մասնակցած 30 պատմաբաններից

19-ը սոցիալիստական երկրներից էին, այդ թվում 5-ը՝ ՍՍՌՄ-ից, «Նացիոնալիզմը և ինտերնացիոնալիզմը XIX—XX դարերում» պրոբլեմի քննարկմանը մասնակցած 33 պատմաբաններից 24-ը մարքսիստ-պատմաբաններ էին, «Պատմական մտքի զարգացումը XX դարի կեսին» պրոբլեմի շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը հանդես եկած 12 հոգուց 7-ը սոցիալիստական երկրներից էին և այլն։ Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս Ա. Ռ. Հովհաննիսյանը որպես էքսպերտ հանդես եկավ «Համաշխարհային զարգացման հանրագումարը 1815 թվականին» թեմայի քննարկման ժամանակ և Ռոբեսպիերին նվիրված սիմպոզիումում։

Առաջին թեմայի շուրջ ունեցած ելույթում նա քննադատեց հիմնական զեկուցող՝ ֆրանսիական պատմաբան Լուի Թրենարին, որն անտեսել էր ֆրանսիական ռևոլյուցիայի իդեական ակունքները և, ընդհանրապես, մարդկային պատմության այդ շրջադարձային էպոխայի ռևոլյուցիոն-դեմոկրատական գաղափարախոսությունը։

Ֆրանսիական ռևոլյուցիայի հռչակած Ազատություն, Հավասարություն և Եղբայրություն լոզունգները, նշեց ակադեմիկոս Ա. Ռ. Հովհաննիսյանը, հասարակական տարբեր դասակարգերի ու խավերի կողմից ընկալվում ու մեկնաբանվում են յուրովի։ Հավասարությունը արդյոք պետք է լինի միայն քաղաքակա՞ն, թե՞ նաև սոցիալական (մի հարց, որն այսօր կապիտալիստական երկրների աշխատավոր զանգվածների համար նույնքան հրամայական է, որքան ֆրանսիական ռևոլյուցիայի շրջանում)։ Պլեբեյական խավերը և նրանց գաղափարական ներկայացուցիչները (Ֆրանսուա Բուասել, Ժան-Կլոդ Շապյուի, Բաբյոֆ) ռևոլյուցիայի հենց սկզբից վճռականորեն հանդես եկան հանուն սոցիալական հավասարության։ Հատկանշական է, որ արդեն 1789 թվականի սեպտեմբերի 3-ին, այսինքն՝ «Մարդու և քաղաքացու իրավունքների դեկլարացիայի» ընդունումից մի քանի օր հետո, Ֆրանսուա Բուասելը խիստ քննադատեց այն, հայտարարելով, որ դա սոցիալական անհավասարության վրա հիմնված «իրերի հին կարգի մոդիֆիկացիան է» և խնդիր դրեց ընդունել «Մարդու պահանջների դեկլարացիան», որը երաշխավորում է գոյության հավասար միջոցներ բոլորի համար։ 1790 թվականին Ժան-Կլոդ Շապյուին, վերլուծելով իրավունքների դեկլարացիան, ցույց տվեց, որ նրա սկզբունքները կարող են իրականացվել միայն (և ոչ թե ձևականորեն հռչակվել, ինչպես ժամանակակից բուրժուական «ազատությունները») կոմունիստական սկզբունքներին ապավինած հասարակարգում։ Իհարկե, այդ գաղափարները դեռևս գիտականորեն հիմնավորված ու ձևակերպված չէին, բայց բանվորական շարժման զարգացմանը զուգընթաց հող նախապատրաստեցին մարքսիզմի երևան գալու համար և հուժկու ազդակ հանդիսացան ռևոլյուցիոն-դեմոկրատական շարժումների խթանմանը։

Պրոֆեսոր Ծ. Աղայանը ելույթ ունեցավ «Դիմադրության շարժման պատմությունը Եվրոպայում», «Բալկանյան ժողովուրդների պայքարը տնտեսական ու ազգային անկախության համար 1875—1914 թթ.», ինչպես նաև «Ֆեդերացիան և ֆեդերատիվ պետությունները» պրոբլեմների շուրջ ծավալված բանավեճերում։

«Ֆեդերացիան և ֆեդերատիվ պետությունները» պրոբլեմի քննարկման ժամանակ նա օրինակներով ցույց տվեց, թե նյութական ու հոգևոր մշակույթի բոլոր ասպարեզներում ինչպիսի նվաճումներ է ձեռք բերել Սովետական Հա-



յաստանը ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում։ Նա արժանի հակահարված տվեց ամերիկյան պատմաբան Ռուդնիցկուն, որն իր ելույթում հայտարարեց, թե իբր Ուկրաինան, Վրաստանը, Հայաստանը բուրժուա-նացիոնալիստական կառավարողների ժամանակ ավելի մեծ անկախություն և իրավունքներ ունեին, քան սովետական իշխանության հաստատումից հետո։ Պատմական կոնկրետ փաստերով նա ապացուցեց, որ 1918—1920 թվականներին Հայաստանը խաղալիք էր իմպերիալիստական տերությունների ձեռքին, մանր դրամ, որ նրանք օգտագործում էին իրենց շահամոլական գործարքների ժամանակ, որոնք այնքան թանկ նստեցին հայ ժողովրդին։ Ռուդնիցկու այն զրպարտությանը, թե իբր սովետական իշխանությունը Հայաստանում հաստատվել է ժողովրդի կամքին հակառակ, Կարմիր բանակի զենքի ուժով, պրոֆ. Ծ. Պ. Աղայանը պատասխանեց, որ դեռևս 1920 թվականի մայիսին, երբ Հայաստանում չկար ոչ մի կարմիրբանակային, հայ աշխատավոր զանգվածները զինված պայքարի ելան բանվորա-գյուղացիական իշխանություն հաստատելու համար։

Տրամագծորեն իրարամերժ աշխարհայացքների պայքարը կոնգրեսում այնքան սուր բնույթ էր կրում, որ առանձին բուրժուական պատմաբանների ներվերը չէին դիմանում, և նրանք դրսևորում էին ջղաձգության նոպաներ։ Դա պատմական հեռանկարի կորստի և մարդկության առաջընթացից սարսափելու հետևանք էր։ Անհետաքրքիր չի լինի հիշել, որ երբ ակադեմիկոս Մ. Վ. Նեչկինայի «Պատմական մտքի զարգացումը XX դարի կեսին» զեկուցման քննարկման ժամանակ հանդես եկավ ռեակցիոն պատմաբան Ե. Խալեցկին և հայտարարեց, որ իրեն որպես «քրիստոնեական փիլիսոփայության» կողմնակցի չի ոգևորում «Մարքսի պոզիտիվիզմը՝ իր տնտեսական գործոններով», որ ինքը կանգնած է «աշխարհը բռնի ուժով կոմունիզմի կողմից նվաճվելու վտանգի դեմ պայքարողների շարքերում», նիստի նախագահ, իտալական ռեակցիոն պատմաբան Վալսեկին ոգևորված տեղից վեր թռավ և ամուր սեղմեց Խալեցկու ձեռքը։ Չեխոսլովակյան պատմաբան Բարտան մերկացրեց «բռնության» թրչնամիների ամբողջ կեղծությունը, նշելով, որ չի կարելի դատապարտել բռնությունը ընդհանրապես, անկախ այն բանից, թե ինչի համար է այն կիրառվում։ «Բոլոր ազատությունները,— հայտարարեց նա դիմելով Խալեցկուն, Վալսեկիին և բուրժուական «ազատությունների» մյուս երկրպագուներին,— որոնց ջերմ պաշտպանների դերում հանդես եք գալիս դուք, նվաճվել են այնպիսի բռնությամբ, որը, որպես այդպիսին, կարող է լինել պատմության ֆենոմենը»։ Բայց այստեղ մեծապատիվ Վալսեկին ընդհատեց նրան և կարծես ամեն ինչին անտարբեր մարդու տեսքով ասաց.

— Չէ՞ որ մենք, պարոններ, պայմանավորվել ենք քաղաքականության մասին չխոսել։

Հարցը, իհարկե, վերաբերում էր միայն այն քաղաքականությանը, որը չէր բխում Վալսեկիի (և նմանների) տերերի շահերից։ Մի շարք ռեակցիոն պատմաբաններ բազմիցս հանդես եկան գաղափարախոսության բնագավառում խաղաղ գոյակցության կոչերով։ Ամերիկյան պրոֆեսոր Գ. Կոնը հայտարարեց, թե պատմաբանների նախավերջին՝ Հռոմի միջազգային կոնգրեսում մարքսիստ-պատմաբանների և բուրժուական պատմաբանների միջև անդունդ կար, որի երկու կողմերը վերջին տարիներին շատ են մոտեցել։ Նա նշեց, թե իբր գաղափարախոսության բնագավառում առկա է խաղաղ գոյակցության միտումը։

Նույն միտքն էր արտահայտում և Կատովսկին (Արևմտյան Բեռլին)։ Ըստ նրա, «մարքսիստական մեթոդը ոչ մարքսիստականի հետ մերձենալու էվոլյուցիա է ապրում»։ Պարզ է, որ այստեղ բուրժուական պատմաբանները ցանկությունն իրականության տեղ են ընդունել։ Պատմաբանների Վիեննայի համաժողովում քննարկվեցին ավելի քան 120 պրոբլեմներ ու թեմաներ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ հնարավոր չէ անդրադառնալ կոնգրեսում քննարկված բոլոր գիտական խնդիրներին։ Այս հոդվածում մենք արծարծում ենք միայն մի քանի առավել խոշոր և առավել հրատապ պրոբլեմների շուրջ տեղի ունեցած բանավեճերը, որոնք կարող են լույս սփռել ինչպես կոնգրեսի ընդհանուր աշխատանքների բնութագրման, այնպես էլ պատմական երևույթների վերլուծության ու գնահատման մարքսիստական-մատերիալիստական և բուրժուական մեթոդների պայքարի արդի վիճակի վրա։

## Երկու լագեր, պայքարի երկու դրոշ

Դեռևս 1913 թվականին, «Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին» նշանավոր աշխատության մեջ Վ. Ի. Լենինը նշել է, որ «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ — ահա երկու թշնամական-անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 13)։

Լենինյան այս խոսքերը հիանալի բնաբան են պատմաբանների Վիեննայի համաժողովի այն մասնաճյուղի աշխատանքների ամբողջ ընթացքի համար, որտեղ քննարկվում էր «Նացիոնալիզմը և ինտերնացիոնալիզմը XIX և XX դարերում» պրոբլեմը։

Հիմնական զեկուցումով հանդես եկավ ամերիկյան ռեակցիոն պատմաբան Գ. Կոնը։ Ինչպես հայտնի է, նացիոնալիզմի և նացիոնալիստական կրքերի բորբոքումը կարևոր տեղ է գրավում իմպերիալիզմի գաղափարական զինանոցում։ Օգտագործելով իր վիթխարի պրոպագանդիստական մեքենան, իմպերիալիստական շրջաններն ամեն կերպ աշխատում են թշնամություն սերմանել սոցիալիստական լագերի երկրների, սովետական ժողովուրդների միջև, իրենց շահերին ի սպաս դնել նացիոնալիզմի ամենաաննշան դրսևորումն անգամ։

Արտաքին քաղաքականության և «հոգեբանական պատերազմի» հարցերի Բոննի «տեսական» օրգան և արևմտագերմանական ազդեցիկ «Աուսենպոլիտիկ» ամսագիրը գրում է. «Անհրաժեշտ է օգտագործել ժամանակակից պրոպագանդայի բոլոր միջոցները, հոգեբանական պայքարի խելացի եղանակները, անհրաժեշտ է մեր բարոյագիտությունն ու գաղափարախոսությունն ամրապնդել կոմունիստական լագերի երկրների բնակչության հասարակական գիտակցության մեջ։ Օգտագործելով **ազգային տարաձայնությունները** (ընդգծումը մերն է.— Կ. Ու.), կրոնական նախապաշարմունքները, մարդկային թուլությունները... անհրաժեշտ է անտարբերություն զարգացնել կոմունիստական պետական ղեկավարության նպատակների նկատմամբ»։

Այս նույն նպատակին էին ծառայում և ամերիկյան պրոֆեսոր Կոնի զեկուցումը, ներածական ու եզրափակիչ խոսքը։ Ելնելով էկլեկտիկական, գերազանցապես իդեալիստական դիրքերից, զեկուցողը երևույթները դիտում է իրենց



օբյեկտիվ, պատմական կոնկրետ բովանդակությունից (տնտեսական, սոցիալական, քաղաքական) անջրպետված, քննարկվող պրոբլեմը հանգեցնելով միայն սուբյեկտիվ ընկալման արգասիք հանդիսացող արտաքին նշանների արձանագրման։ Սոցիալ-տնտեսական ու քաղաքական բարդ պրոցեսները, որոնցով պայմանավորված են հետազոտվող երևույթների ծագումն ու զարգացումը, զեկուցման մեջ ներկայացված են սմքած ու խեղաթյուրված ձևով։ Որակապես տարբեր պատմական կատեգորիաներն ու հասկացությունները կամայականորեն ներկայացված են խառնիճաղանջ, հաճախ էլ նույնացված ձևով։ Այսպես, օրինակ, Կոնը փորձում էր հանուն ազգային ազատության ու անկախության ճնշված ժողովուրդների պայքարը ներկայացնել որպես նացիոնալիզմ, իսկ ժամանակակից ինտեգրացիան ու կոսմոպոլիտիզմը՝ որպես ինտերնացիոնալիզմ։ Ավելի հեռուն գնալով, նա հայտարարեց, որ սոցիալիստական երկրների զարգացման արդի էտապի համար իբր բնորոշ է «նացիոնալիզմը», որ մարքսիզմը ինտերնացիոնալիզմը հռչակելով իր գաղափարախոսությունը, արդ շրջադարձ է կատարել դեպի «նացիոնալիստական» մտայնությունը։ Ընդսմին, պրոֆ. Կոնի զեկուցման մեջ գիտական նման «գոհարների» ու «հայտնությունների» պակաս չէր զգացվում։ Առանց խղճի խայթի Կոնը տարբեր ազգերի ներդաշնակ զարգացման օրրան հռչակեց... ԱՄՆ-ը, որտեղ ծաղկում է նացիոնալիզմի մի այնպիսի բարբարոսական տեսակ, ինչպիսին է ռասիզմը, Միավորված ազգերի կազմակերպությունը, ինտեգրացիայի զարգացումը, կաթոլիկ եկեղեցու գործունեությունը Կոնի «խոր համոզմամբ, ժամանակակից ինտերնացիոնալիզմի օրինակներ են»։

Զեկուցման շուրջ տեղի ունեցավ գիտական-քաղաքական սուր բանավեճ։ Ըստ էության պրոֆեսոր Կոնի տեսակետների պաշտպանությամբ հանդես եկան բուրժուական մի քանի պատմաբաններ։ Լիարյուն գիտական մեթոդոլոգիական մոտեցումը հնարավորություն տվեց ելույթ ունեցող մարքսիստ-պատմաբաններին՝ ճիշտ վերլուծելու պատմական կոնկրետ պրոցեսները, որոնք սերտորեն միահյուսված են կապիտալիզմի ժամանակ և սոցիալիստական հասարակարգում ազգային հարցի զարգացման հետ, բացահայտելու նացիոնալիզմի սոցիալ-տնտեսական ու քաղաքական ակունքները, նրանց դասակարգային իմաստն ու հենքը, որպես երկու հակամարտ լագերների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի գաղափարախոսություններ։ Կոնի և նրա համախոհների ռեակցիոն կոնցեպցիաներն ու մեթոդոլոգիական արատավոր ելակետները ենթարկվեցին գիտականորեն հիմնավորված ու ջախջախիչ քննադատության։

Սոցիալիստական երկրների պատմաբանները համոզիչ փաստարկներով ցույց տվեցին, որ սոցիալիստական ազգերի զարգացումը չի հակասում ինտերնացիոնալիզմին, որ սոցիալիստական հայրենասիրությունը և բուրժուական նացիոնալիզմը իրարամերժ, իրար հետ շփման եզրեր չունեցող կատեգորիաներ են։ Հիմնովին հերքվեցին ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման և ինտերնացիոնալիզմի միջև հակասություն տեսնելու՝ Կոնի և նրա համախոհների փորձերը։

## Չմոռանալ պատմության դասերը

Պատմաբանների Վիեննայի կոնգրեսում թերևս ոչ մի պրոբլեմի քննարկում այնքան շատ ունկնդիրներ չունեցավ, որքան առաջին համաշխարհային

պատերազմի սոցիալական, տնտեսական ու քաղաքական ասպեկտների քննարկումը։ Եվ այդ հասկանալի է։ Այն ունի վիթխարի արդիական նշանակություն։ Պրոբլեմի քննարկումն ընթացավ հիմնականում երեք ուղղությամբ. պատերազմի ծագումը, կապիտալիստական վերարտադրության կրիզիսը պատերազմի պայմաններում և սոցիալական հակասությունների սրումն ու աշխատավոր զանգվածների հեղափոխականացումը պատերազմող երկրներում։ Ելույթ ունեցող բուրժուական ռեակցիոն պատմաբանները ուժ ու եռանդ չէին խնայում ապացուցելու, որ առաջին համաշխարհային պատերազմի սանձազերծման համար տիրապետող դասակարգերը ոչ մի պատմական պատասխանատվություն չեն կրում։ Եվ թեպետ նրանք տարբեր էին երանգներում, բայց միաձայն էին հիմնականում և գլխավորում՝ իմպերիալիզմը չի երկնել պատերազմը, մեծ տերությունների իրենց կամքից անկախ «սահել» են պատերազմի անդունդը։ Մեծ տերությունների միջև տնտեսական մրցակցությունը առաջին համաշխարհային պատերազմի պատճառ չէր կարող լինել, ասում էր ԱՄՆ-ի պատմաբան Սմիթը։ Պատերազմի հիմնական պատճառը ժողովուրդների նացիոնալիզմը և նրանց էքսպանսիոնիստական կրքերն էին և ոչ թե տնտեսական գործոնները, պնդում էր ֆրանսիական պատմագետ Բոման։ Գերմանիայի գործարար շրջանները կատարելապես ոչ մի առնչություն չունեն պատերազմի բռնկման հետ, և պատերազմը նրանց համար «սյուրպրիզ» էր, բարբառում էր Թրեուն (ԳՖՌ)։ Պատերազմի գլխավոր մեղավորը Ռուսաստանն էր, որի կառավարությունը 1912—1913 թթ. եկավ այն եզրակացության, որ ոչ թե պատերազմը, այլ խաղաղությունը կարող է առաջ բերել ռևոլյուցիա (Խոլցլե, նախկին ակտիվ նացիստ— ԳՖՌ) և այլն։ Բուրժուական պատմաբանների այս ընդհանուր խմբում աններդաշնակ հնչեց Գերմանիայի ֆեդերալ ռեսպուբլիկայի նշանավոր պատմաբան Ֆ. Ֆիշերի զգաստ ու բանական ձայնը։ Վերջինիս «Թռիչք դեպի համաշխարհային տիրապետություն» մեծածավալ աշխատությունը, որտեղ ասված է ճշմարտությունն առաջին համաշխարհային պատերազմի տարիներին կայզերական Գերմանիայի զավթողական պլանների մասին, առաջ է բերել մեծ հետաքրքրություն աշխարհի շատ երկրների հասարակայնության շրջաններում։ Փորձելով թուլացնել Ֆիշերի գրքի ազդեցությունը համաշխարհային հասարակական կարծիքի վրա, Արևմտյան Գերմանիայի ռեակցիոն պատմաբանները միլիտարիզմի սյուների (ինչպիսիք են՝ Հերստենմայերն ու Շտրաուսը) հովանու տակ կազմել են ընդհանուր ճակատ ընդդեմ Ֆիշերի։ 1964 թվականի արևմտա-գերմանական պատմական գրականության գրումեյստեր Ռիտերը հրատարակեց եռհատոր «Պետական արվեստը և ռազմական արհեստը» աշխատությունը, որտեղ փորձում է պսակազերծել Ֆիշերի կոնցեպցիան։ Բայց դա ցանկալի արդյունք չտվեց։ Կոնգրեսում նոր ուժով բորբոքվեց Ռիտեր-Ֆիշեր ընդհարումը։ Ռիտերը չէր մասնակցում կոնգրեսին։ Նրա սայլը քաշելու պարտականությունն իր վրա էր վերցրել նրա համախոհ Էրդմանը, որը գործն այնպես պատկերացրեց, թե իբր Գերմանիայի ռազմական պլաններն այն պտուղներն էին, որոնք աճեցին պատերազմի ծառի վրա։ Էրդմանը սոցիալ-տնտեսական ու քաղաքական երևույթների վերլուծությունը փոխարինեց առանձին պատմական անձերի նկատառումների քննարկմամբ։ Ըստ նրա, կանցլեր Բեթման-Հոլվեգը դեմ էր ո՛չ միայն Գերմանիայի համաշխարհային տիրապետությանը, այլև Եվրոպայի նվաճմանը։ Գիտական ծանրակշիռ փաստերով հագեցած ելույթ ունեցավ Ֆիշերը. համոզիչ կերպով նա



ցույց տվեց, որ Գերմանիայի ռազմական նպատակներն առաջին համաշխարհային պատերազմում մշակվել և ձևակերպվել են մինչև 1914 թվականը, որ ճիշտ չէ ամեն ինչ հանգեցնել Բեթման-Հոլվեգի գործունեությանը, քանի որ էական չէ, թե ինչ էր մտածում նա, կարևոր է, թե ինչ էր անում նա, թե ինչպես պլանավորվեց և սանձազերծվեց պատերազմը։

Ներկաները Ֆիշերի խոսքերը դիմավորեցին բուռն ծափերով։ Ակադեմիկոս Վ. Խվոստովը նշեց, որ թեև սովետական պատմաբանները չեն կարող համաձայնել Ֆիշերի գրքի բոլոր դրույթներին, բայց այն խոշոր գործ է և մի քանի տարի անց Գերմանիայի ռազմական նպատակների մասին նրա կոնցեպցիան կարժանանա համընդհանուր ընդունման։

Բուրժուական մի շարք պատմաբաններ (Հ. Մեյեր—ԱՄՆ, Թեյլոր—Անգլիա և ուրիշներ) հանդես եկան կռվող երկրների սոցիալական և տնտեսական կյանքի վրա պատերազմի ներգործության օրինաչափությունների բացահայտման այն փորձերի դեմ, որոնք կային սովետական պատմաբաններ Սիդորովի, Բովիկինի և Վոլոբուևի՝ կոնգրեսին ներկայացված զեկուցման մեջ։ Պատերազմի ներգործության ընդհանուր օրինաչափությունների բացասումը պետք էր ամերիկյան պատմաբանին, որպեսզի նա ճգներ հաստատել, թե Հոկտեմբերյան ռևոլյուցիան բացառապես ազգային երևույթ էր՝ ծնված Ռուսաստանի սպեցիֆիկ առանձնահատկություններից։ Անգլիական պատմաբան Թեյլորը փորձեց այն թեզը զարգացնել, թե պատերազմը Եվրոպայում նպաստեց կապիտալիզմի ուժեղացմանը։ Առաջին համաշխարհային պատերազմի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պրոբլեմների քննարկումը ակնհայտորեն ցույց տվեց, որ իմպերիալիզմի հոգևոր ծառայության մեջ գտնվող պատմաբանները, մոռանալով ու անտեսելով պատմության դասերը, ջանում են անմեղության թիկնոց նետել մոնոպոլիստական կապիտալի տերերի ուսերին, որոնք ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ոսկու քուրմերին զոհեցին տասնյակ միլիոնավոր մարդկանց կյանքը։ Միաժամանակ պարզ դարձավ, որ ռեակցիոն պատմաբանների համար օրեցօր դժվարանում է այդ հանցագործ առաքելությունը շարունակելը, որ ավելի ու ավելի են աճում նրանց միլիտարիստական կոնցեպցիաների մերկացման (այդ թվում և ոչ մարքսիստ-պատմաբանների կողմից) ուժն ու ներգործությունը։

## Ի՞նչ ցույց տվեց կոնգրեսը

Ամենից առաջ այն, որ պատմական գիտությունների բնագավառում, որպես գաղափարական ճակատի կարևոր տեղամասերից մեկը, տեղի է ունենում երբեք չթուլացող ճակատամարտ ներհակ աշխարհայացքների միջև, որ պատմական պրոցեսների ուսումնասիրման մատերիալիստական-դիալեկտիկական մեթոդն ավելի ու ավելի է ցուցադրում իր կենսունակությունը և գերազանցությունը բուրժուական մտածելակերպի նկատմամբ։ Նույնիսկ մեր նկատմամբ ոչ բարյացակամորեն տրամադրված բուրժուական շատ պատմաբաններ հարկադրված ընդունում էին մարքսիստական պատմագրության նվաճումներն ու նշանակությունը համաշխարհային պատմագրության զարգացման համար։

Երկրորդ. մարքսիստ-պատմաբանների լագերը գտնվում է ուժերի առավել համախմբման ու կենտրոնացման պրոցեսում, մինչդեռ բուրժուական պատ-

մագրությունը միասնական ճակատ չունի, նրա շարքերում նկատվում են մասնատվածություն, տարընթացություն, հակասություններ և, որ շատ էական է՝ շերտավորում: Ոչ քիչ ուղղություններ, հիասթափվելով բուրժուական մեթոդոլոգիայից, տատանումներով ու մաքառումներով իրենց հայացքը հառում են դեպի մարքսիստական պատմագրությունը (այդ նկատվում է, հատկապես, Ֆրանսիայում, պատմագիտական այն հոսանքներում, որոնց գլխավորում են ականավոր պատմաբաններ Լաբրուսը և Բրոդելը):

Երրորդ. մարքսիստական պատմագրությունն առաջադրում է պատմական խոշոր պրոբլեմներ և տալիս դրանց պոզիտիվ, կոնստրուկտիվ լուծումը, մինչդեռ բուրժուական պատմագրությանը պակասում է այդ, այն խարխափում է փաստագրության, պատմական երևույթների նկատմամբ նեգատիվ ու հայեցողական վերաբերմունքի լաբիրինթոսում: Ինչպես ցույց տվեց Վիեննայի կոնգրեսը, բուրժուական պատմաբաններն ըստ էության այլևս չեն կարողանում պատմական խոշոր, մարդկությանը հուզող պրոբլեմները մանատել, տարբալուծել երկրորդական, աննշան հարցերի, և միայն անպտուղ ու անվերջ վիճաբանություններ են սկսում վերջիններիս շուրջ, փորձելով խուսափել կյանքի ու ժամանակի առաջադրած պատմական պրոբլեմների մասին իրենց խոսքն ասելուց:

Չորրորդ. անհրաժեշտ է սովետական պատմաբանների լավագույն մենագրությունները, ինչպես նաև բիբլիոգրաֆիկ գրականությունը հրատարակել արտասահմանյան լեզուներով, որը մեծապես կնպաստի սովետական պատմագրության նվաճումների պրոպագանդմանը և նրա ազդեցության ուժեղացմանը: Հարկավոր է լուրջ ուշադրություն դարձնել պատմական ականավոր գործիչների գիտական կենսագրությունների ստեղծման ժանրի վրա, որը լայնորեն տարածված է կապիտալիստական աշխարհում:

Եվ, վերջապես, պատմաբանների Վիեննայի կոնգրեսը ցույց տվեց, որ կապիտալիստական երկրների շատ պատմաբաններ անկեղծորեն ցանկանում են ամրապնդել կապերը մարքսիստ-պատմաբանների հետ, համագործակցել նրանց հետ պատմական գիտությունների առանձին բնագավառներում (հատկապես ընդհանուր տերմինաբանության սահմանման, աղբյուրագիտության, փաստաթղթերի փոխանակման և ժողովածուների կազմման), միասնական ճակատով հանդես գալ հանուն խաղաղության, ընդդեմ նոր պատերազմի վտանգի: Համաժողովի «Մայրցամաքների պատմությունը» մասնաճյուղի նիստում ֆրանսիական պատմաբան պրոֆեսոր Ժ. Շենոն իր զայրույթի ձայնը բարձրացրեց ընդդեմ Հարավային Վիետնամում ամերիկյան ագրեսիայի և առաջարկեց այն դատապարտող բանաձև, որը պաշտպանեցին պրոֆեսորներ Նիիդան (Ճապոնիա), Լաթիմորը (Լիդս) և ուրիշներ:

Բանաձևն ընդունվեց ճնշող մեծամասնության ծափահարություններով:



## ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ուսմունքների դպրոց

Ի. ՇՎԵՑ

# ՀԱՆՈՒՆ ԱՎԱՆԳԱՐԴԻ ԵՎ ՄԱՍՍԱՆԵՐԻ ԿԱՊԻ

Ինչպես արդեն մատնանշվել է մեր ցիկլի նախորդ հոդվածներից մեկում, սովետական կոլեկտիվը բավականին բարդ հասարակական օրգանիզմ է: Նրա ներսում սովորաբար գործում է աշխատավորների ինքնագործ զանազան կազմակերպությունների մի ամբողջ սիստեմ: Նրանք ունեն իրենց խնդիրները, կատարում են իրենց որոշակի ֆունկցիաները: Պարտկազմակերպությունը, լինելով կոլեկտիվի ցեմենտող ուժը, ուղղություն է տալիս նրա գործունեությանը, աշխատում նրա հետ ձեռք-ձեռքի, ամեն ինչում հենվում նրա վրա:

Սերտ համագործակցությունն ու փոխներգործությունն աշխատանքում, մասսայական կազմակերպություններում պարտիական հմուտ ղեկավարությունը հույժ կարևոր են: Այդ թույլ է տալիս կոմունիստներին բազմակողմանի, ամուր կապեր հաստատել աշխատավորական զանգվածների հետ, ավելի հաջողությամբ մոբիլիզացնել կոլեկտիվի անդամներին՝ տնտեսական-քաղաքական կենսական խնդիրների իրագործման համար, ճիշտ դաստիարակել մարդկանց, ակտիվորեն նպաստել նոր, իսկական կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորմանն ու զարգացմանը:

Աշխատավորների մասսայական կամավոր բոլոր միավորումների պարտիական ամենօրյա ղեկավարության անհրաժեշտությունը բխում է այն դերից, որ նրանք խաղում են մեր հասարակության և մեր յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում:

### ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐԸ

Մեր պարտիան անշեղորեն ղեկավարվում է մարքս-լենինյան այն դրույթով, որ կոմունիստական շինարարությունը մասսաների գիտակցական ստեղծագործությունն է, որ ժողովուրդն է պատմության կերտողը: Պարտիան կարող է հասնել իր վերջնական նպատակին միայն այն դեպքում, եթե նա կազմակերպում և առաջ է տանում աշխատավորներին: «Կոմունիստական հասարակություն կառուցել կոմունիստների ձեռքով,— ասում էր Վ. Ի. Լենինը,— դա երեխայական, միանգամայն երեխայական իդեա է: Կոմունիստները մի կաթիլ են ծովում, մի կաթիլ ժողովրդական ծովում: Նրանք միայն այն դեպքում կարող են ժողովրդին իրենց ճանապարհով տանել, եթե ճիշտ որոշեն ուղին ոչ միայն համաշխարհային պատմական ուղղության իմաստով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 343):

Ժողովրդի հետ անխախտելի միասնության մեջ է պարտիայի ուժի գլխավոր աղբյուրը, պետության և հասարակության ղեկավարման մեջ է նրա ողջ գործունեության հաջողության գրավականը։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է մասսաների հետ պարտիայի կապի մշտական ամրապնդման ու զարգացման անհրաժեշտությունը։ Պարտիայի համար ամենամեծ վտանգներից մեկը նա համարում էր «մասսաներից կտրվելու վտանգը, այն վտանգը, որ ավանգարդը չափազանց շատ առաջ կվազի, «չհավասարեցնելով ճակատը», ամուր կապ չպահպանելով աշխատանքի ամբողջ բանակի, այսինքն՝ բանվորական ու գյուղացիական մասսայի հսկայական մեծամասնության հետ» (հ. 33, էջ 222)։ Վ. Ի. Լենինը պարտիային սովորեցնում էր պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում լսել այդ կիրառել իր ողջ քաղաքականությունը, ողջ պրակտիկ աշխատանքը։ Եվ մեր պարտիան անընդմեջ բազմապատկում է իր կապերը մասսաների հետ։

Այստեղ մեծ անելիքներ ունեն սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Նրանք գործում են մասսաների հոծ զանգվածների հետ, կազմակերպական ու դաստիարակչական անմիջական աշխատանք տանում աշխատավորների շրջանում։ Մասսաների հետ պարտիայի մերձեցմանը սկզբնական պարտկազմակերպությունը նպաստում է նրանով, որ այն միշտ և ամեն բանում պաշտպանում է աշխատավորների շահերը ու ելնում դրանցից, հոգում նրանց արտադրական և քաղաքական ակտիվության զարգացման, նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման համար, օգնում՝ հաշվի առնելու մասսաների կարծիքը։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է մասսայական կազմակերպությունների՝ սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերատիվների և այլ կամավոր միությունների վիթխարի դերը, որոնց օգնությամբ պարտիան մըշտապես ազդում է բնակչության ամենատարբեր խավերի ու խմբերի վրա, համախմբում, դաստիարակում ու կազմակերպում է աշխատավորներին։ Սովետները ժողովրդի համապարփակ կազմակերպություններն են, նրա միասնության մարմնավորումը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «Պարտիայի ամբողջ աշխատանքն ընթանում է սովետների միջոցով, որոնք միավորում են աշխատավոր մասսաներին առանց պրոֆեսիաների խտրության» (հատ. 31, էջ 41)։ Բացահայտելով արհմիությունների դերը սոցիալիստական պետության սիստեմում, Վլադիմիր Իլյիչը ընդգծել է, որ «արհմիությունները ստեղծում են ավանգարդի կապը մասսաների հետ, արհմիությունները ամենօրյա աշխատանքով համոզում են մասսաներին, այն դասակարգի մասսաներին, որը միայն կարող է մեզ կապիտալիզմից տանել դեպի կոմունիզմը» (հ. 32, էջ 3)։

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում աշխատավորների մասսայական կազմակերպություններն աճում, ամրապնդվում ու զարգանում են։ Նրանք հանդես են գալիս որպես կոմունիզմի գաղափարների, պարտիայի քաղաքականության ավելի ու ավելի ակտիվ կենսագործողներ։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում մեծանում է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերատիվների դերը։ Վերելք են ապրում նաև գիտա-տեխնիկական, գիտա-լուսավորական ընկերությունները, նորարարական ու գյուտարարական կազմակերպությունները, գրականության, արվեստի, ժուռնալիստների միությունները, պաշտպանական, սպորտային և կուլտուր-լուսավորական ընկերությունները։



Աշխատավորական կազմակերպությունների զարգացումը ժողովրդական լայն մասսաների կոմունիստական գիտակցականության ու հասարակական-քաղաքական ակտիվության անշեղ աճի, սոցիալիստական դեմոկրատիայի ծաղկման օրինաչափ արդյունքն ու միաժամանակ անհրաժեշտ պայմանն է։ Ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, հասարակական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը պարտիան համարում է աշխատանքային մրցության ամեն կերպ զարգացումը և հոգատարությունը աշխատանքի կոմունիստական ձևերի խրախուսման, կոմունիզմի շինարարության գործում աշխատավորների ակտիվության հետագա բարձրացման, մասսաների նյութական-կենցաղային վիճակի բարելավման ու նրանց հոգևոր աճող պահանջմունքների բավարարման նկատմամբ։ Պարտիան անհրաժեշտ է գտնում նրանց ավելի շատ մասնակից դարձնել կուլտուրական հիմնարկների, առողջապահության և սոցապահովության ղեկավարման, հասարակական կարգի ամրապնդման աշխատանքներին։ Իսկ այս ամենը պահանջում է բարձրացնել պարտիական ղեկավարման մակարդակը, է՛լ ավելի կարգավորել ու կոորդինացնել նրանց գործունեությունը։ ՍՄԿՊ կանոնադրությունը պարտավորեցնում է պարտիական կազմակերպություններին՝ ղեկավարել բոլոր հասարակական կազմակերպությունները, աշխատավորներին ավելի լայնորեն մասնակից դարձնել դրանց աշխատանքներին, զարգացնել մասսաների ինքնագործունեությունն ու ակտիվությունը՝ դիտելով այդ որպես սոցիալիստական պետականությունից աստիճանաբար կոմունիստական հասարակական ինքնավարության անցնելու անհրաժեշտ պայման։

Ի՞նչ եղանակով են պարտիական կազմակերպություններն այդ անում։

### ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Հասարակական կազմակերպությունների պարտիական ղեկավարման սկզբունքների և մեթոդների հարցը պրակտիկորեն խիստ կարևոր է, քանի որ այն, ըստ էության, միշտ հանդիսացել է, ինչպես ընդգծել է Վ. Ի. Լենինը, «մասսային մոտենալու, մասսային տիրանալու, մասսայի հետ կապվելու մեթոդների հարցը» (հ. 32, էջ 6)։

Աշխատավորական կազմակերպությունների հետ իր փոխհարաբերությունները մեր պարտիան հիմնում է բացառապես լենինյան սկզբունքների վրա։ Դրանք մշակվել են պարտիայի թշնամիների, տրոցկիստների ու այլ օպորտունիստների դեմ մղված համառ մարտերում։ Այդ սկզբունքները դիմացել են ժամանակի քննությանը և ամրապնդվել բազմաթիվ պարտիական որոշումներում ու փաստաթղթերում։ Եվ անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն խստորեն հետևի դրանց։

Պարտիական ղեկավարության էությունը, իմաստը աշխատավորների մասսայական կազմակերպությունների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունն ամեն կերպ զարգացնելն է կոլեկտիվի կյանքում, արտադրական, դաստիարակչական, կենցաղային հարցերը լուծելիս նրանց դերը բարձրացնելը։

Ղեկավարելով հասարակական կազմակերպությունները, պարտիան չի հրամայում, նրանց նկատմամբ վարչարարական միջոցներ չի գործադրում։ Նրա ղեկավարման հիմքում ընկած է համոզման, գաղափարական ազդեցության մեթոդը։ Ինչպե՞ս է իրականում այդ կիրառվում սկզբնական պարտկազմակերպությունների գործունեության մեջ, յուրաքանչյուր կոլեկտիվում։

Պարտկազմակերպությունը մշտապես հետաքրքրվում է այն բանով, թե ինչպես է ընթանում աշխատավորական կազմակերպության գործունեությունը,

պարբերաբար քննարկում է նրա կարևորագույն խնդիրները։ Այդպես վարվելով, կոմունիստները, որպես կոլեկտիվի առաջավոր մաս, օգնում են՝ վեր հանելու թույլ տրված սխալները, բացերն ու թերությունները, բացահայտելու դրանց պատճառները և նշելու նրանց գործունեության ուղիները։ Ընդ որում, սկզբնական պարտկազմակերպությունը խորհուրդ է տալիս, հանձնարարում, ասենք, արհկոմին, ԴՕՍԱԱՖ-ի կոմիտեին ինչ անել, ինչպիսի միջոցներ ձեռնարկել։ Սովորաբար այդպիսի խորհուրդների ու հանձնարարությունների հիման վրա էլ մասսայական կազմակերպությունները նախատեսում են, թե ինչ են անելու և ինչպես։ Եթե պարտկազմակերպության հանձնարարությունները մտածված են, եթե նրա առաջարկները համոզիչ են և օգնում են աշխատանքների բարելավմանը, ապա հասարակական կազմակերպությունները սովորաբար սիրով են կատարում դրանք։

Ի դեպ, լինում են այնպիսի դեպքեր, երբ առանձին պարտկազմակերպություններ ճիշտ չեն կառուցում իրենց հարաբերությունները մյուս հասարակական կազմակերպությունների հետ. առանց քաշվելու խառնվում են սրանց ներքին գործերին, հրամայական տոնով են խոսում ներկայացուցիչների հետ, անընդհատ խնամակալում, շատ հաճախ կարգադրություններ անում, իսկ երբեմն էլ նույնիսկ փոխարինում նրանց ընտրական օրգաններին։ Այսպիսի մեթոդները հակասում են պարտիական ղեկավարման լենինյան սկզբունքներին և ամենևին չեն նպաստում մասսաների հետ պարտիայի կապի ամրապնդմանը։ Դրանք կարող են նույնիսկ որոշ անջրպետ առաջացնել անպարտիականների և պարտկազմակերպության միջև։ Ահա թե ինչու պարտիան վճռականապես դատապարտում և արմատախիլ է անում ղեկավարման նման մեթոդները։

Պարտիական կազմակերպություններն անց են կացնում իրենց գիծը, կոմունիստների միջոցով ազդում մասսայական կազմակերպությունների ողջ աշխատանքի վրա, իսկ կոմունիստները պարտիայի տեսակետը պաշտպանում են անպարտիականներին համոզելու, բացատրելու և իրենց հայացքները հրապարակավ պաշտպանելու միջոցով, ազդում մասսայի վրա ճշմարտացի խոսքով, ծանրակշիռ ու պարզորոշ փաստարկումներով, անձնական օրինակով։

ՍՄԿՊ կանոնադրությամբ սահմանված է նաև այն կազմակերպական ձևը, որն ապահովում է այս սկզբունքի կենսագործումը։ Անպարտիական կազմակերպություններում եղած պարտիական խմբերն են դրանք, որ կազմավորվում են սովետական, արհմիութենական, կոոպերատիվ և աշխատավորների մասսայական այլ կազմակերպությունների համագումարներում, կոնֆերանսներում, խորհրդակցություններում, ինչպես և այդ կազմակերպությունների ընտրական օրգաններում, որտեղ կան ոչ պակաս, քան երեք պարտանդամ։ Պարտիական խմբերի խնդիրն է՝ բազմակողմանի ուժեղացնել պարտիայի քաղաքականության ներգործությունն ու կիրառումը անպարտիականների շրջանում, ամրապնդել պարտիական ու պետական կարգապահությունը, պայքարը բյուրոկրատիզմի դեմ, պարտիական դիրեկտիվների կատարման ստուգումը։ Պարտիական խմբերը սովորաբար հավաքվում են այս կամ այն հարցի վերաբերյալ գոյություն ունեցող ընդհանուր տեսակետը նախապես մշակելու, առաջադրվելիք գործողություններն ու առաջարկություններն ի մի բերելու համար։

Մասսայական կազմակերպությունների ակտիվությունը, ինքնագործունեությունը, բեղմնավոր աշխատանքը պայմանավորված են դրանց ղեկավարությամբ։ Եվ պարտկազմակերպությունն ամենօրյա հոգատարություն է հանդես բերում ակտիվի, ղեկավար կադրերի ընտրության, նրանց աճեցնելու և դաստիարակության գործում։ Հենվելով իր հեղինակության, համոզիչ փաստարկումների վրա, պարտկազմակերպությունը կարողանում է հասնել այն բանին, որ աշխատավորների միությունների ղեկավար օրգաններում ընտրվեն կազմակերպական ունակություններով օժտված, կոմունիզմին նվիրված եռանդուն ընկերներ։ Պարտիական որոշումներում հստակ ցուցումներ կան, թե ինչպես այդ անել։ Օրինակ, պարտիայի X համագումարի (1921 թ.) «Արհմիությունների դերի ու խնդիրների մասին» բանաձևում ցույց է տրված, որ «Արհմիութենական շարժման ղեկավար անձնակազմի ընտրությունը, իհարկե, պետք է ընթանա պարտիայի ուղղության տակ վերահսկողությամբ։ Բայց պարտիական կազմակերպությունները պետք է առանձնապես խնամքով կիրառեն պրոլետարիատի դեմոկրատիայի նորմալ մեթոդները հենց արհմիություններում, որտեղ ղեկավարների ընտրությունը ամենից ավելի պետք է կատարվի իրենց՝ կազմակերպված մասսաների կողմից» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», 1954, մաս I, էջ 689)։

Կոմունիստները, պարտկազմակերպությունը կարող են և պարտավոր են, անշուշտ, անհրաժեշտության դեպքում միջամտել, իրենց կարծիքը հայտնել ընտրական օրգաններում առաջադրված թեկնածուների մասին։ Նրանք կարող են խորհուրդ տալ չընտրել անգործունյա, հղփացած, հանձնարարված գործից գլուխ չհանող ղեկավարների։ Սակայն պարտկազմակերպությունները, կոմունիստները կոչված են միշտ և ամենուրեք գործելու դեմոկրատական այն կարգի շրջանակներում, որի վրա հիմնված է տվյալ մասսայական կազմակերպության գործունեությունը։ Նրանք իրավունք չունեն հասարակական կազմակերպությունների վզին փաթաթելու իրենց թեկնածուներին, հաշվի չառնելու նրանց կամքը, մեծամասնության կարծիքը, ճնշում գործադրելու նրանց վրա։

Պարտկազմակերպությունների ազդեցությունն աշխատավորների մասսայական կազմակերպությունների վրա ուժեղ է, երբ նա լավ է աշխատում ակտիվի հետ, սովորեցնում է, օգնում խորհուրդներով ու գործով։ Բայց ամեն ինչում, նաև ակտիվի հետ տարվող աշխատանքներում օգնելով հասարակական կազմակերպություններին, պարտկազմակերպությունը, ինչպես ցույց է տրված ՍՄԿՊ կանոնադրության մեջ, չպետք է փոխարինի նրանց, չփոքրի ֆունկցիաները, թույլ տա անճարիր զուգահեռականություն աշխատանքում։ Իսկ նման երևույթներ դեռևս պատահում են։ Անկեղծորեն ցանկանալով բարելավել գործը, որոշ պարտկազմակերպություններ ամեն ինչ իրենք են անում։ Ասենք, ստուգում են պարտավորությունների կատարումը, ամփոփում մրցության արդյունքները և որոշում հաղթողներին, մինչդեռ այդ արհմիության անմիջական պարտականությունն է։ Այս արդեն ոչ թե օգնություն է, այլ փոխարինում։

Համառոտակի սրանք են աշխատավորների մասսայական կազմակերպություններում պարտիական ղեկավարության ընդհանուր սկզբունքները։ Այժմ քննարկենք արհմիության, կոմերիտմիության նկատմամբ պարտիական ղեկավարության մի քանի առանձնահատկությունները։

**ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆԸ**

Արդյունաբերական, տրանսպորտի, առևտրի, շինարարական ձեռնարկություններում, սովխոզներում և հիմնարկություններում արհմիության մեջ ընդգրկված են բոլոր կամ համարյա բոլոր աշխատողներն անխտիր։ Արհմիությունները բազմակողմանի գործունեություն են ծավալում աշխատա-

վորների շրջանում, խոշոր լիազորություններ ունեն, և այդ պատճառով էլ շատ
մեծ է նրանց դերը մեր հասարակության և յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում:
Այդ, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, «դաստիարակիչ կազմակերպություն է,
ներգրավման, ուսուցման կազմակերպություն է, դա դպրոց է, կառավարման
դպրոց, տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց» (հատ. 32, էջ 2): Վ. Ի.
Լենինի աշխատություններում, պարտիայի որոշումներում, ՍՄԿՊ ծրագրում
մշակված են արհմիությունների գործունեության գլխավոր ուղիները, հիմնա-
կան խնդիրներն ու մեթոդները: Եվ պարտիական կազմակերպություններն անում
են ամեն բան, նրանց ողջ աշխատանքը լենինյան սկզբունքներին համապա-
տասխանեցնելու համար:
Արհմիությունների կենտրոնական խնդիրն է՝ մոբիլիզացնել աշխատավոր-
ներին տնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքի, տեխնիկական անընդ-
մեջ պրոգրեսի, աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման,
պետական պլանների ու խնդիրների կատարման ու գերակատարման համար:
«Մենք պետք է հասնենք այն բանին,— ասում էր Վ. Ի. Լենինը,—որ արհմիու-
թյունների բոլոր անդամներն անխտիր շահագրգռված լինեն արտադրությամբ և
որպեսզի նրանք հիշեն, որ Սովետական Ռուսաստանը կկարողանա հաղթել՝
միայն մեծացնելով արտադրությունը, բարձրացնելով աշխատանքի արտադրո-
ղականությունը» (հ. 31, էջ 633—634):
Արտադրության զարգացման վրա արհմիութենական կազմակերպություն-
ները ակտիվ ներգործում են, ամենից առաջ ծավալուն սոցիալիստական մրց-
ցության, կոմունիստական աշխատանքի շարժման, առաջավոր փորձի, գի-
տության ու տեխնիկայի նվաճումների պրոպագանդման միջոցով: Ներկայումս,
երբ մրցությունը հենվում է տնտեսական ամուր բազայի վրա, հատկապես պա-
հանջվում է, որ այն կազմակերպվի հստակ, նրան տրվի իսկապես մարտական,
նպատակասլաց բնույթ: Արհմիությունների առջև գործունեության լայն ասպա-
րեզ են բացում ու նոր հնարավորություններ ընձեռում նրանց ՍՄԿՊ Կենտկոմի
սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումները: Անհրաժեշտ է այնպես անել,
որ արհմիություններն առավելագույն չափով օգտագործեն դրանք:
Մրցողների ջանքերը պետք է ուղղվեն բոլոր ապրանքների որակի բարձ-
րացման, գիտության ու առաջավոր փորձի նվաճումների արագ ներդրման,
ամեն բանում արտակարգ հաշվենկատության ու խնայողության համար մղվող
պայքարին: Պարտկազմակերպությունները, կոմունիստները կոչված են օգնելու
արհմիություններին՝ հասնելու դրան, ապահովելու գործարար մրցության ծա-
վալումը, կոլեկտիվում աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի
դաստիարակումը:
Ձեռնարկություններում աշխատողների ակտիվության բարձրացման կարևոր
միջոցը կոլեկտիվ պայմանագիրն է, որը կնքում են արհմիութենական կազմա-
կերպություններն ու ադմինիստրացիան: Այժմ, ինչպես նշվեց ՍՄԿՊ Կենտկոմի
սեպտեմբերյան պլենումում, կոլեկտիվ պայմանագրի դերը զգալի չափով կմե-
ծանա: Կոմունիստները պետք է ակտիվ աջակցեն կոլեկտիվ պայմանագրերի
կնքման պրակտիկայի բարելավմանն ու դրանց կատարման վերահսկողության
ուժեղացմանը: Անհրաժեշտ է ընդլայնված ու մանրակրկիտ քննարկել պայմա-
նագրերը, որպեսզի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ իմանա, թե ինչ է ար-
վելու ձեռնարկության աշխատանքների բարելավման համար, ինչպես է այդ
անդրադառնալու աշխատանքի պայմանների ու կենցաղի, աշխատավարձի վրա,



պայմանագրով ինչպիսի պարտավորություններ են դրված աշխատողների ու ադմինիստրացիայի վրա:

Արհմիությունները կազմակերպում ու զարգացնում են նորարարական ու գյուտարարական շարժումը, աշխատավորներին ընդգրկում գիտատեխնիկական ստեղծագործ աշխատանքում: Պարտկազմակերպությունը մեծ գործ է կատարում, օգնելով խիստ վերահսկողություն սահմանելու նորարարական ու գյուտարարական առաջարկությունները ժամանակին քննարկելու և ներդնելու, աշխուժացնելու գիտատեխնիկական ընկերության, հասարակական կոնստրուկտորական բյուրոների գործունեությունը, գիտության և արտադրության աշխատողների կոմպլեքսային բրիգադաների ստեղծագործական համագործակցությունը, կոլեկտիվում ստեղծագործական մթնոլորտի ստեղծմանը:

Վ. Ի. Լենինը արհմիությունների խնդիրն էր համարում «լինել նոր կյանքի կառուցողներ, լինել դաստիարակիչներ միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր նոր մարդկանց, որոնք իրենց փորձով սովորեին սխալներ չանել, դեն շպրտեին հին նախապաշարմունքները, իրենց փորձով սովորեին կառավարել պետությունը և կառավարել արտադրությունը...» (հ. 28, էջ 556—557): ՍՄԿՊ ծրագիրը արհմիություններին մղում է օգնելու աշխատավորությանը՝ մշակելու պետական ու հասարակական գործերը ղեկավարելու նոր մեթոդներ: Արհմիութենական կազմակերպություններն այդ անում են արտադրական ու կենցաղային հարցերի քննարկմանը նվիրված ընդհանուր ժողովներում աշխատավորներին ներգրավելու միջոցով: Սրանք անմիջականորեն կազմակերպում են մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների աշխատանքը: Արհմիության անդամները հասարակական ու պետական գործերի ղեկավարման օգտակար դպրոց են անցնում՝ մասնակցելով բնակարանների շինարարության ու բաշխման վերահսկողությանը, առևտրական և հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի, սոցապահովագրմանն աջակցող հանձնաժողովներին: Պարտկազմակերպությունը պարտավոր է անդադար մտահոգվել, թե կիրառվո՞ւմ են արդյոք այս բոլոր ձևերը, որքա՞ն արդյունավետ են դրանք գործում: Նրանք օգնում են արհմիութենական օրգաններին՝ ստեղծելու համապատասխան հանձնաժողովներ, ընդգրկելու լայն ակտիվ, կարգի գցելու նրանց աշխատանքը, հասնելու այն բանին, որ կոմունիստները ակտիվության օրինակ ցույց տան:

Արհմիությունները մեծ հնարավորություններ ու միջոցներ ունեն դաստիարակչական և կուլտուր-լուսավորական ամենօրյա աշխատանքի ապահովման, ֆիզկուլտուրայի ու սպորտի զարգացման, աշխատավորների հանրակրթական ու կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար: Նրանց տնօրինության տակ են ակումբները, ձեռնարկությունների, սովխոզների ու հիմնարկների կուլտուրայի տներն ու գրադարանները: Նրանք ղեկավարում են ֆիզկուլտ կոլեկտիվները: Բայց պարտկազմակերպությունը մի կողմ չի կանգնած: Նա պատասխանատու է արհմիութենական կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի գաղափարական բովանդակության համար, խորհուրդներ է տալիս այդ աշխատողներին, արհմիության օրգաններին, թե ինչ ուղղությամբ տանել գործը, ինչ անել ազատ ժամանակը ավելի բովանդակալից ու լավ կազմակերպելու, մարդկանց հոգևոր պահանջմունքները բավարարելու համար:

Արհմիությունների կարևորագույն ֆունկցիան է աշխատավորների կենսական շահերի և օրինական իրավունքների պաշտպանությունը: Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը վճռականապես դեմ էր բոլոր նրանց, ովքեր փորձում էին պնդել՝

դե՛, եթե մեր երկրում բուրժուազիա չկա, մեր պետությունը բանվորական է, ուրեմն և աշխատավորները պաշտպանության կարիք չունեն։ Այո՛, ասում էր նա, մեր պետությունը, իրոք, բանվորա-գյուղացիական է, բայց պատահում են և բյուրոկրատական խեղաթյուրումներ և դրանցից պաշտպանելով աշխատավորների նյութական ու հոգեկան շահերը, պրոֆմիութենական կազմակերպությունները պաշտպանում են նաև մեր պետությունը (տե՛ս հ. 32, էջ 8)։

Դրա համար էլ սովետական արհմիություններն օժտված են լայն իրավունքներով ու լիազորություններով։ Նրանք իրականացնում են պետական հսկողություն աշխատանքի օրենսդրության պահպանման համար, և հասարակական վերահսկողություն՝ հանուն աշխատանքի պաշտպանության ու տեխնիկայի անվտանգության։ Եվ խիստ անհրաժեշտ է, որ հանուն սովետական պետության ու աշխատավորների շահերի նրանք օգտվեն իրենց տրված այդ իրավունքներից։

Սա հատկապես կարևոր է ընդգծել այն պատճառով, որ արհմիութենական օրգանները երբեմն ենթարկվում են չափ ու սահմանն անցկացրած վարչարարների, բյուրոկրատացած աշխատողների, երբեմն ոչ ճիշտ դիրք են գրավում աշխատանքային կոնֆլիկտները քննարկելիս։ Պատահում է, որ համաձայնում են աշխատողին վտարել, չնայած այդ բացահայտ անօրինական է։ Պարտկազմակերպությունը չի կարող անտարբեր անցնել նման փաստերի կողքով և, երբ անհրաժեշտ է, պետք է արհմիության ակտիվին ու ադմինիստրացիային ցույց տա նրանց սխալը, զորավիգ լինի արհմիության իրավացի պահանջներին ու գործունեությանը՝ աշխատավորների օրինական շահերի պաշտպանության գործում։

Սակայն բանը միայն այդ չէ։ Պաշտպանել աշխատավորների շահերը, նշանակում է՝ մշտական հոգատարություն ցուցաբերել նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման համար, ակտիվորեն բարձրացնել դրա հետ կապված հարցերը, համառորեն հասնել դրանց լուծմանը։ Եվ այստեղ է, որ արհմիությունն իրավունք ունի հույս դնելու պարտկազմակերպության աջակցության և օգնության վրա։

Որքան մեծ է արհմիության անդամների ակտիվությունը, այնքան արհմիությունն ավելի հաջողությամբ է լուծում իր վրա դրված խնդիրները։ Ակտիվության բարձրացման համար, ինչպես նշվել է դեռևս պարտիայի X համագումարի բանաձևում, նրանք պետք է լինեն այնպիսի կազմակերպություն, որ յուրաքանչյուր ոք դառնա իր միության ընդհանուր կյանքի գիտակից ու ակտիվ մասնակիցը։ Իսկ այդ ամենից լավ կարելի է ապահովել այն դեպքում, երբ արհմիության աշխատանքը հիմնված է արհմիության կյանքի նորմերի խիստ պահպանման, քննադատության և ինքնաքննադատության ծավալման վրա։ Ահա թե ինչու կարևոր է, որ արհմիութենական կազմակերպություններում սիստեմատիկաբար գումարվեն ժողովներ, ուր քննարկվեն արտադրության, աշխատանքի կազմակերպման ու պահպանման, կենցաղային ու կուլտուրական սպասարկման ցավոտ հարցերը, արհմիութենական ու տնտեսական ղեկավարների հաշվետվությունները՝ աշխատավորների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման մասին։

Արհմիությունների գործունեության մակարդակը, մարտունակությունը մեծ մասամբ կախված են կոմունիստներից։ Չէ՛ որ գործարանում կամ սովխոզում պարտիայի անդամները միաժամանակ արհմիության անդամներ են և, ամենից առաջ, կոչված են ուղղություն տալու արհմիության աշխատանքին։ Նորից դի-



մենք պարտիայի X համագումարի որոշումներին։ Այնտեղ նշված է, որ «Մեր պարտիայի այն կես միլիոն անդամների խնդիրը, որոնք տվյալ պահին պրոֆեսիոնալ միությունների անդամ են, այն է, որ նրանք երկարատև, համբերատար ու համառ դաստիարակչական աշխատանքով, անձնական օրինակով, կազմակերպչական ընդունակություններով, տնտեսական հմտությամբ, աշխատավոր մասսաների նյութական ու հոգևոր շահերի մասին հոգ տանելով լիովին մեր պարտիայի կողմը գրավեն տվյալ պահին պրոֆեսիոնալ շարժման մեջ գերակշռող միլիոնավոր անպարտիական բանվորներին» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», 1954 թ., մաս I, էջ 687)։

Արհմիությունում իր ակտիվ աշխատանքով կոմունիստը նպաստում է պարտիայի ու մասսաների կապի ամրապնդմանը։ Այս ավելի քան անհրաժեշտ է ընդգծել, քանի որ որոշ կոմունիստներ երբեմն թերագնահատում են իրենց արհմիութենական կազմակերպությունը, մասերի արանքով են նայում նրա հանձնարարություններին և նույնիսկ ամիսներով անդամավճար չեն մուծում, ժողովներին չեն մասնակցում։ Դա թուլացնում է պարտիական ազդեցությունը կոլեկտիվի վրա։ Պարտկազմակերպությունը միայն այն ժամանակ կարող է հաջողությամբ ուղղություն տալ արհմիութենական կազմակերպության գործունեությանը, մշտապես ներազդել նրա կյանքի բոլոր կողմերի վրա, երբ բոլոր կոմունիստները խորապես համակվեն արհմիության աշխատանքների նկատմամբ պատասխանատվության ոգով, սկսեն ոչ թե խոսքով, այլ գործով կարգավորել այն։

### ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐՆ ՈՒ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ

Մեր պարտիայի ռևոլյուցիոն փառավոր տրադիցիաներից մեկն այն է, որ նա մեծ ուշադրություն է նվիրում երիտասարդ սերնդի դաստիարակությանը, նրա ներգրավմանը նոր հասարակարգի կառուցման համար մղվող ակտիվ պայքարում։ Երիտասարդության հետ տարվող աշխատանքի մասին պարտիայի VIII համագումարի (1919 թ.) բանաձևում ընդգծված է, որ «Երիտասարդության մեջ տարվող կոմունիստական աշխատանքը կարող է հաջող ընթանալ կոմունիզմի դրոշի տակ ընթացող այն ինքնուրույն կազմակերպությունների միջոցով միայն, որոնց մեջ երիտասարդությունը կարող է դրսևորել առավելագույն ինքնուրույնություն, որն անպայման անհրաժեշտ է նրա կոմունիստական դաստիարակության համար» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», 1954 թ., մաս I, էջ 574)։ Այսպիսի կազմակերպություն է կոմերիտմիությունը։ Սոցիալիստական շինարարության բոլոր ժամանակաշրջաններում կոմերիտմիությունը եղել է երիտասարդության մարտական կազմակերպիչը, պարտիայի վստահելի օգնականը՝ աճող սերնդի դաստիարակության խնդրում, նրա բոլոր գործերում։ Մեր ժամանակներում կոմերիտմիության դերն ավելի է մեծանում։ Բայց այդ ինքն իրեն չի լինում։ Կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը, երիտասարդության վրա ունեցած նրանց ազդեցության ուժը, կոլեկտիվի կյանքում նրանց դերի բարձրացումը անառարկելիորեն պայմանավորված են պարտիական ղեկավարության մակարդակով։ Եվ, որպեսզի այդ ղեկավարությունը պատշաճ լինի, կոմունիստները հաշվի են առնում կոմերիտական կազմակերպությունների առանձնահատկությունները։

Երիտասարդությունը լի է անսպառ էներգիայով, գործելու ծարավով։ Բայց պատանիներն ու աղջիկները կյանքի բավարար փորձ, գաղափարական ու աշխատանքային անհրաժեշտ կոփվածք չունեն։ Եվ գլխավորը, որին պետք է ձգտի

հասնել պարտկազմակերպությունը՝ դա երիտասարդության՝ աղբյուրի պես հորդուն էներգիան ժողովրդի շահերին, կոմունիզմի գործին, արտադրության, կրթության, գիտության ու տեխնիկայի, կուլտուրայի ու արվեստի խնդիրներին ծառայեցնելն է, պատանիներին ու աղջիկներին հայրենիքի բարօրության աշխատանքներին, հասարակական-քաղաքական գործունեությանը հաղորդակից դառնալուն օգնելը, հետաքրքրական ու պիտանի աշխատանքներով գրավելը։ Որքան ավելի ակտիվ ընդգրկեն երիտասարդությանը ձեռնարկության, շինարարության, կոլտնտեսության, սովխոզի, հիմնարկի առջև կանգնած խնդիրների լուծման գործում, խրախուսեն նրանց օգտակար նախաձեռնությունները, օգնեն իրագործելու մտահղացումները, այնքան ավելի հեշտությամբ կոմունիստները կհասնեն դրան։

ՍՄԿՊ կանոնադրությունը կոմերիտական կազմակերպություններին նախաձեռնության լայն իրավունք է վերապահում՝ նախապատրաստելու և համապատասխան պարտկազմակերպության քննարկմանը դնելու ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության աշխատանքի հարցերը։ Անհրաժեշտ է այնպես անել, որ նրանք կարողանան լիովին օգտագործել այդ իրավունքը։ Եթե պարտկազմակերպությունը ուշադիր է վերաբերվում կոմերիտականների առաջարկություններին, խորհրդածություններին ու ահազանգերին, ապա դրանով նա զգալի չափով նպաստում է կոմերիտական կազմակերպության նախաձեռնության և ինքնագործունեության զարգացմանը, ընդհանուր գործի հանդեպ պատասխանատվության, կոլեկտիվում նրա դերի բարձրացմանը։

Փորձը ցույց է տալիս, որ երիտասարդությունը, հատկապես հափշտակված, խանդավառված է աշխատում, երբ նրան վստահում են աշխատանքի այնպիսի ինքնուրույն տեղամաս, այնպիսի գործեր, որտեղ նա կարող է լավ դրսևորել իրեն, աչքով տեսնել իր ջանքերի պտուղները։ Այս տեսակետից լիովին արդարացնում են իրենց արտադրության մեջ կոմերիտական-երիտասարդական բրիգադաների և օղակների ստեղծումը, աշխատանքը երիտասարդական կառույցներում, կոմունալ-կենցաղային սպասարկման ձեռնարկություններում, հասարակական հիմունքներով գործող բարի ծառայությունների բյուրոյում, ուսանողական-կոնստրուկտորական բյուրոյում, թատրոններում երիտասարդ դերասանների ուժերով բեմադրվող երիտասարդական ներկայացումները, մասնակցությունը «Կոմերիտական լուսարձակի» գործունեությանը և այլն։ Մոսկվայի դպրոցներից մեկի բարձր դասարանի աղջիկները կոմերիտական կազմակերպության նախաձեռնությամբ հասարակական հիմունքներով մանկապարտեզ են բաց արել, շենք ու կահավորանք ձեռք բերել։ Եվ ամենևին էլ սա երիտասարդության նախաձեռնության, հասարակական օգտակար գործին մասնակցելու միակ օրինակը չէ։

Մի խոսքով, ամենուր կան հետաքրքրական, հրապուրիչ գործեր, որոնցով կարելի է կոմունիզմի ոգով դաստիարակել պատանիներին ու աղջիկներին, նրանց մեջ աշխատասիրություն, պարտքի զգացում սերմանել։ Եվ ովքե՞ր, եթե ոչ կոմունիստները, պետք է հուշեն, թե ինչով զբաղվեն նրանք, իսկ եթե անհրաժեշտ է, դառնան նաև նրանց անմիջական կազմակերպիչները։ Ինչպես Վ. Ի. Լենինն է սովորեցրել, հարկավոր է այնպես տանել գործը՝ «...որ ամեն օր ուզած գյուղում, ուզած քաղաքում երիտասարդությունը գործնականապես լուծի ընդհանուր աշխատանքի այս կամ այն, թեկուզ ամենափոքր, թեկուզ ամենահասարակ խնդիրը» (հ. 31, էջ 335—336)։



Հասկանալի է, դրա համար հարկավոր է համբերատարությամբ սովորեցնել երիտասարդներին, օգնել պատանիներին ու աղջիկներին՝ մասնագիտություն ձեռք բերելու, բարձրացնելու արտադրական որակավորումը, պատվաստել հմտություն ու սեր աշխատանքի, հակում հասարակական գործունեության հանդեպ, դաստիարակել աշխատանքային բանվորական հպարտություն, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության, գիտակցական կարգապահության զգացում։

Պարտիական կազմակերպությունները սովետների, տնտեսական օրգանների, արհմիության և կոմերիտմիության հետ պետք է ամենօրյա հոգատարություն ցուցաբերեն դպրոցներն ավարտող երիտասարդներին աշխատանքի տեղավորելու, նրանց ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում բարձր արտադրողական աշխատանքի նախապատրաստելու ուղղությամբ։ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի (1965 թ.) որոշումների կապակցությամբ հատկապես կարևոր ու մեծ խնդիրներ են ծառանում գյուղական պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների առջև։ Նրանք կոչված են երիտասարդությանն ակտիվորեն ներգրավելու գյուղատնտեսական արտադրության մեջ, հողագործական ու անասնաբուծական մթերքների ավելացման համար մղվող պայքարում։ Պարտկազմակերպությունները պետք է ամեն կերպ բարձրացնեն գյուղական կոմերիտմիության դերը՝ գյուղում տնտեսական, կենցաղային և կուլտուրական հարցերի լուծման գործում։

Երիտասարդության դաստիարակությունը իրոք արդյունավետ է, երբ նրա ամենօրյա աշխատանքը զուգակցվում է գաղափարական-քաղաքական ու բարոյական դաստիարակության հետ։ Եվ կոմունիստներն օգնում են կոմերիտական կազմակերպություններին՝ ծավալելու ու կազմակերպելու մասսայական-քաղաքական աշխատանքը երիտասարդության շրջանում։ Անհրաժեշտ է, ինչպես նշվել է դեռևս պարտիայի XI համագումարի (1922 թ.) որոշումներում, «զանազան կուլտուրական հիմնարկներով միությանը սպասարկելու և երիտասարդության համար հատուկ գրականություն հրատարակելու միջոցով օգնել միության դաստիարակչական աշխատանքին» («ՍՄԿՊ-ն բանաձևերում...», 1954 թ., մաս I, էջ 822)։ Ի՞նչ պետք է նկատի ունենալ երիտասարդության գաղափարական դաստիարակության գործը կազմակերպելիս։

Մեր երիտասարդության զգալի մասը հետաքրքրասեր է ու հարցասեր, հետաքրքրվում է հատկապես քաղաքականությամբ։ Շատ արագ նա արձագանքում է երկրում և արտասահմանում տեղի ունեցող իրադարձություններին, ընդ որում, պատանիներն ու աղջիկներն աշխատում են բոլորովին ինքնուրույն ըմբռնել ժամանակակից իրականության երևույթներն ու պրոցեսները, վերլուծել կյանքում հանդիպած հակասությունները։ Բայց երիտասարդ մարդիկ միշտ չէ, որ կարող են ճիշտ եզրակացությունների հանգել։ Հատկապես այստեղ է անհրաժեշտ պարտկազմակերպության օգնությունը։ Հապա էլ ո՞վ, եթե ոչ ավագ ընկերը կօգնի կոմերիտական կազմակերպությանը՝ պատանիների ու աղջիկների մեջ հետաքրքրասիրություն արթնացնելու մարքս-լենինյան թեորիայի հանդեպ, կազմակերպելու երիտասարդության քաղաքական ուսուցումը։ Պարտկազմակերպությունը մշտապես հոգ է տանում, որ երիտասարդությունը միշտ կողմնորոշվի ներքին ու միջազգային կյանքի իրադարձություններում, ինչպես հարկն է յուրացնի պարտիայի քաղաքականությունը, ճիշտ հասկանա ու գնա-

*հատի զանազան պրոցեսները, շրջապատող իրականության երևույթները։ Նա պահպանում է պատանիներին ու աղջիկներին մեր հասարակության խորթ գաղափարների, հայացքների ու բարքերի ազդեցություններից։*

*Կոմունիստները կարողանում են այդ անել, եթե ուշի-ուշով ուսումնասիրում են երիտասարդության հոգեկան պահանջմունքները, հետաքրքրասիրությունները, չեն հապաղում արձագանքել դրանց։ Պարտկազմակերպությունն այնքան ավելի է գաղափարապես ազդում երիտասարդության, նրա հայացքների ձևավորման վրա, որքան հաճախ են կոմունիստները հանդիպում պատանիներին ու աղջիկներին, որքան սրտակից ու ջերմ են նրանց զրույցները քաղաքականության, առօրյա կյանքի, կենցաղի, բարոյականության հարցերի շուրջ։*

*Պարտիան խորապես շահագրգռված է այն բանում, որ աճող սերունդը ժառանգի ու բազմապատկի սովետական ժողովրդի ռևոլյուցիոն, աշխատանքային, ռազմա-հայրենասիրական հերոսական տրադիցիաները։ Յուրաքանչյուր կոլեկտիվ պետք է լուրջ ուշադրություն նվիրի պատանիներին այդ ոգով դաստիարակելուն։ Մեծ հաջողությամբ կարելի է օգտագործել այնպիսի հետաքրքրական գործուն ձևեր, ինչպես՝ հանդիպումները ռևոլյուցիոն շարժման վետերանների, քաղաքացիական ու հայրենական մեծ պատերազմի մասնակիցների, աշխատանքի հերոսների հետ, պատանի պատմաբան-հետախույզների ակումբը, արշավները՝ դեպի այն վայրերը, ուր մարտեր են մղվել հանուն հայրենիքի և այլն։*

*Պատանեկան տարիներին մարդը ձգտում է ռոմանտիկայի, սխրագործությունների, արկածների։ Պարտկազմակերպության համար բոլորովին էլ նույնը չէ, թե ինչպես և ինչում է այդ արտահայտվում։ Եթե պատանին կամ աղջիկը երազում է գնալ Սիբիր, Հեռավոր Արևելք և մասնակցել դրանց յուրացմանը, աշխատել գեոլոգիական խմբում, հետախուզություններ կատարել Հյուսիսային բևեռում կամ Անտարկտիդայում, գիտական հայտնագործություններ անել, այս ամենը լավ է և նման ձգտումները պետք է ամեն կերպ խրախուսել ու զարգացնել։ Բայց չէ՞ որ երիտասարդ մարդկանց մեջ կան և այնպիսիք, որոնք ռոմանտիկան, հերոսությունը տեսնում են խելառության (ցնորքների) կամ խուլիգանության մեջ։ Կոմունիստները, կյանքի փորձով իմաստնացած ավագ ընկերներն ամենքից լավ կարող են երիտասարդների առջև բանալ առօրյա աշխատանքի, ստեղծագործական ու գիտական հետախուզության, մարդկանց ծառայելու, կոմունիզմի շինարարության պաթոսի ռոմանտիկան։*

*Երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի հաջողությունը մեծ չափով կախված է այդ նպատակով գործադրվող ձևերից։ Եթե այն հասնում է բարոյախոսական ու խրատական քարոզների, ժողովներում երկարաձիգ և ձանձրալի ճառերի, հազիվ թե հնարավոր լինի որևէ շոշափելի արդյունք սպասել։ Այլ բան է, եթե գտնում են կենդանի, ակտիվ, երիտասարդությանը հրապուրելու և խորապես հետաքրքրելու ընդունակ աշխատանքի ձևեր։ Այդ տեսակետից շատ կարևոր է կոմերիտական կազմակերպության որոնումների խրախուսումը։*

*Երիտասարդության հետ տարվող աշխատանքում անթույլատրելի է վերամբարձ տոնը, վարչարարությունը։ Դրանք զայրացնում ու դժգոհություն են հարուցում։ Ուղղություն տալով կոմերիտական կազմակերպության գործունեությանը, անհրաժեշտ են տակտ ու համբերություն, պետք է միշտ փաստարկնե-*



*լով ներազդել, չթելադրել, այլ օգնել՝ հասնելու ճշմարտությանը։ Կոմունիստների խնդիրն է՝ հասնել այն բանին, որ կոմերիտականներն իրենք ճիշտ որոշումներ ընդունեն իրենց գործունեության համար, քննարկման, վերլուծության միջոցով լավ և օգտակար պլաններ կազմեն։ Օգուտ կբերի միայն այն, եթե որևէ հարց քննարկելիս, նախքան վճիռ կայացնելը, կոմերիտականները վիճաբանեն, հայտնեն տարբեր, անգամ սխալ տեսակետներ։ Ասում են, վեճից է ծնվում ճշմարտությունը։ Կարևորը, վերջ ի վերջո, ճիշտ եզրակացության հանգելն է։ Ինչպե՞ս հասնել դրան։ Տեղին է հիշել Ա. Ս. Մակարենկոյին, որը նախազգուշացնում էր ավագ ընկերներին՝ չչարաշահել կոմերիտական ու երիտասարդական ժողովներում ելույթ ունենալու հնարավորությունը և խոսել երբ կարող են ու ինչքան կարող են։ Անհրաժեշտ է վաղօրոք լավ նախապատրաստել ընդհանուր ժողովի ընթացքն ու որոշումները,— հենվելով իր մանկավարժական փորձի վրա՝ նշում էր նա,— կոմերիտական կազմակերպության, ակտիվի, նրա ընտրական օրգանների, առանձին անդամների հետ աշխատելու ճանապարհով» (տե՛ս Ա. Ս. Մակարենկո «Կոմունիստական դաստիարակության մասին», Ուսմանկհրատ, 1956, էջ 126, ռուս.)։ Նման ղեկավարությունը միշտ ավելի գործուն է, քան անառարկելի հրահանգները՝ «Արեք այս և այսպես»։*

*Որոշ պարտկազմակերպություններում ամբողջ ղեկավարության գործունեությունը սահմանափակվում է կոմերիտական կազմակերպության աշխատանքի մասին հաշվետվություններ լսելով ու որոշումներ ընդունելով, չմտածելով, թե ով և ինչպես պետք է կատարի դրանք։ Այսպիսի ձևական մոտեցումը ոչ մի օգուտ չի տալիս։ Պարտիական կազմակերպությունը հաջողության է հասնում այն ժամանակ, երբ ՀամԼԿԵՄ անդամներից և երիտասարդ կոմունիստներից կոմերիտական ղեկավար աշխատանքի է առաջ քաշում պատանիների ու աղջիկների մեջ հեղինակություն վայելող եռանդուն կազմակերպիչների, աճեցնում ու դաստիարակում է նրանց, օգնում՝ դառնալու երիտասարդության իսկական ղեկավարներ։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ճանաչել երիտասարդությանը, համբերատարությամբ սովորեցնել կոմերիտական ակտիվիստներին, համոզիչ խորհուրդներ տալ նրանց, զգուշորեն ուղղել սխալներն ու վրիպումները։ Կադրերի հետ այսպիսի տքնաջան աշխատանքի փոխարեն, որոշ տեղերում կոմերիտականներին ղեկավարելու համար առանձնացնում են մի կոմունիստի, նրա վրա դնելով բոլոր հոգսերն ու երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի ողջ պատասխանատվությունը։ Իհարկե, կարող են լինել դեպքեր, երբ հարկ կլինի հանձնարարել մեկին կամ մի խումբ ընկերների՝ օգնել կարգավորելու կոմերիտական աշխատանքի այս կամ այն կողմը։ Այնուամենայնիվ, երիտասարդության դաստիարակությամբ պետք է զբաղվի ողջ պարտկազմակերպությունը և յուրաքանչյուր կոմունիստ առանձին, խորապես հետաքրքրվի կոմերիտական կազմակերպության գործունեությամբ, օգնի նրան։ Ընդսմին, չի կարելի մոռանալ, որ կոմերիտմիությունը երիտասարդական ինքնագործ կազմակերպություն է։ Ինչպես ցույց է տրված պարտիայի XIV համագումարի «Կոմերիտմիության աշխատանքի մասին» ընդունված բանաձևում, «...Կոմերիտական կազմակերպության ամենօրյա աշխատանքի առանձնահատկություններին ծանոթ լինելը, անհրաժեշտ ընկերական հոգատարությունն ու տակտը ճիշտ ղեկավարության պայմաններն են» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», 1954, մաս II, էջ 302—303)։*

❊❊❊

*Արդյունաբերական ձեռնարկություններում և կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում կարևոր աշխատանք են տանում տեղական սովետների դեպուտատները, դեպուտատական խմբերը: Պարտիական կազմակերպությունները պարտավոր են մշտապես հետաքրքրվել նրանց գործունեությամբ, նրանց կոնկրետ օգնություն ցույց տալ:*

*Կոլեկտիվներում կան այնպիսի աշխատավորական միավորումների սկզբնական կազմակերպություններ, ինչպիսիք են՝ ԴՕՍԱԱՖ, «Գիտելիք» ընկերություն, կարմիր խաչի ու կարմիր կիսալուսնի ընկերությունների միություն, կամավոր սպորտային ընկերություններ, արտասահմանյան երկրների հետ բարեկամության ընկերություններ և այլն: Պարտկազմակերպությունը ուղղություն է տալիս և կոորդինացնում նրանց ջանքերը, օգնում նրանց՝ որքան կարելի է լավ կատարելու իրենց ֆունկցիաները:*

*Աշխատավորների նման միությունների և պարտկազմակերպության փոխհարաբերությունների հիմքում ընկած են վերոհիշյալ սկզբունքները: Պարտիական ղեկավարությունը պետք է բազմակողմանիորեն աջակցի այն մեծ հանրօգուտ աշխատանքին, որ կատարում են աշխատավորների մասսայական միությունները յուրաքանչյուր կոլեկտիվում: Կարևոր է, օրինակ, որ ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունները, կամավոր սպորտային ընկերությունները ավելի ակտիվ օգնեն պարտկազմակերպությանը՝ մասսաներին հայրենասիրության ոգով դաստիարակելու, ֆիզկուլտուրային մասսայական շարժում ծավալելու գործում: Կամ վերցնենք բնության պաշտպանության ու կանաչապատման ընկերությունը: Գործի ճիշտ դրվածքի դեպքում այն կարող է մեծ դեր խաղալ մեր մարդկանց աշխատանքի ու կենսապայմանների բարելավման ասպարեզում: Մի խոսքով, յուրաքանչյուր հասարակական կազմակերպություն, ամեն մի հասարակական միավորում, աշխատավորների ստեղծագործության միություն՝ լինի դա կարմիր խաչի կամ «Գիտելիք» ընկերության և այլն, պետք է իր լուման դնի մասսաների հասարակական ակտիվության և ինքնագործունեության զարգացման, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պահանջների ոգով նրանց դաստիարակելու գործում:*

## ՀԱՄԱՌՈՏ ՄԵԹՈԴԱԿԱՆ ԽՈՐ ՀՈՒՐԴՆԵՐ

Այս թեման բացահայտում է պարտիական կազմակերպության՝ որպես կոլեկտիվի միջուկի հարաբերությունը աշխատավորների բազմաթիվ այլ հասարակական կազմակերպությունների ու միավորումների նկատմամբ, որոնք գոյություն ունեն յուրաքանչյուր ձեռնարկությունում, հիմնարկում: Նախորդ թեմաների մասին պարապմունքները կարծես արդեն նախապատրաստել են ունկնդրին այս նոր ու կարևոր խնդրի ուսումնասիրմանը: Իրոք, պարտիական աշխատանքի հարցերի քննարկումը կոլեկտիվում լրիվ, ամբողջական չէր լինի, եթե մեր ուշադրությունը չկենտրոնացնեինք այն բանի վրա, որ կոլեկտիվի կյանքը՝ այդ կյանքն է նաև այնտեղ գործող զանազան հասարակական կազմակերպությունների: Հերթական զրույցից ունկնդիրները խորապես ըմբռնում են, թե ինչ է ընկած պարտկազմակերպության և այլ հասարակական կազմակերպությունների հարաբերությունների հիմքում, թե նրանց օգնությամբ ինչպես է զարգանում ու ամրապնդվում պարտիայի կապը մասսաների հետ:



Անհրաժեշտ է իմանալ, որ աշխատավորների հասարակական կազմակերպությունների պարտիական ղեկավարությունը՝ այդ կոմունիստական հասարակական հարաբերությունների կառուցման ու զարգացման արմատական պրոբլեմներից մեկն է: Զրույցի համար կարելի է ընտրել հետևյալ կոնկրետ հարցերը.

1. Ի՞նչ է պարտավորեցնում յուրաքանչյուր պարտկազմակերպություն նրա ավանգարդային դերը կոլեկտիվում: Ինչ նշանակություն ունեն աշխատավորների մասսայական կազմակերպությունները մեր ողջ հասարակարգի զարգացման համար և յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում՝ մասնավորապես: 2. Աշխատավորների մասսայական կազմակերպությունների պարտիական ղեկավարության կարևորագույն սկզբունքները: 3. Պարտկազմակերպությունը և արհմիությունը: Բնորոշը ձեր արհմիութենական կազմակերպության ներկա գործունեության մեջ: 4. Կոմերիտական կազմակերպություններում պարտիական ղեկավարության առանձնահատկությունները: Ձեր ձեռնարկության (հիմնարկության) պարտիական կազմակերպությունը ի՞նչ ձևով ու մեթոդներով է ազդում կոմերիտական կազմակերպության աշխատանքի վրա:

Պետք է նկատի ունենալ, որ այս հարցի ուսումնասիրությունը արդյունավետ կլինի, եթե ունկնդիրները, պրոպագանդիստի ներածական խոսքից, հիմնական աղբյուրներին ծանոթանալուց հետո իրենց կամ իրենց շրջանի (քաղաքի) այլ կոլեկտիվների օրինակով կարողանան վերլուծել պարտկազմակերպության և այլ հասարակական կազմակերպությունների փոխհարաբերությունների առօրյա, կենդանի փորձը: Զրույցին նախապատրաստվելիս, ինչպես նախորդ պարապմունքներին, այս անգամ էլ նպատակահարմար է դիմել պրակտիկ առաջադրանքի մեթոդին: Ունկնդիրներից մեկին կարելի էր հանձնարարել ծանոթանալ արհմիության հարցերի շուրջ իր պարտկազմակերպության որոշումներին: Մեկ ուրիշը կարող էր հետևել, թե տեղական մամուլը ինչպես է լուսաբանում կոմերիտմիությունում պարտիական ղեկավարության պրոբլեմները: Երրորդին կարող էր հետաքրքրել օրինակ, այս թեման՝ ինչ չափով է հաջողվում պարտիական կազմակերպությանը կոլեկտիվում գոյություն ունեցող հասարակական կազմակերպությունների վրա ազդել այնպես, որ դրանցից ոչ մեկը դուրս չմնա կոմունիստների տեսադաշտից: Բնական է, նախքան պրակտիկ առաջադրանքներ հանձնարարելը, պետք է խորհրդակցել համապատասխան կազմակերպության ղեկավարների ու ամենից առաջ՝ պարտբյուրոյի (պարտկոմի) հետ:

Բայց, ինչպես վերը նշվեց, անհրաժեշտ է սկսել հիմնական գրականության և, ամենից առաջ, Լենինի աշխատությունների, ինչպես նաև անհրաժեշտ պարտիական փաստաթղթերի ուսումնասիրությունից: Լավ կլիներ, եթե ունկնդիրները պլանում ծրագրված յուրաքանչյուր հարցի վերաբերյալ իրենց տետրերում (բլոկնոտներում) կարդացած հոդվածից, թերթից կամ գրքից գրառումներ անեին: Այդ կհեշտացներ զրույցի նախապատրաստումը: Այս խորհրդի իմաստը պարզելու համար ցույց տանք դրա պրակտիկ նպատակահարմարությունը: Հանձնարարված գրականության մեջ ունկնդիրը կհանդիպի մի շարք աշխատությունների (եթե ելնենք միայն վերնագրերից), որոնք նվիրված են միայն արհմիություններին կամ կոմերիտմիությանը: Սակայն ճիշտ չէր լինի կարծել, որ գործը հենց դրանով էլ ավարտվում է: Ո՛չ: Ստորև հանձնարարվող Լենինի աշխատություններում կան շատ արժեքավոր ասույթներ, որոնք, ըստ էության, հնարավորություն են տալիս պարզ պատկերացում կազմելու քննարկվող բոլոր հարցերի մասին:

Հիմնական գրականությունն ըստ թեմայի.

Վ. Ի. Լենին.— «Պրոֆեսիոնալ միությունների, ընթացիկ մոմենտի և Տրոցկու սխալների մասին» (Երկեր, հ. 32, էջ 1—4):

«Պրոֆմիությունների դերի ու խնդիրների մասին նոր տնտեսական քաղաքականության պայմաններում» (Երկեր, հ. 33, էջ 211—214): «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», § 6. Պե՞տք է արդյոք ռևոլյուցիոներներն աշխատեն ռեակցիոն պրոֆմիությունում (Երկեր, հ. 31, էջ

40—42): «Երիտասարդության միությունների խնդիրները» (Երկեր, հ. 31, էջ 343—366):

ՍՄԿՊ ծրագիր, II մաս, III բաժին, § 2, ՍՄԿՊ կանոնադրությունը՝ V, VII բաժիններ:

ՍՍՌՄ արհմիությունների աշխատանքի մասին: ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թ. դեկտեմբերի 17-ի պլենումի որոշումը «Պարտիական աշխատողի տեղեկատու» (2-րդ պրակ, Պետհրատ, 1959, էջ 140—153): Սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի տեղեկատու (III բաժին, Հաղհրատ, 1964, էջ 124—148):

Թեմայի վերաբերյալ ժամանակակից նյութեր են պարունակում հետևյալ հոդվածները՝ Մ. Խալդեև «Երիտասարդությանը դաստիարակել ռևոլյուցիոն գաղափարների ոգով», «Правда», 28 նոյեմբերի, 1965 թ., Բ. Պաստուխով «Երիտասարդության դաստիարակությունը ուշադրության կենտրոնում, «Партийная жизнь» ամսագիր, № 16, 1965 թ., էջ 8—14:

*Նոր հնգամյա պլանը կոչված է ապահովելու մեր հասարակության նշանակալի առաջընթացը կոմունիստական շինարարության ուղիով, նյութատեխնիկական բազայի հետագա կարգացումը, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը: Պարտիան հնգամյակի գլխավոր տնտեսական խնդիրն է համարում գիտության ու տեխնիկայի նվաճումների լուռ ամենալայնի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ կարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերության հետագա նշանակալի աճ, գյուղատնտեսության կարգացման արագ ու կայուն տեմպեր և դրա շնորհիվ էապես բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, ավելի լրիվ բավարարել բոլոր սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները:*

*Հնգամյա պլանի առաջադրանքները պետք է խարսխվեն սոցիալիստական հասարակության գիտականորեն հիմնավորված պահանջմունքների վրա, արտադրական ռեսուրսների և ռեզերվների օբյեկտիվ գնահատման վրա, որոշեն ժողովրդական տնտեսության առավել արդյունավետ կարգացման ուղիները:*

*ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1966—1970 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ՝ ՍՄԿՊ XXIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ*



## ԲՌՆԵԼ ԿՅԱՆՔԻ ԶԱՐԿԵՐԱԿԸ

*«Շատ բանի մասին ես խորհում ՍՄԿՊ XXIII համագումարի նախօրյակին: Ամենից առաջ, իհարկե, մեր հայրենիքի գործերի և հոգսերի, պարտիական կազմակերպությունների դերի մասին, այն մեծ պատասխանատվության մասին, որ ընկած է մեզնից յուրաքանչյուրի վրա, ում պատիվ է վիճակվել կրելու կոմունիստի բարձր կոչումը»: Մոսկվայի «Կրասնի պրոլետարի» գործարանի հյուսն, կոմունիստ Մ. Կուզմինի այս սրտաբուխ խոսքերը, որ նա գրել է «Правда»-ում վերջերս հրապարակված իր հոդվածում, արտահայտում են մեր բոլորի նախահամագումարյան ապրումներն ու մտահղացումները:*

*Սովետական Միության կոմունիստական պարտիայի յուրաքանչյուր համագումար պարտիայի պայքարի և հաղթանակի նոր ուղենիշ է, կապված սովետական հասարակարգի զարգացման որոշակի էտապի հետ: Դրա համար էլ, ինչպես ամենուրեք, մեր շրջանի պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստներն ու աշխատավորները նոր հաջողություններով են դիմավորում երկրի կյանքում տեղի ունեցող այդ պատմական իրադարձությունը: Շրջանի աշխատավորությունը յոթնամյակի առաջադրանքները կատարել է ժամկետից շուտ՝ 1965 թվականի հոկտեմբերի 20-ին. 7 տարվա ընթացքում հայրենիքին տվել է 22 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք: Յոթնամյակի վերջին տարում շրջանի արդյունաբերությունը համախառն արտադրանքի պլանը կատարել է 106,5, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 105,4 տոկոսով, ապրանքային արտադրանքի ինքնարժեքն իջեցրել է 6.761 հազար ռուբլով և այլն:*

*Շրջանի աշխատավորներն այդ հաջողությունները ձեռք են բերել պարտիական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ ու օգնությամբ, բոլոր կոմունիստների համառ պայքարով ու ջանքերով: Անդադրում մաքառելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, կոմունիստներն ընթացել են ավանգարդում, իրենց շարքերը համալրել արտադրության առաջավորներով, գիտության ու կուլտուրայի նշանավոր մարդկանցով: Նրանք այժմ ՍՄԿՊ XXIII համագումարն են գնում միաձույլ շարքերով՝ սերտորեն համախմբված պարտիայի լենինյան Կենտկոմի շուրջը:*

*Պարտիայի XXII համագումարից հետո անցած ժամանակամիջոցում նշանակալից փոփոխություններ են կատարվել մեր պարտիական կազմակերպություններում. զգալիորեն բարելավվել է շրջկոմի և սկզբնական պարտկազմակերպությունների աշխատանքը: Անհամեմատ պակասել է խորհրդակցությունների թիվը, ամրապնդվել շրջկոմի և սկզբնական պարտկազմակերպություն-*

ների կապը։ Այժմ շրջկոմը և պարտկազմակերպություններն ավելի լավ են աշխատում ղեկավար կադրերի հետ, անհամեմատ ճիշտ են կատարում նրանց ընտրությունն ու տեղաբաշխումը։

Պարտիական կազմակերպական աշխատանքի բարելավման գործում հատկապես զգալի հաջողությունների են հասել շրջանի էլեկտրալամպերի, գործիքաշինական գործարանների, Արաբկիրի կահույքի, Լիսինյանի անվան տեքստիլ գալանտերեայի ֆաբրիկաների, № 76 դպրոցի, ֆիզիոլոգիայի ինստիտուտի և մի շարք այլ ձեռնարկությունների և հիմնարկությունների սկզբնական պարտկազմակերպությունները։

Կենսագործելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան, 1965 թվականի մարտյան և սեպտեմբերյան պլենումների որոշումները՝ 26 կոմիսարների պարտշրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրել պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի բարելավմանը։

Պարտշրջկոմը պլանաչափ աշխատանք է կազմակերպել սկզբնական և արտադրամասային կազմակերպությունների քարտուղարների, նրանց տեղակալների, պարտկոմների և պարտբյուրոների անդամների, պարտիական խմբերի կազմակերպիչների հետ, որոնց թիվը մեզ մոտ 1200-ից ավելի է։ Վերջին երկու տարվա ընթացքում սկզբնական պարտկազմակերպության քարտուղարների համար պարտշրջկոմը կազմակերպել է 18 սեմինար պարապմունք։ Սեմինարներում քննարկվել են ներպարտիական աշխատանքի մոտ 30 հարց. «Պարտիայի որակական կազմի մասին», «Ընդունելության գործը պետք է կազմակերպել», «ՍՄԿՊ-ի անդամի իրավունքներն ու պարտականությունները», «Ինչպես կազմակերպել օգնությունն ու ղեկավարությունը արտադրամասային կազմակերպություններին» և այլ թեմաներ։

Սեմինար պարապմունքներում ընդհանրացվում է լավագույն պարտիական աշխատանքի փորձը, այնուհետև այն տարածվում սկզբնական կազմակերպություններում։ Սեմինարների մասնակիցներին շատ բան են տվել, օրինակ, էլեկտրալամպերի գործարանի և Երարդշին տրեստի պարտկոմների քարտուղարների զեկուցումները՝ իրենց կազմակերպությունների աշխատանքի փորձի մասին։

Բացի սեմինար պարապմունքներից, պարտշրջկոմի բաժինները պարբերաբար կազմակերպում են համանման ձեռնարկությունների և հիմնարկությունների պարտկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություններ, ուր նրանք մտքերի փոխանակություն են կատարում իրենց աշխատանքի փորձի մասին, ծանոթանում, թե ինչ ձևերով ու մեթոդներով է լուծվում այս կամ այն հարցը։ Այդ խորհրդակցությունների առավելությունն այն է, որ դրանց միջոցով շրջկոմը և նրա աշխատողները կարողանում են շերտավորված մոտեցում ցուցաբերել պարտիական կազմակերպությունների նկատմամբ, ժամանակին արձագանքել նրանց բարձրացրած հարցերին և լայնորեն տարածել պարտիական աշխատանքի դրական փորձը։

Սեմինար պարապմունքներն ու խորհրդակցությունները մեծ չափով օգնում են պարտկազմակերպությունների քարտուղարներին, սակայն դրանցով չի սահմանափակվում նրանց հետ տարվող աշխատանքը։ Արդյունավետ են շրջկոմի հրահանգիչների հանդիպումները պարտկազմակերպությունների քարտուղարների հետ։ Հրահանգիչը պարբերաբար լինում է սկզբնական պարտ-



կազմակերպությունում, ծանոթանում նրա գործունեությանը, օգնում պարտկազմակերպության քարտուղարին՝ նրա պրակտիկ աշխատանքում, զրուցում կոմունիստների հետ, պատասխանում նրանց հուզող հարցերին։

Մենք պարտկազմակերպությունների քարտուղարների հետ տարվող աշխատանքի այս մեթոդը լայնորեն կկիրառենք առաջիկայում ևս, բարձրացնելով հրահանգչի պատասխանատվությունը սկզբնական պարտկազմակերպությունների գործերի համար։

Սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների գաղափարական ու կուլտուրական մակարդակի բարձրացման նպատակով շրջկոմը պարբերաբար կազմակերպում է քաղաքական թեմաներով զեկուցումներ ու դասախոսություններ, նրանց մասնակից դարձնում շրջկոմի աշխատանքներին, բյուրոյում և պլենումում քննարկվող հարցերի նախապատրաստմանը։ Այդ հնարավորություն է տալիս մոտիկից ճանաչելու յուրաքանչյուր քարտուղարի, ծանոթանալու նրա գործնական հատկություններին (որն անհրաժեշտ է պարտիական ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ)։

Պարտիական կազմակերպություններին և նրանց քարտուղարներին օգնում են նաև շրջկոմի անդամները, պարտիական ակտիվը։ Այժմ պարտշրջկոմի կազմբաժնին կից գործում է երկու հանձնաժողով՝ 18 անդամով և 7 արտահաստիքային հրահանգիչ։ ՍՄԿՊ շարքերն ընդունվողների և կոմունիստների անձնական գործերի նախնական քննարկման հանձնաժողովը (նախագահ ընկ. Գ. Կարապետյան), մեծ օգնություն է ցույց տալիս շրջկոմին և սկզբնական պարտկազմակերպություններին։ Հանձնաժողովը երկու տարվա ընթացքում շրջկոմի բյուրոյի նիստում քննարկելու համար նախապատրաստել է 1200 ընդունելության և 215 անձնական գործեր և գրեթե բոլորի վերաբերյալ տվել ճիշտ եզրակացություններ, որոնք հաստատվել են շրջկոմի բյուրոյի կողմից։

Պարտիական հանձնարարությունները մեծ եռանդով ու բարեխղճությամբ են կատարում շրջկոմի արտահաստիքային հրահանգիչներ Կ. Գասպարյանը, Է. Սահակյանը, Ա. Մաթևոսյանը և ուրիշներ։ Նրանցից յուրաքանչյուրը 5—8 անգամ մասնակցել է շրջկոմի բյուրոյի նիստում քննարկված հարցերի նախապատրաստմանը և դրանով իսկ զգալի օգնություն ցույց տվել կազմբաժնին։

Լավ կազմակերպելով պարտկազմակերպությունների քարտուղարների ուսուցումն ու հրահանգավորումը, շրջկոմը հասել է շատ կազմակերպությունների գործունեության բարելավմանը և նրանց աշխատանքում եղած թերությունների վերացմանը։

Պարտշրջկոմը և շատ սկզբնական պարտկազմակերպություններ ամենօրյա ուշադրություն են նվիրում պարտիայի շարքերի աճին և երիտասարդ կոմունիստների հետ տարվող դաստիարակչական աշխատանքին։ Անցած երկու տարում շրջանում ՍՄԿՊ-ի անդամ են ընդունվել 553, անդամության թեկնածու՝ 543 հոգի։

Պարտիայի անդամների և թեկնածուների ընդունելության գործում Խարկովի մարզի պարտկազմակերպություններում եղած սխալների մասին ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը ժամանակին քննարկվել է մեր բոլոր պարտկազմակերպություններում։ Շրջանի կոմունիստները ամենուրեք միահամուռ հավանություն տալով այդ որոշմանը, պատրաստակամություն հայտնեցին անշեղ առաջնորդվելու Կենտկոմի ցուցումներով։ Պարտիայի շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործը հատկապես լավ է կազ-

մակերպված էլեկտրալամպերի, էլեկտրաճշգրիտ չափիչ գործիքների գործարանների, Լիսինյանի անվան ֆաբրիկայի և այլ պարտկազմակերպություններում: Այդ ձեռնարկություններում աշխատող բազմաթիվ երիտասարդ կոմունիստներ առանց արտադրությունից կտրվելու սովորում են բարձրագույն ուսումնական հաստատությունների և տեխնիկումների հեռակա բաժիններում: Բարձրացնելով իրենց արտադրական որակավորումը, նրանցից շատերը շարքային բանվորից դարձել են արտադրամասերի վարպետներ, պետեր, ինժեներներ և ակտիվ մասնակցում են արտադրական կոլեկտիվների հասարակական կյանքին:

Խոսելով պարտիայի մեջ ընդունելության և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի մասին, չպետք է մոռանալ ներպարտիական աշխատանքի այդ կարևոր տեղամասում եղած լուրջ թերությունները: Այսպես՝ չնայած մեծ հնարավորություններին, ավտոբեռնիչների գործարանի պարտկազմակերպությունն անցած 4 տարում ոչ մի մարդ չի ընդունել պարտիայի մեջ, մինչդեռ գործարանի կոլեկտիվն իր արտադրական ցուցանիշներով հայտնի է նույնիսկ ռեսպուբլիկայի սահմաններից դուրս: Այստեղ աշխատում են բազմաթիվ առաջավոր բանվորներ, բանիմաց ինժեներներ ու տեխնիկներ, որոնք արժանի են պարտիայի անդամության: Ավտոբեռնիչների գործարանի պարտկազմակերպության աշխատանքի այդ լուրջ բացի համար մեղավոր են ո՛չ միայն պարտբյուրոյի նախկին քարտուղարներ Վ. Աղաբաբյանը և Տ. Դիլոշյանը, ներկայիս քարտուղար Մ. Մամյանը, այլև մենք՝ պարտշրջկոմի ղեկավարներն ու աշխատողները:

Կան նաև այլ թերություններ: Առանձին պարտկազմակերպություններում ՍՄԿՊ-ի շարքերն ընդունելություն կատարելիս, թույլ են տալիս պարտիայի կանոնադրության խախտումներ: Գրեթե բոլոր դիմում տվողներն ընդունվել են պարտիայի շարքերը: Նախապես չեն ուսումնասիրվել նրանց անձնական հատկանիշները: № 3 շինարարական տրեստի պարտիական կազմակերպությունը ՍՄԿՊ անդամության թեկնածու է ընդունել ոմն Ռիդ Մեսրոպյանի, որը մի քանի տարի առաջ վտարվել էր պարտիայից՝ հանցագործության ու կեղծիքի համար:

Երբեմն պարտկազմակերպություններն այս կամ այն աշխատողին ընդունելով պարտիայի անդամության թեկնածու, իրենց անելիքները համարում են ավարտված, թեկնածուին պարտիական հանձնարարություններ չեն տալիս, չեն օգնում նրա քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացմանը: Եվ այսպես, թեկնածուի համար սահմանված ստաժի ժամկետն անցնում է ապարդյուն, մարդը պատրաստ չի լինում պարտիայի անդամ ընդունվելու: Ահա թե ինչու հաճախ պարտշրջկոմը մերժում է այս կամ այն ընկերոջը ընդունել պարտիայի շարքերը: Անցած երկու տարում, օրինակ, շրջկոմը չի հաստատել 46 պարտիայի անդամության թեկնածու և 16 պարտիայի անդամ ընդունելու մասին սկզբնական պարտկազմակերպությունների որոշումները: Կան նաև այնպիսի փաստեր, երբ սկզբնական պարտկազմակերպությունը ժամանակին չի քննարկում պարտիայի անդամության թեկնածուներին պարտանդամ ընդունելու հարցը, որի հետևանքով ավելանում է ժամկետանց թեկնածուների թիվը:

Պարտշրջկոմը ուշի-ուշով հետևում և վերահսկում է սկզբնական պարտկազմակերպությունների գործունեությանը, պաշտպանում ու խրախուսում



նրանց լավ նախաձեռնությունները, ժամանակին շտկում սխալները: Սկզբնական պարտկազմակերպություններն էլ չպետք է զլանան իրենց աջակցությունը ստորին պարտկազմակերպություններին: Մենք միաժամանակ հետևում ենք, որպեսզի խոշոր սկզբնական պարտկազմակերպությունների կոմիտեները սիստեմատիկ օգնություն ցույց տան արտադրամասային պարտկազմակերպություններին ու պարտիական խմբերին: Այդ կապակցությամբ խրախուսելի է էլեկտրալամպերի գործարանի պարտիական կոմիտեի (քարտուղար Ա. Գուրունյան) աշխատանքը: Պարտկոմիտեն հաճախակի անց է կացնում արտադրամասային պարտկազմակերպությունների, պարտբյուրոների անդամների, պրոպագանդիստների և ագիտատորների սեմինար պարապմունքներ: Պարտկոմիտեն վերահսկում, ուղղություն է տալիս արտադրամասային պարտկազմակերպությունների գործունեությանը, պաշտպանում նրանց նախաձեռնությունները, տարածում աշխատանքի նոր ձևերն ու մեթոդները:

Գործարանի նորմալ լուսավորման լամպերի հավաքման տեղամասի սկզբնական պարտկազմակերպությունը վերջերս նախապատրաստել և անց է կացրել վարպետների հավաք, ուր հրավիրվել են նաև հարևան տեղամասերի վարպետները: Հավաքում քննարկվել է արտադրանքի որակի բարձրացման հարցը: Հատուկ կոչ է ուղղվել գործարանի բոլոր արտադրամասերի վարպետներին՝ սոցիալիստական լայն մրցություն ծավալելու արտադրանքի որակը բարձրացնելու համար:

Պարտկոմիտեի տեսադաշտից չվրիպեց տեղամասի սկզբնական կազմակերպության այս նախաձեռնությունը: Հավանություն տվեց հավաքի արդյունքներին և գործարանի բոլոր կազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց արտադրանքի որակի բարձրացման համար լայնորեն ծավալված պայքարի վրա:

Այնուհետև պարտկոմիտեի նիստում նորմալ լուսավորման լամպերի հավաքման տեղամասի առաջավոր վարպետ Վ. Արզումանյանը և երիտասարդ վարպետ Վ. Պողոսյանը պատմեցին իրենց աշխատանքի մասին, կոնկրետ միջոցներ նշեցին վարպետների հետ տարվող դաստիարակչական աշխատանքն ավելի ուժեղացնելու, նրանցից լավագույնների փորձը տարածելու համար:

Պարտկոմիտեի և սկզբնական պարտկազմակերպությունների միջոցառումները տվեցին իրենց արդյունքները: Այժմ էլեկտրալամպերի գործարանի գրեթե բոլոր վարպետներն ընդգրկված են քաղաքական, տեխնիկական և տնտեսագիտական ուսուցման տարբեր խմբակներում, 57 վարպետ ավարտել են վեցամսյա հատուկ դասընթացներ, իսկ վարպետներ՝ Վ. Սնապյանը, Վ. Գասպարյանը, Կ. Ղազարյանը, Հ. Մովսիսյանը և ուրիշներ անցյալ տարի ավարտել են Երևանի էլեկտրամեխանիկական տեխնիկումը և դարձել լիարժեք մասնագետներ: Պարտիական կազմակերպություններն առավել պատրաստված վարպետներին մասնակից են դարձրել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքներին:

Պարտիական-կազմակերպական աշխատանքը բազմակողմանի է ու բազմաբովանդակ, որի նպատակն է բարձրացնել կոմունիստների և ամբողջ պարտկազմակերպության մարտունակությունը: Սակայն այդ ցանկալի արդյունք է տալիս միայն այն դեպքում, երբ կոնկրետ է, նպատակասլաց ու մոբիլիզացնող: Ուստի, պարտիական կոմիտեի առաջնահերթ խնդիրն է՝ մշտապես ունկնդրել պարտիական կազմակերպությունների կյանքի զարկերակին,

ժամանակին վերլուծել պարտիական աշխատանքի բազմապիսի երևույթներն ու փոփոխությունները, ժամանակին արձագանքել դրանց։

Արտադրական օդափոխության Երևանի վարչության կազմակերպությունում սովորական երևույթ էին պարտիական և աշխատանքային կարգապահության խախտումները՝ պարտիական անդամավճարները ժամանակին չմուծելը, պարտժողովներին անկանոն հաճախելը, հանձնարարված գործի նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքը և այլն։ Պարտշրջկոմի աշխատողները խորամուխ եղան այդ երևույթների մեջ։ Որոշվեց ամրապնդել կազմակերպության ղեկավարությունը։ Շրջկոմի օգնությամբ կազմակերպության բյուրոյի կազմում ընտրվեցին գործիմաց, փորձ ունեցող կոմունիստներ։

Ընդամենը մեկուկես տարի է անցել դրանից, սակայն այդ, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում բյուրոն կարողացել է բարելավել պարտիական-կազմակերպական աշխատանքը. բարձրացրել է պետական և պարտիական կարգապահությունը, կոմունիստները տեղաբաշխվել են արտադրության հիմնական օղակներում, նրանք առաջատար դեր են կատարում արտադրության մեջ, ակտիվ մասնակցում հասարակական աշխատանքներին։ Վարչության կոլեկտիվի անդամներից շատերը ձգտում են ընդօրինակել կոմունիստներին՝ բարեխղճորեն կատարել իրենց պարտականությունները։ Բարձրացել է պարտկազմակերպության և կոմունիստների հեղինակությունը կոլեկտիվում։ Շատ աշխատողներ ձգտում են մտնել լենինյան պարտիայի շարքերը։ Մեկուկես տարում կոմունիստների թիվն այստեղ 13-ից հասել է 28-ի։

Պարտիական-կազմակերպական աշխատանքի բարելավումը դրական ազդեցություն է ունեցել տնտեսական գործերի վրա։ Արտադրական օդափոխության Երևանի վարչությունն իր ստեղծման օրից մինչև 1964 թվականի վերջը երբեք չի կատարել պլանները, իսկ այժմ դարձել է այդ սիստեմի առաջավոր վարչություններից մեկը։

ՍՄԿՊ Կենտկոմը պահանջում է բարելավել պարտիական-կազմակերպական աշխատանքը, բարձրացնել պահանջկոտությունը կադրերի, բոլոր կոմունիստների նկատմամբ. ժամանակին բացահայտել, օբյեկտիվորեն քննադատել ու վերացնել աշխատանքում եղած թերությունները. հոգատարությամբ ուղղել ու դաստիարակել մարդկանց։ Հասկանալի է, որ ազնիվ ու շիտակ քննադատությունը, բացահայտված թերությունները ժամանակին ու արագ վերացնելը բարձրացնում են պարտկազմակերպությունների հեղինակությունը մասսաների աչքում, ավելի ակնհայտ դարձնում նրանց՝ որպես կոլեկտիվի քաղաքական ղեկավարի ներգործուն ուժը։

Բայց, դժբախտաբար, առանձին կազմակերպություններում երբեմն մոռացության է տրվում ՍՄԿՊ Կենտկոմի այդ պահանջը, և որոշ խնդիրներ օբյեկտիվ չեն քննարկվում ու լուծվում։ Մարդկանց նկատմամբ հոգատարությունը երբեմն փոխարինվում է հանցագործի նկատմամբ ներողամտությամբ, որը վնասում է կոմունիստների և ամբողջ կոլեկտիվի դաստիարակությանը, ապակողմնորոշում մարդկանց՝ հասարակական չարիքների դեմ մղվող պայքարում։ Հենց այդպիսի մի դեպք էր պատահել ժամացույցի գործարանում։ Պարտանդամ Լ. Կարապետյանը դիմել էր գործարանի պարտբյուրոյին, ահազանգելով, որ պատման արտադրամասի վարպետ Վ. Գրիգորյանը զբաղվել է դրամաշորթությամբ՝ արտադրամասի մի ամբողջ բրիգադայից սիստեմատիկաբար դրամ հավաքելով։ Իսկ արտադրամասի պետ և գործարանի պարտբյու-



րոյի անդամ Ն. Պետրոսյանը կամ չի նկատել կամ ձևացրել է, որ չի նկատում Վ. Գրիգորյանի անվայել արարքը, արտադրամասում տեղի ունեցող ֆինանսական կարգապահության խախտումները, հավելագրման փաստերը և այլն։

Քննարկելով այդ հարցը, բայց չխորանալով դրա էության մեջ ու փորձելով պահպանել բյուրոյի անդամի կեղծ հեղինակությունը, ժամացույցի գործարանի պարտբյուրոն ամբողջ մեղքը բարդել է ընկ. Լ. Կարապետյանի վրա, իսկ արտադրամասի պետին, պարտկազմակերպության քարտուղարին և մյուս իսկական մեղավորներին միայն նախազգուշացում է արել։ Գործարանի ընդհանուր պարտժողովը, չխորանալով հարցի էության մեջ, հաստատում է պարտբյուրոյի նման որոշումը։

Այս բացարձակ անարդարությունն օրինական տարակուսանք էր առաջացրել գործարանի բազմամարդ կոլեկտիվում. մի՞թե կարելի էր ներել արտադրամասի պետի արարքը, մի՞թե կոմունիստ Լ. Կարապետյանը հանցանք է գործել, ահազանգելով պարտբյուրոյին պատման արտադրամասում կատարվող վատ դեպքերի մասին։ Պարտիայի շրջկոմը միջամտեց այդ գործին. փոխվեց արտադրամասի ղեկավարությունը, մեղավորները խիստ պատասխանատվության ենթարկվեցին։

Ժամացույցի գործարանի պարտկազմակերպությունը հավանություն տվեց պարտշրջկոմի միջոցառումներին, դատապարտեց իր սեփական սխալը։

Այսպիսով, շրջկոմի ակտիվ միջամտությամբ ուղղվեց սխալը, հաղթանակեց ճշմարտությունը։ Սակայն ժամացույցի գործարանի պարտկազմակերպությունում տեղի ունեցած վերոհիշյալ դեպքը խորհրդածությունների առիթ է տալիս. ինչո՞ւ որոշ ընկերներ գործարք են կատարել իրենց խղճի հետ։ Մի՞թե կարելի է պարտիական օբյեկտիվ մոտեցման փոխարեն, առանց խղճի խայթի ցուցաբերել սուբյեկտիվ, բարի դրացիական մոտեցում, որի հիմքում ընկած է քաղքենու հոգեբանությունը։ Ինչ խոսք, որ նման դեպքեր երբեմն հանդիպում են նաև մյուս կազմակերպություններում։ Դրանք ժամանակին կանխելու, տեղերում հարցերը ճիշտ լուծելու արմատական միջոցը կոմունիստներին լենինյան ճշմարտության, շիտակության և ուղղամտության ոգով դաստիարակելն է։ Եթե կոմունիստները միշտ խորապես գիտակցեն և կենսագործեն իրենց կանոնադրական պարտականություններն ու իրավունքները, հարցերը լուծելիս դրսևորեն պարտիական պատշաճ սկզբունքայնություն, ապա ձեռնարկությունների ու հիմնարկությունների վիճակը շատ ավելի բարվոք կլինի և այդպիսի դեպքեր չեն լինի։

Խոսելով պարտիական-կազմակերպական աշխատանքի մի քանի հանգուցային հարցերի մասին, չի կարելի մոռացության մատնել այն լուրջ թերություններն ու բացերը, որ դեռևս կան շրջկոմում ու նրա բաժիններում, ինչպես նաև սկզբնական պարտկազմակերպություններում։

Պարտիական աշխատանքն ամենից առաջ աշխատանք է մարդկանց հետ, մինչդեռ բոլոր կոմունիստները, նույնիսկ բոլոր պարտիական գործիչները չէ, որ տիրապետում են այդ դժվարին գործին։ Մասամբ հենց այդ է պատճառը, որ առանձին պարտկազմակերպություններ, նույնիսկ պարտիական որոշ գործիչներ, տարվելով տնտեսական մանրուքներով, մոռացության են տալիս բնակչության, հատկապես երիտասարդության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, հանդես չեն գալիս զեկուցումներով և զրույց-

ներով, ինչպես հարկն է չեն մասնակցում մարքս-լենինյան տեսության պրոպագանդային։

Լուրջ թերություն է նաև այն, որ պարտիական կազմակերպությունների ժողովներում և պարտբյուրոյի նիստերում ոչ պարբերաբար կամ միայն առիթից առիթ, այն էլ ձևականորեն են քննարկվում կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման, աշխատավորների դաստիարակության հարցերը։

Կոնկրետ շատ անելիքներ ունենք շինարարական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների ղեկավարությունը բարելավելու, նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու գործում։ Համեմատաբար նորաստեղծ, երիտասարդ է մեր շրջանը, ուր գնալով ծավալվում են շինարարական աշխատանքները։ Բավական է ասել, որ մոտ 40 հազար բանվոր-ծառայողներից 12 հազարը, այդ թվում 750 կոմունիստներ, անմիջականորեն զբաղված են շինարարությամբ։

Շրջանի շինարարական 13 կազմակերպությունների աշխատողները իրարից կտրված գործում են տասնյակ օբյեկտներում։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ այդպիսի պայմաններում դժվար է պարտիական-կազմակերպական, պարտիական-քաղաքական աշխատանքի կազմակերպումը։ Մինչդեռ մենք, ինչ մեղքներս թաքցնենք, միշտ չէ, որ լինում ենք շինարարական պարտկազմակերպություններում, օգնում նրանց՝ մոտիկից զբաղվելու շինարարների քաղաքական դաստիարակության, նրանց աշխատանքային, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերով։

26 կոմիսարների շրջանի պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները, պետք է վերացնեն պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքում եղած թերությունները, մոտիկից զբաղվեն կոմունիստների ու բոլոր աշխատավորների գաղափարական դաստիարակության հարցերով։

Լ. ՂԱԶԱՐՅԱՆ
ՀԿՊ Երևանի կազմակերպության 26 կոմիսարների շրջկոմի առաջին քարտուղար

## ՇՐՋԱՆԸ ՆՈՐ ՀՈՒՆՈՎ

Թալինը ռեսպուբլիկայի այն շրջաններից է, ուր ժլատ է բնությունը, սակավաջուր ու քարքարոտ են հողերը։ Երաշտն ու անբարենպաստ պայմանները թալինցիների մշտական ուղեկիցն են եղել. նրանք անդուլ ու անդադար պայքարել են բնության արհավիրքի դեմ, ջանք չեն խնայել քարից ու հողից բարիքներ քամելու, հանրային տնտեսությունը զարգացնելու, ստանձնած պարտավորությունները կատարելու։ Այդ իմաստով մեզ համար բնորոշ տարի էր 1965 թվականը։

Ոգևորված ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումներով, շրջանի 26 կոլտնտեսությունների և 8 սովխոզների աշխատողները կազմակերպված կատարեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքները. ցանվեց 5036 հեկտար հացահատիկ. այդ կուլտուրայի ամբողջ ցանքատարածությունը շրջանում հասավ 12260 հեկտարի, որն անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելի է։

Համառ պայքար մղելով բնակլիմայական անբարենպաստ պայմանների



դեմ և լավ կազմակերպելով ցանքերի մշակումն ու սնուցումը, շատ տնտեսություններ հասան գոհացուցիչ արդյունքի։ Այսպես, Նոր Արթիկի, Դավթաշենի և Սուսերի գյուղատնտեսական արտելները 1965 թվականին նախատեսված 10 ցենտների փոխարեն հեկտարից ստացան 10,5—11 ցենտներ հացահատիկ։ Նախատեսվածից բարձր բերք ստացան նաև Կարմրաշենի, Ն. Բազմաբերդի, Աշնակի, Ագարակի կոլտնտեսությունները։ Հացահատիկի բարձր բերքի համար մղվող պայքարում չի կարելի չնշել անվանի կոմբայնավարներ Հրաչյա Կարապետյանի (Սաբունչի), Ռաֆիկ Մկրտչյանի (Նոր Արթիկ), Միհրան Պարոնյանի (Զարնջա), Գուրգեն Վարդանյանի (Ցամաքասար) և շատ շատերի անունները, որոնք աշխատանքային մեծ նվիրվածություն ու բարեխղճություն ցուցաբերեցին հանրային դաշտերի բերքն անկորուստ հավաքելու ու ամբարելու գործում։

Հաջող է կատարվել նաև 1965 թվականի աշնանացանը։ Ցանվել է 7224 հեկտար աշնանացան ցորեն։

Մենք ունենք կոլտնտեսային արտադրության զարգացման, էկոնոմիկայի բարձրացման այնպիսի ռեզերվներ, որոնց լրիվ օգտագործմամբ ցանկալի արդյունքի կհասնենք։ Այդ կապակցությամբ անդրադառնանք ծխախոտագործությանը։ Թալինում այն նոր կուլտուրա չէ և իր որոշակի տեղն ունի կոլտնտեսությունների հաշվեկշռում։ Անցյալում բավարար բարձրության վրա դրված չի եղել այդ կուլտուրայի զարգացման գործը։ Վերջին տարիների միջոցառումները տվեցին որոշակի արդյունք։ 1965 թվականին պլանով նախատեսված 203-ի դիմաց սածիլվեց 246 հեկտար ծխախոտ։ Ծխախոտի բարձր բերք աճեցրին Աշնակի, Ագարակի, Ն. Բազմաբերդի, Վ. Բազմաբերդի, Դավթաշենի կոլտնտեսությունները, ավելացնելով իրենց դրամական եկամուտները։

Աշնակի կոլտնտեսությունում կոմունիստ Մխիթար Մարտիրոսյանի ղեկավարած օղակը 4,6 հեկտար պլանտացիայից ստացավ 105 ցենտներ ծխախոտի հումք, տնտեսությանը բերելով մոտ 24 հազար ռուբլու եկամուտ։

Պարտիայի շրջանային կոմիտեն սկզբնական կազմակերպությունների հետ միջոցառումներ է մշակում լայնորեն ուսումնասիրելու և արմատավորելու առաջավոր ծխախոտագործների աշխատանքի փորձը, վերացնելու նրա մշակության գործում տեղ գտած թերությունները և առաջիկա տարիներին ապահովելու այդ արժեքավոր կուլտուրայի բուռն վերելքը։

Անցած տնտեսական տարում լուրջ դժվարություններ հաղթահարվեցին նաև անասնաբուծության զարգացման և նրա մթերքների ավելացման բնագավառում։ Պարտիական կազմակերպությունները կոլտնտեսությունների վարչությունների, սովխոզների դիրեկցիաների և արտադրական վարչության մասնագետների հետ միասին արդյունավետ միջոցառումների դիմեցին հանրային տնտեսությունների այդ կարևոր ճյուղի հետագա զարգացումն ապահովելու նպատակով։ Արդյունքը եղավ այն, որ նախորդ տարիների համեմատությամբ, 1965 թվականին, մանր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 2057-ով։ Որոշ չափով ավելացավ նաև կովերի գլխաքանակը։ Հարյուր մայր անասունից 95—100 մատղաշ է ստացվել և պահպանվել Ահագչիի, Իրինդի, Գառնհովիտի, Ակունքի կոլտնտեսություններում և Ալագյազի ոչխարաբուծական սովխոզում, իսկ Ալագյազի ոչխարաբուծական սովխոզի հովիվ Մնացական Առաքելյանը 100 մաքուց ստացել ու պահպանել է 117 գառ. այդ բարձր ցուցանիշ է ո՛չ միայն շրջանում, այլև ռեսպուբլիկայում։

Շրջանի անասնապահների այս և մյուս հաջողությունները հնարավորու-

թյուն տվին ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու պետությանն անասնաբուծական մթերքներ վաճառելու տարեկան պլանը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի հաջող կատարումը բարերար ազդեցություն ունեցավ նաև մեր շրջանի ողջ էկոնոմիկայի վրա։ Յոթնամյակի տարիներին ծավալվեցին նոր, խոպան հողերի յուրացման ու ջրաշինարարական աշխատանքները, որոնք նշանակալից չափով փոխեցին շրջանի տնտեսական դեմքը, նպաստեցին նրա էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացմանը։ Եթե տարիներ շարունակ շրջանի տնտեսության առաջատար ճյուղերը հացահատիկային կուլտուրաների մշակությունն ու անասնապահությունն էին, ապա այժմ հիմք է դրվել նոր՝ տնտեսական տեսակետից բարձր եկամտաբեր ճյուղերի՝ այգեգործությանն ու պտղաբուծությանը, որոնք մեր շրջանում ունեն զարգացման հեռանկարներ։

Տասը տարի առաջ Թալինի ջրանցքի կենարար ջրերը կենդանություն պարգևեցին դարերով խոպան ու պապակ հողերին, ուր միայն օձերն ու կարիճներն էին վխտում։ Մոտ 5000 հեկտար ոռոգվող հողատարածության վրա կազմակերպվեցին այգեգործական 4 խոշոր սովխոզներ. յուրաքանչյուրում տնկվել են 500—700 հեկտար խաղողի և 200—300 հեկտար պտղատու այգիներ, որոնք արդեն տալիս են առաջին բերքը։ 310 հեկտար խաղողի այգիներ մշակվում են տնկաշարային եղանակով։ Չնայած անբարենպաստ պայմաններին, 1965 թվականին, շրջանը պետությանը հանձնեց ավելի քան 2400 տոննա խաղող և 300 տոննա պտուղ։

Մեր այգեգործական սովխոզներն աճում ու ամրապնդվում են օրեցօր։ Գնալով բարձրանում է այգիների մշակության կուլտուրան, ավելանում բերքատվությունը։ Այս տեսակետից վիճակն ավելի լավ է Արագածի նորաստեղծ այգեգործական սովխոզում։ Արագածցիները վերջին երեք տարիների ընթացքում սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են խաղողի ու պտղի արտադրության, ինչպես նաև նոր այգիների տնկման պլանային առաջադրանքները, որոնց համար էլ 1964 թվականին սովխոզը պարգևատրվեց ՀՍՍՌ Գերագույն սովետի պատվոգրով։

Այգեգործությունը աճող ու մեծ հեռանկար ունեցող ճյուղ է մեր շրջանում։ Թալինի ջրանցքի երկրորդ հերթի գործարկմամբ (որի վրա իրենց ուշադրությունը պետք է բևեռեն նաև ռեսպուբլիկական կազմակերպությունները) կյանքի կկոչվեն ևս հազարավոր հեկտար խոպան հողեր։ Մեզ մոտ արդեն ստեղծվում են բոլոր հուսալի նախադրյալներն առաջիկա տարիներին խաղողի ու պտղի արտադրությունը 20 հազար տոննայի հասցնելու։ Հեռու չէ այն օրը, երբ Թալինի շրջանը կդառնա ռեսպուբլիկայի խաղողի և պտղի արտադրության բազաներից մեկը։

Տնտեսական այդ մեծ նախագծումները պետք է կենսագործեն մարդիկ, կադրերը։ Ուստի, շրջանի պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունների ու նրանց ղեկավարների առաջնահերթ խնդիրն է՝ հոգալ աշխատավոր մարդու, սովխոզի բանվորների ու բանվորուհիների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար, զբաղվել նրանց արտադրական ուսուցման կազմակերպման հարցերով, վերահսկել, որ խելացի ու տեղին ծախսվեն այդ նպատակին հատկացվող պետական միջոցները։

Անցած տնտեսական տարին բեղմնավոր եղավ նաև շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների համար։ Նախկինում Թալինում չի եղել և ոչ մի



արդյունաբերական ձեռնարկություն։ Այժմ Դալարիկի հանքվարչությունում, Արագածի պեռլիտի գործարանում, կենցաղսպասարկման կոմբինատում, Լենինականի գուլպայի ֆաբրիկայի Թալինի ֆիլիալում և արտադրական այլ օբյեկտներում աշխատում են հարյուրավոր մարդիկ և երբեմնի հետամնաց գյուղատնտեսական շրջանում արդեն ձևավորվել է, այսպես կոչված՝ սեփական բանվոր դասակարգը, որն իր համեստ լուման է ներդնում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։

1965 թվականին շրջանը արդյունաբերական համախառն արտադրանքի պլանը կատարեց 114 տոկոսով, զգալիորեն գերազանցելով նախորդ տարվա արտադրանքի ծավալը։ Ավելի նշանակալից են առանձին ձեռնարկությունների ցուցանիշները։ Հանքվարչության կոլեկտիվն իր տարեկան առաջադրանքների կատարման մասին զեկուցեց դեռևս անցած տարվա նոյեմբերին, երկրի արդյունաբերական տարբեր կենտրոններն ուղարկելով հազարավոր խորանարդ մետր լրացուցիչ տուֆ, խարամ և արժեքավոր այլ շինանյութեր։

Արագածի պեռլիտի գործարանը նույնպես իր տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ, 115—120 տոկոսով՝ թողարկելով զգալի քանակությամբ լրացուցիչ արտադրանք։ Իրենց տարեկան պլանները կատարեցին նաև պանրագործարանը, կենցաղ-սպասարկման կոմբինատը և այլ ձեռնարկություններ։

Մեր շրջանն ունի արդյունաբերության զարգացման որոշակի հեռանկարներ։ Արդեն սկսվել է Արագածի հիդրոտեխնիկական կառուցվածքների գործարանի, Արտենիի գինու կոմբինատի շինարարությունը։ Քարակերտ ավանում կառուցվելու են երկաթբետոնե կոնստրուկցիաների և պահածոների գործարաններ։ Խոշոր նշանակություն տալով արդյունաբերական ձեռնարկությունների հետագա ամրապնդմանը, պարտիայի շրջանային կոմիտեն, սկզբնական կազմակերպություններն իրենց մշտական ուշադրության կենտրոնում են պահում նրանց գործունեությունը։

Շրջկոմի բյուրոներում, պլենումներում և պարտիական ժողովներում պարբերաբար քննարկվում են արդյունաբերության հարցերը, ձեռնարկվում համապատասխան միջոցներ արտադրական օբյեկտների արդյունավետ ու ռիթմիկ աշխատանքն ապահովելու համար։ Սակայն պետք է նշել, որ արդյունաբերության զարգացման գործում շրջանի պարտիական ու սովետական կազմակերպություններն զգում են ռեսպուբլիկայի համապատասխան մինիստրությունների, գերատեսչությունների ամենօրյա օգնության կարիքը։ Ցանկալի է, օրինակ, որ ռեսպուբլիկական համապատասխան կազմակերպություններն օգնեն՝ արագացնելու Արտենիի ապակու, Դալարիկի խարամի ու բազալտի քիմիական վերամշակման, ինչպես նաև շրջկենտրոնում նախատեսված նոր գործարանի շինարարությունը։ Այդ օբյեկտների արագ կառուցումը մեծ նշանակություն կունենա շրջանի տնտեսության, առանձնապես արդյունաբերության հետագա զարգացման գործում։

Գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացմանը զուգընթաց պարտիայի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն են նվիրում նաև կուլտուրական շինարարության, աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ու նրանց հանգստի կազմակերպման հարցերին։ Անցած մեկ տարում շահագործման են հանձնվել 30-ից ավելի բնակելի շենքեր, դպրոցներ և կուլտուր-կենցաղային օբյեկտներ։

Ձեռք բերված բոլոր հաջողություններին մենք հասել ենք աշխատավոր-

*ների շրջանում տարվող պարտիական-կազմակերպական և պարտիական-քաղաքական աշխատանքի ուժեղացման միջոցով։*

*Պարտշրջկոմը և սկզբնական պարտկազմակերպությունները, հաշվի առնելով տնտեսության զարգացման գործում կադրերի վճռական դերը, առանձնահատուկ ուշադրություն են նվիրում նրանց ճիշտ ընտրության ու դաստիարակության վրա։ Գործի շահից ելնելով, կոլտնտեսության նախագահներ երաշխավորվեցին 7 նոր ընկերներ, թարմացվեց գյուղատնտեսական արտադրության միջին օղակի աշխատողների՝ բրիգադավարների, ֆերմաների ու բաժանմունքների վարիչների ու մասնագետների կազմը։ Այժմ կոլտնտեսությունների 70 ֆերմաների գրեթե բոլոր վարիչներն ու բրիգադավարները միջնակարգ կրթություն ունեցող երիտասարդներ են, նրանցից 40-ը սովորում են գյուղատնտեսական բարձրագույն ուսումնական հաստատությունների ու տեխնիկումների հեռակա բաժիններում։ Առաջադրված ընկերները հիմնականում լավ են աշխատում և արդարացնում են շրջկոմի ու մասսաների վստահությունը։*

*Այս ամենից, սակայն, չի կարելի հետևցնել, թե մեր աշխատանքներում թերություններ չկան։ Շատ անելիքներ և չլուծված հարցեր ունենք, մասնավորապես, շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները գյուղատնտեսական մասնագետ կադրերով ապահովելու, գյուղատնտեսության ու արդյունաբերության ռեզերվներն արդյունավետ օգտագործելու, ազգաբնակչության կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու ուղղությամբ։*

*Շրջանային պարտիական կազմակերպությունը, սովետական և գյուղատնտեսական օրգաններն արել են իրենց առաջին, բայց հաստատուն քայլերը։ Շրջանի աշխատավորները ջանք չեն խնայում ամրապնդելու ձեռք բերածը, նվաճելու նոր բնագծեր և պարտիայի XXIII համագումարը դիմավորելու աշխատանքային մեծ հաջողություններով։*

Ն. ԱՅՎԱԶՅԱՆ
ՀԿՊ Թալինի շրջկոմի առաջին
քարտուղար



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆ ԹՎԵՐՈՎ

## (ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ-ՀԱՄԱԳՈՒՄԱՐ)

*ՀԿՊ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանը բնութագրվում է պարտիայի քանակական և որակական աճով, նրա շարքերի միասնության ամրապնդումով։ Զգալիորեն բարձրացել է աշխատավոր մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը, աճել է առաջավոր բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի՝ կոմպարտիայի անդամ լինելու բուռն ձգտումը։*

*Վերջին տարիների ընթացքում Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմի քանակական և որակական փոփոխություններն արտահայտված են ստորև բերված համապատասխան աղյուսակներում։*

### ՀԿՊ ՔԱՆԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԸ

*Հայաստանի կոմպարտիայի քանակական կազմը XXIII համագումարից հետո ավելացել է 12013 մարդով, որից 9925-ը՝ պարտիայի անդամության թեկնածուներ ընդունելու հաշվին. պարտիայի քանակական աճը վերջին տարիների ընթացքում ունի հետևյալ պատկերը.*

| | ՍՄԿՊ անդամներ | ՍՄԿՊ անդամության թեկնածուներ | Ընդամենը պարտիականներ |
|---|---|---|---|
| Առ 1 հունվարի 1962 թ. | 84727 | 4436 | 89163 |
| » 1963 թ. | 88999 | 4549 | 93548 |
| » 1964 թ. | 93552 | 4792 | 98344 |
| » 1965 թ. | 98884 | 5421 | 104305 |
| » 1966 թ. | 105062 | 5295 | 110357 |

*Այսպիսով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները անցած 4 տարիների ընթացքում, այսինքն՝ ՀԿՊ XXII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում աճել են 21194 մարդով, այդ թվում պարտիայի շարքերի ընդունելության հաշվին՝ 17807 մարդով։*

*Վերոհիշյալ չորս տարիների ընթացքում Երևանի պարտիական կազմակերպությունն աճել է 8858 կոմունիստով, Լենինականինը՝ 1304-ով, Կիրովականինը՝ 1123-ով, Էջմիածնինը՝ 1432-ով, Ալավերդու, Ղափանի, Արտաշատի, Հոկտեմբերյանի, Հրազդանի շրջանային պարտիական կազմակերպություններինը՝ 300—500 կոմունիստով և այլն։*

ՍՄԿՊ ՇԱՐՔԵՐԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆԸ — Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները կենսագործելով պարտիայի XXI և XXII համագումարների որոշումները, մեծ աշխատանք են կատարել պարտիայի շարքերի համալրման և երիտասարդ կոմունիստների դաստիարակման գործում։ Անշեղորեն կիրառելով պարտիայի մեջ նոր ընդունվողների խոր և բազմակողմանի ուսումնասիրման և անհատական ընտրության լենինյան սկզբունքը, նրանք 1964—1965 թվականներին 10436 հոգու ընդունել են ՍՄԿՊ շարքերը որպես անդամ, իսկ 9925 հոգու անդամության թեկնածու։

Պարտիայի շարքերն ընդունվածների մեջ են արդյունաբերության ու գյուղատնտեսության անվանի մարդիկ, արտադրության նորարարներ ու առաջավորներ, բարձր բերքի ու անասնաբուծության վարպետներ, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ, որոնք բազմիցս ստուգվել են աշխատանքում և ակտիվորեն մասնակցում են պարտիայի առաջադրած խնդիրների լուծմանը։

Գործի վերածելով ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումները, պարտիայի քաղկոմշրջկոմները, սկզբնական կազմակերպությունները վերջին տարիների ընթացքում զգալիորեն բարելավել են պարտիական-քաղաքական աշխատանքը, ուժեղացրել են պահանջկոտությունը և ուշադրությունը պարտիայի շարքերում նոր անդամների և անդամության թեկնածուների ընդունելության նկատմամբ։ Պարտիական կազմակերպությունները հիմնականում աճել են ժողովրդական տնտեսության կարևորագույն տեղամասերում աշխատող առաջավոր բանվորների, գյուղացիների և սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչների հաշվին, որոնք ակտիվորեն մասնակցում են պարտիայի առաջադրած խնդիրների իրականացմանը և անմիջականորեն զբաղված են նյութական բարիքների արտադրությամբ։

Պարտիայի մեջ ընդունվողների սոցիալական կազմի բարելավման գործը լավ է ընթացել Երևանի 26 կոմիսարների անվան, Լենինյան, Ապարանի, Կալինինոյի, Վեդու, Նոյեմբերյանի, Աբովյանի, Սիսիանի և մյուս շրջանների պարտկազմակերպություններում, որտեղ բանվորների և գյուղացիների թիվը կազմում է բոլոր ընդունվածների մոտ երկու երրորդ մասը։

Վերջին տարիների ընթացքում ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունված բանվորների մեծամասնությունն աշխատում է ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերում։ Օրինակ, 1965 թ. ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունված բանվորներից 1034 հոգին աշխատում են արդյունաբերական ձեռնարկություններում, 323-ը՝ տրանսպորտում և շինարարությունում, 328-ը՝ սովխոզներում և այլն։

Պարտիայի շարքերը համալրվել են նաև առաջավոր կոմերիտականների հաշվին։ Այսպես, 1962—1965 թվականների ընթացքում ՍՄԿՊ շարքերն են ընդունվել 6605 կոմերիտականներ, որոնք կազմում են բոլոր ընդունվածների մոտ 40 տոկոսը։

ՍՄԿՊ անդամության թեկնածուների հետ միասին համապատասխանորեն աճել է նաև պարտիայի անդամ ընդունվողների թիվը։ Միայն վերջին երկու տարվա (1964—1965 թթ.) ընթացքում պարտիայի շարքերը որպես անդամ ընդունվել են 10436 հոգի, 1962—1963 թվականների՝ 8475 հոգու դիմաց։ Առ 1-ը հունվարի 1966 թվականի դրությամբ մինչև 3 տարի պարտիական ստաժ ունեցող պարտանդամների թիվը հասել է մոտ 22 հազարի, որը կազմում է կոմունիստների ընդհանուր թվի մոտ 20 տոկոսը։ Առ 1-ը հունվարի



1966 թվականի դրությամբ զգալիորեն պակասել է ժամկետանց թեկնածուների թիվը. այսպես, եթե պարտիայի XXIII համագումարի ժամանակ նրանց թիվը հասնում էր 1111-ի, ապա այժմ, XXIV համագումարի ժամանակ այդ թիվը իջել և հասնում է 769-ի։

Պարտիայի շարքերը նոր ընդունվածների գերակշռող մասը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում աշխատող երիտասարդներն են, որոնք դեռևս չունեն կյանքի բավականաչափ փորձ, գաղափարական անհրաժեշտ կոփվածություն, ինչպես նաև պարտիական աշխատանքի փորձ։ Այս հանգամանքը պարտիական կազմակերպություններից պահանջում է լրջորեն զբաղվել երիտասարդ կոմունիստների դաստիարակությամբ։

ՍՄԿՊ ՇԱՐՔԵՐԻՑ ՎՏԱՐՈՒՄԸ — Հայաստանի կոմպարտիան իր կազմը լավագույն մարդկանցով համալրելու հետ մեկտեղ իր շարքերը մաքրել ու մաքրում է կոմունիստի բարձր կոչումը արատավորողներից։ 1964—1965 թվականներին ռեսպուբլիկայում զանազան պատճառներով պարտիայի անդամությունից և անդամության թեկնածուներից վտարվել կամ դուրս են մնացել 521 հոգի։

## ՀԿՊ ԿԱԶՄԸ ԸՍՏ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԶԲԱՂՄՈՒՆՔԻ ՏԵՍԱԿԻ

Պարտիայի քանակական աճին զուգընթաց բարելավվում է նաև նրա որակական կազմը։

Կոմունիստների տեղաբաշխման փոփոխությունները ըստ սոցիալական խմբերի (սոցիալական դրության), վերջին երկու համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում բնութագրվում է հետևյալ կերպ (արտահայտված է տոկոսներով ընդհանուր թվի նկատմամբ)։

| | Առ 1-ը հունվարի 1962 թ. | Առ 1-ը հունվարի 1966 թ. |
|---|---|---|
| Ընդամենը կոմունիստներ | 100 | 100 |
| այդ թվում՝ բանվորներ | 26.3 | 29,6 |
| գյուղացիներ (կոլտնտեսականներ) | 28,6 | 25,3 |
| ծառայողներ և մնացած բոլորը | 45,1 | 45,1 |

Այսպիսով, կոմունիստների մեծ մասը (55 տոկոսը) բանվորներ և գյուղացիներ են։ Վերջին 4 տարիների ընթացքում բանվորների թիվը կոմունիստների ընդհանուր կազմում ավելացել է 9278-ով, կամ 3,3 տոկոսով։

Իսկ ծառայողների կազմում գերակշռում են մտավոր աշխատանքի մարդիկ, գիտության տարբեր ճյուղերի մասնագետներ՝ ինժեներներ, տեխնիկներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, տնտեսագետներ, բժիշկներ, մանկավարժներ և ժողովրդական տնտեսության այլ մասնագետներ։

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԿԱԶՄԸ ԸՍՏ ԿՐԹՈՒԹՅԱՆ

Հայաստանի բնակչության կրթական մակարդակը ամեն տարի զգալիորեն բարձրանում է, որը, բնականաբար, իր արտահայտությունն է գտնում պարտիայի անդամ-թեկնածուների կազմում։

Ներքոհիշյալ տվյալները ցույց են տալիս վերջին տարիների ընթացքում կոմունիստների մասնագիտական և հանրակրթական պատրաստականության փոփոխությունները։

| | Առ 1/I 1962 թ. | | Առ 1/I 1966 թ. | |
|---|---|---|---|---|
| | բացարձակ թվերով | տոկոսներով | բացարձակ թվերով | տոկոսներով |
| Ընդամենը ՍՄԿՊ անդամներ և թեկնածուներ . | 89163 | 100 | 110357 | 100 |
| որից ունեն՝ | | | | |
| Բարձրագույն կրթություն . . . . . . . . . | 18623 | 20,9 | 24804 | 22,5 |
| Թերի բարձրագույն կրթություն . . . . . . | 3538 | 4,0 | 3836 | 3,5 |
| Միջնակարգ կրթություն . . . . . . . . . | 24713 | 27,7 | 34475 | 31,2 |
| Այդ թվում մասնագիտական կրթություն ունեցողներ . . . . . . . . . . . . . . . | 10150 | 41,0 | 14282 | 41,4 |
| Ոչ լրիվ միջնակարգ կրթություն ունեցողներ . | 21513 | 24,1 | 26190 | 23,7 |
| Տարրական կրթություն ունեցողներ . . . . | 20776 | 23,3 | 21046 | 19,1 |

Բարձրագույն մասնագիտական կրթությամբ կոմունիստների թիվը վերջին 2 համագումարների ընթացքում ավելացել է մոտ 6181, իսկ թերի բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետ կոմունիստներինը՝ ավելի քան 4057 մարդով։

Ներկայումս Հայաստանում կոմունիստների մոտ $^{1}/_{3}$-ն ունի մասնագիտական կրթություն։

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԿԱԶՄԸ ԸՍՏ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՍՏԱԺԻ

ՀԿՊ XXII համագումարից հետո կոմունիստների կազմում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել նաև ըստ պարտիական ստաժի։

1966 թվականի հունվարի մեկի դրությամբ մինչև 10 տարվա պարտիական ստաժ ունեցողների թիվը հասնում է 39372-ի կամ կազմում է ՍՄԿՊ անդամների ընդհանուր թվի 37,5 տոկոսը, 10—20 տարվա ստաժ ունեցողները՝ 27732-ի կամ 26,4 տոկոսը, 20—30 տարվա ստաժ ունեցողները՝ 28607-ի կամ 27,2 տոկոսը և ավելի քան 30 տարվա ստաժ ունեցողներինը՝ 9351-ի կամ 8,9 տոկոսը։

Այս թվերը խոսում են այն մասին, որ պարտիայի կազմում ավելացել են ինչպես երիտասարդ, այնպես էլ պարտիական մեծ ստաժ ունեցող կոմունիստների թիվը. այդ հանգամանքը պարտիական կազմակերպություններին հնարավորություն է տալիս աշխատանքում երիտասարդ և հին կադրերին զուգակցել և նրանց ճիշտ տեղաբաշխել ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում։

## ՀԿՊ ԿԱԶՄՆ ԸՍՏ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

Հայաստանի կոմպարտիան 1966 թ. հունվարի մեկի դրությամբ իր կազմում ընդգրկում է 27 ազգությունների ներկայացուցիչներ, ըստ որում ռուսներ՝ 2054 հոգի, ուկրաինացիներ՝ 296, բելոռուսներ՝ 38, հայեր՝ 101915, ադրբեջանցիներ՝ 4874, վրացիներ՝ 44, քրդեր՝ 497, հույներ՝ 284, ասորիներ՝ 141, հրեաներ՝ 121, այլ ազգություններ՝ 93 հոգի։



## ՀԿՊ ԿԱԶՄՆ ԸՍՏ ՏԱՐԻՔԻ

| | Առ 1-ը հունվարի 1966 թ. |
|---|---|
| Մինչև 25 տարեկան հասակ ունեցողներ . . . . . . . . | 4555 |
| 25—30 տարեկան հասակ ունեցողներ . . . . . . . . | 12630 |
| 31—40 » » » . . . . . . . . | 36545 |
| 41—50 » » » . . . . . . . . | 26180 |
| 51—60 » » » . . . . . . . . | 21566 |
| 60 տարեկանից բարձր հասակ ունեցողներ . . . . . . | 8881 |

## ԿԱՆԱՅՔ ՀԿՊ ԿԱԶՄՈՒՄ

Սովետական կանայք կոմունիզմի կառուցման ակտիվ մասնակիցներն են։ Նրանցից ամենաառաջավորներն ընդունվում են ՍՄԿՊ շարքերը և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կատարում են բեղմնավոր աշխատանք։

Կանանց թիվը ՀԿՊ կազմում սիստեմատիկաբար աճում է. ՀԿՊ XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում կոմունիստ կանանց թիվը 18.388-ից հասել է 20.027-ի։

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիական կազմակերպություններից պահանջում է կոմունիստների հիմնական ուժերը տեղաբաշխել նյութական արտադրության ոլորտում և, միաժամանակ բարելավել պարտիական ուժերի տեղաբաշխումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Թե ռեսպուբլիկայում ինչպես է իրականացվում պարտիայի այդ ցուցումը, ցույց են տալիս ստորև բերված թվերը.

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄՆ ԸՍՏ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌԱՆՁԻՆ ՃՅՈՒՂԵՐԻ (տոկոսներով)

| | Առ 1-ը հունվարի 1962 թ. | Առ 1-ը հունվարի 1966 թ. |
|---|---|---|
| Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված կոմունիստների ընդհանուր թիվը . . . . . . . . . . . . | 89163 | 110357 |
| ընդ որում | | |
| Աշխատում են նյութական արտադրության ճյուղերում . . | 52263 | 65736 |
| այդ թվում՝ | | |
| արտադրության և շինարարության մեջ . . . . . . | 19595 | 29133 |
| տրանսպորտի և կապի օբյեկտներում . . . . . . | 5405 | 6306 |
| գյուղատնտեսության մեջ . . . . . . . . . . . | 22564 | 25203 |
| մթերումների, նյութա-տեխնիկական մատակարարման և հասարակական սննդի օբյեկտներում . . . | 4699 | 5094 |
| Աշխատում են ոչ արտադրական ճյուղերում . . . . . | 36900 | 44621 |
| որից՝ | | |
| լուսավորության, գիտության, առողջապահության բնագավառում . . . . . . . . . . . . . . | 14490 | 18386 |
| պետական օրգաններում, վարչա-տնտեսական ապարատում, պարտիական և հասարակական կազմակերպություններում . . . . . . . . . . . | 9198 | 10315 |
| այլ ճյուղերում աշխատողներ, թոշակառուներ և տնային տնտեսուհիներ . . . . . . . . . | 13212 | 15920 |

Այսպիսով, տվյալները վկայում են այն մասին, որ կոմունիստների ճնշող մեծամասնությունն զբաղված են նյութական արտադրության ոլորտում: Արդյունաբերության, տրանսպորտի, կապի և շինարարության բուռն զարգացումը իր հետ բերեց ժողովրդական տնտեսության այս ճյուղերում աշխատող կոմունիստների թվի զգալի աճ: Այսպես, միայն 1962 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում նրանց թիվը ռեսպուբլիկայում ավելացել է մոտ 10439 կոմունիստով: Կրկնապատկվել է մեքենաշինության մեջ աշխատող կոմունիստների թիվը:

Բավական է ասել, որ 1966 թվականի հունվարի 1-ի դրությամբ նյութական արտադրության ոլորտում աշխատող կոմունիստների տեսակարար կշիռը ընդհանուրի մեջ կազմում է 59,6 տոկոս:

### ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՑԱՆՑԸ

Սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտիայի հիմքն են: Չկա տնտեսական, քաղաքական ոչ մի խնդիր, չկա մի միջոցառում, որի անցկացման գործում պարտիան չհիմնվի սկզբնական կազմակերպությունների վրա:

1962 թվականի հունվարի մեկից մինչև 1966 թվականի հունվարի մեկը սկզբնական պարտկազմակերպությունների թիվը ռեսպուբլիկայում ավելացել է 370-ով, ընդ որում արդյունաբերական, կապի, տրանսպորտի և շինարարական պարտիական կազմակերպությունները ավելացել են 90-ով, իսկ սովխոզներինը՝ 82-ով:

Այժմ ռեսպուբլիկայում սկզբնական պարտիական կազմակերպությունների թիվը հասնում է 3963-ի:

Ա. ՋԱԼԻՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական միասնական տոմսի և վիճակագրության սեկտորի վարիչ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄՆ ՈՒ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ

Տ. ՏԻԳՐԱՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը բավականին լուրջ միջոցառումներ մշակեց գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար: Այդ միջոցառումներում նշանակալից տեղ տրվեց գյուղատնտեսական արտադրության նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը:

Գալիք հնգամյակում նախատեսվում է Միության կոլտնտեսություններում և սովխոզներում կրկնակի չափով ավելացնել տրակտորային և բեռնատար ավտոմոբիլային պարկը, զգալի չափով մեծացնել կոմբայնների ու գյուղատնտեսական այլ մեքենա-գործիքների թիվը: Այդ նույն ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների տրակտորային պարկը կաճի մոտ 50 տոկոսով, կոմբայնների թիվը 35, ավտոմեքենաներինը՝ 40 և գյուղատնտեսական այլ մեքենա-գործիքներինը (գութան, շարքացան, կուլտիվատոր և այլն) մոտ 30 տոկոսով:

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվ վարման նպատակով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում տարեցտարի ավելի շատ կապիտալ ներդրումներ են հատկացվում արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման զարգացմանը: Դրա շնորհիվ միայն վերջին յոթ տարիների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների մեխանիկական էներգառեսուրսների (տրակտոր, կոմբայն, ավտոմեքենա, էլեկտրաշարժիչ, տրանսֆորմատոր և այլն) տարեկան միջին աճը կազմել է 13,4 տոկոս: 1965 թվականի սկզբին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ օգտագործվում էին մոտ 12 հազար տրակտոր (15 ձիաուժի հաշվարկումով), 1,7 հազար տարբեր մարկայի կոմբայններ, 7 հազար ավտոմեքենա և տասնյակ հազար այլ մեքենա-գործիքներ:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում 100 հեկտար վարելահողի հաշվով էներգառեսուրսների ընդհանուր հզորությունը (մեխանիկական շարժիչներ և բանող անասուններ), կամ էներգահագեցվածությունը

1965 թվականի սկզբին կազմեց մոտ 205 ձիաուժ, իսկ մեկ աշխատողի հաշվով էներգազինվածությունը՝ 5,5 ձիաուժ։ 1970 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, մեխանիկական էներգառեսուրսները կաճեն մոտ 63 տոկոսով։ Այդ տարիներին էներգահագեցվածությունը և էներգազինվածությունը կավելանան նշանակալից չափով, համապատասխանաբար կազմելով 341 և 7 ձիաուժ։ Էներգառեսուրսների նման աճը կնպաստի արտադրության մեքենայացման զարգացմանը, որը կզուգորդվի աշխատանքի արտադրողականության ու արտադրության վարման կուլտուրայի բարձրացմամբ։

Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում մեկ պայմանական տրակտորին ընկնում է միջին հաշվով 36 հեկտար վարելահող, հացահատիկային մեկ կոմբայնին՝ 130 հեկտար հնձվող տարածություն։ Տրակտորներով հագեցվածության տեսակետից մեր ռեսպուբլիկան անցել է մի շարք կապիտալիստական երկրներից և ընդհուպ մոտեցել Ամերիկայի Միացյալ Նահանգներին և Անգլիային։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության էներգառեսուրսների ընդհանուր կազմում մոբիլային տեխնիկայի (տրակտոր, կոմբայն և ավտոմեքենա) հզորության տեսակարար կշիռը 1964 թվականին կազմեց մոտ 81,5 տոկոս, էլեկտրատեղակայանքներինը՝ 17, իսկ բանող անասուններինը՝ 1,5 տոկոս։ Պետք է ասել, որ մյուս ռեսպուբլիկաների և շրջանների հետ համեմատած, բարձր է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության էլեկտրահագեցվածությունը։ Եվ, իրոք, եթե Միության մասշտաբով ընդհանուր էներգառեսուրսներում էլեկտրատեղակայանքների հզորության տեսակարար կշիռը 1964 թվականին կազմել է մոտ 10 տոկոս, ապա մեզ մոտ, ինչպես տեսանք, կազմել է 17 տոկոս։

100 հեկտար վարելահողի և բազմամյա տնկարկների տարածության հաշվով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում տեղակայված էլեկտրատեղակայանքների միջին հզորությունը 1965 թվականի սկզբին կազմել է 34 կվտ։ Այսինքն՝ արտադրության էլեկտրահագեցվածությունը, Միության միջին տվյալների համեմատ, ավելի է մոտ 2,6 անգամ։ Մեկ աշխատողի հաշվով էլեկտրաշարժիչների միջին հզորությունը (աշխատանքի էլեկտրազինվածությունը) նույն թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմել է մոտ մեկ ձիաուժ։ 1964 թվականի ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում մեկ աշխատողի հաշվով ծախսվել է 868 կվտ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ Միության մասշտաբով այդ կազմել է 597 կվտ-ժամ։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության էլեկտրահագեցվածության համեմատաբար բարձր մակարդակը նպաստավոր բազա է հանդիսանում աշխատատար պրոցեսների կոմպլեքսային էլեկտրամեքենայացմանն ու ավտոմատացմանն անցնելու համար։ Ընդ որում, կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ գյուղատնտեսության մեջ ձեռքի աշխատանքը էլեկտրական էներգիայի միջոցով կատարվող աշխատանքով փոխարինելու դեպքում, միավոր աշխատանքի հաշվով աշխատանքային ծախսումներն իջնում են 9—11 անգամ, իսկ ներքին այրման շարժիչների համեմատությամբ՝ 3,5—4 անգամ։ Ուրեմն, անհրաժեշտ է մեխանիկական էներգառեսուրսների ընդհանուր կառուցվածքում էլ ավելի բարձրացնել էլեկտրատեղակայանքների հզորության



տեսակարար կշիռը, այսինքն՝ ավելացնել էլեկտրական էներգիայի օգնությամբ կատարվող աշխատանքների ծավալը, որի համար ներկայումս կոլտնտեսություններում և սովխոզներում կան ռեալ հնարավորություններ։ Օրինակ՝ միանգամայն հնարավոր է և տնտեսապես ձեռնտու հացահատիկի կալսման, զտման և տեսակավորման, կերի սիլոսացման, հյութալի կերի պատրաստման, կալում բեռների բարձման և բեռնաթափման, ոչխարի խուզի և այլ պրոցեսներում օգտագործվող ջերմային շարժիչների փոխարինումը էլեկտրաշարժիչներով։

Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները լիովին ապահովված են էլեկտրական էներգիայով և ունեն բավականին հզոր էլեկտրատնտեսություն։ Բավական է նշել, որ 1965 թվականի սկզբին կոլտնտեսություններում ու սովխոզներում կային 77350 կվտ հզորության 5400 էլեկտրական շարժիչ, 90,3 հազար կվտ ամպեր հզորության տրանսֆորմատոր, 81 շարժական էլեկտրակայան և այլն։ 1964 թվականի ընթացքում տնտեսություններում ծախսվել է մոտ 158 մլն. կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տնտեսությունների հիմնական մասում էներգիայի այդ էժան տեսակն անբավարար է օգտագործվում արտադրական նպատակների համար։ Ճիշտ է, արտադրական նպատակներով էներգիայի ծախսը տարեցտարի փոքր-ինչ ավելանում է, օրինակ՝ 1964 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, այն ավելացավ 2,7 տոկոսով և միջին հաշվով կազմեց ընդհանուր ծախսերի 42,5 տոկոսը, սակայն այդ դեռևս շատ քիչ է։ Բացի դրանից, արտադրական նպատակով ծախսված էլեկտրաէներգիայի հիմնական մասն օգտագործվում է օժանդակ ճյուղերում՝ էլեկտրաաղացներում, փայտի սղոցարաններում, նորոգման արհեստանոցներում և կուլտուր-կենցաղային օբյեկտներում։ Գյուղատնտեսական աշխատանքների էլեկտրամեքենայացմանն ընկնում է էլեկտրաէներգիայի ծախսի չնչին բաժինը, արտադրական նպատակով ծախսված ընդհանուր էլեկտրաէներգիայի մոտ 10 տոկոսը։

Հնարավորության դեպքում կոլտնտեսություններում ու սովխոզներում որևէ մեքենա գործարկելիս, որպես էներգիայի աղբյուր, պետք է նախապատվություն տալ էլեկտրաէներգիային։ Այդ, հատկապես, հեշտ իրագործելի է անասնաբուծության մեջ, որտեղ արտադրության գրեթե բոլոր պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը հնարավոր են ստացիոնար էլեկտրատեղակայանքների միջոցով։

Գյուղատնտեսական արտադրության մեքենայացման և էլեկտրիֆիկացման զարգացումը պայմանավորվում է ոչ միայն էներգառեսուրսների աճմամբ։ Դրանում կարևոր, թերևս հիմնական դեր է կատարում նաև այն, թե այդ հզոր միջոցներն իրենց կառուցվածքով որքանով են համապատասխանում տվյալ արտադրության տեղաբաշխման ու մասնագիտացման պահանջներին և ինչ մակարդակով են օգտագործվում դրանք։

Մեքենայացման զարգացման այդ երեք պայմանները (էլեկտրառեսուրսների աճը, կառուցվածքն ու օգտագործումը) իրար հետ կապված հարցեր են և դրանք պետք է դիտել որպես մի ընդհանուր շղթայի առանձին օղակներ. եթե կտրվի դրանցից մեկը, կկտրվի ընդհանուր շղթան։

Հիմնվելով կատարված ուսումնասիրությունների վրա, կարելի է եզրակացնել, որ եթե ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության էներգառեսուրսների զարգացումն այս կամ այն չափով բարվոք վիճակում է, ապա

եղած հզորագույն տեխնիկայի օգտագործման հարցերը ոչ այնքան մխիթարական վիճակում են:

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը ճիշտ կազմակերպելու հարցերը բազմապիսի են և մեր ռեսպուբլիկայի լեռնային հողագործության պայմաններում ունեն իրենց լուծման ուրույն մեթոդները: Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս շատ ցածր է գյուղատնտեսական մեքենաների արտադրողականությունը և բարձր է մեքենայացված աշխատանքների ինքնարժեքը: Հարկ ենք համարում խոսել միայն մի քանի հանգուցային հարցերի մասին, որոնց լուծումը կնպաստի տեխնիկայի ռացիոնալ օգտագործմանը և մեքենայացման հետագա զարգացմանը:

Ռեսպուբլիկա ներմուծվող գյուղատնտեսական մեքենաները և գործիքները հիմնականում նախագծված են հարթավայրային պայմանների համար և իրենց շահագործական ցուցանիշներով գրեթե չեն համապատասխանում լեռնային հողագործության պայմաններին: Միայն այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի վարելահողերի մոտ 72 տոկոսն ընկած է ծովի մակերևույթից 1000 մետր, իսկ 63 տոկոսը՝ 1500 մետր բարձրության վրա, 13—20 տոկոսով նվազեցնում է տրակտորների նոմինալ հզորությունը և գրեթե նույն չափով ազդում ագրեգատների արտադրողականության վրա: Բացի դրանից, վարելահողերը հիմնականում ընկած են սարալանջերի վրա և դրանց թեքությունը ռեսպուբլիկայում միջին հաշվով կազմում է 5—6 աստիճան, իսկ առանձին դեպքերում հասնում է 12—20 աստիճանի. ռելիեֆի խիստ կտրտվածության հետևանքով դրանք մասնատված են մանր կտորների, քարքարոտ են, ունեն անկանոն ձև, դրանց միջին երկարությունը չի անցնում 150 մետրից, հողերի տեսակարար դիմադրությունն առանձին դեպքերում հասնում է 1,0—1,4 կգ/սմ, որը 2—3 անգամ բարձր է համեմատած Ռուսաստանի, Ուկրաինայի և Բելոռուսիայի հողերի հետ:

Եթե նկատի ենք ունենում, որ Միության մասշտաբով նման պայմաններում եղած վարելահողերը կազմում են մոտ 9 միլիոն հեկտար, ապա գյուղատնտեսության ինտենսիվացման համար խիստ կարևոր է լեռնային հողագործությանը համապատասխանող տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական այլ մեքենա-գործիքների ստեղծումը: Անհրաժեշտ է, որ «Հայգյուղտնտտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորումը, գյուղատնտեսության մինիստրությունը և պետպլանը առաջ քաշեն լեռնային հողագործության տեխնիկայի սերիական թողարկումը կազմակերպելու խնդիրը: Չէ՛ որ լեռնային հողագործության պայմանների համար անհրաժեշտ են ուժեղացված և կատարելագործված բանվորական մասերով, ընթացքային և ղեկի մեխանիզմներով թեքությունների վրա աշխատող տրակտորներ, կոմբայններ, գութաններ, կուլտիվատորներ, շարքացաններ և գյուղատնտեսական այլ մեքենա-գործիքներ: Այդ իսկ տեսակետից անհրաժեշտ է, որ նշված գերատեսչությունները հարց բարձրացնեն անդրկովկասյան ռեսպուբլիկաներից մեկում հատուկ կոնստրուկտորական բյուրո կազմակերպելու մասին: Միության մեքենաշինական գործարաններին պատվեր տալու համար անհրաժեշտ կլինի, որ այդ բյուրոն ունենա նախագծված մեքենաների փորձնական նմուշի իր խոշոր արտադրությունը և դրան կից հենակետեր՝ երեք ռեսպուբլիկաներում:

Արդեն 5—6 տարի է, որ գյուղատնտեսական արտադրության մեջ մուտք են գործել ԴՏ—75, Տ—74 մարկաների ընդհանուր նշանակման արագընթաց



տրակտորները: Դրանց շահագործական ցուցանիշները, ըստ գործարանային տվյալների, բարձր են, քան սովորական ԴՏ—54 և ԴՏ—54 Ա մարկայի տրակտորներինը: Ըստ այդ տվյալների, արագընթաց տրակտորներով կազմվող ագրեգատների արտադրողականությունը սովորական ագրեգատների նկատմամբ 30—35 տոկոսով բարձր է: Արագընթաց տրակտորների քարշային գործողության գործակիցը կազմում է 0,74—0,75՝ տրակտորի 6,1 կմ/ժամ արագության դեպքում, իսկ ԴՏ—54 և ԴՏ—54 Ա տրակտորների մոտ այդ չափի գործակիցը ստացվում է միայն ժամում 3,5—4,5 կմ արագության դեպքում:

Այսպիսով, երեք արագընթաց տրակտորներով կարելի է կատարել չորս սովորական տրակտորի աշխատանք: Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի լեռնային հողագործության պայմաններում արագընթաց ռեժիմով աշխատող տրակտորների շահագործական ցուցանիշները չեն անցնում ԴՏ—54 և ԴՏ—54 Ա տրակտորների ցուցանիշներից: Դրա հիմնական պատճառն այն է, որ այդ տրակտորներն իրենց տեխնիկական բնութագրերով չեն համապատասխանում լեռնային հողագործության բարդ պայմաններին:

Կոլտնտեսությունների և սովխոզների մեքենա-տրակտորային պարկի արտադրողաբար օգտագործման համար խիստ կարևոր նշանակություն ունի մեքենայական պարկի կառուցվածքի ճիշտ ընտրումը: Բանը նրանումն է, որ ներկայիս տրակտորային պարկի կառուցվածքը չի համապատասխանում ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման և մասնագիտացման պահանջներին: Ամբողջ տրակտորային պարկի մոտ 77 տոկոսը կազմում են ընդհանուր նշանակման թրթուրավոր տրակտորները, իսկ մնացածը՝ անիվավորները: Սակայն առաջավոր տնտեսությունների փորձը և հաշվարկները ցույց են տալիս, որ ընդհանուր պարկում անիվավորների քանակը պետք է կազմի ընդհանուր պարկի 40—60 տոկոսը (ըստ քարշային ուժի) կամ անիվավոր տրակտորների ներկայիս քանակն անհրաժեշտ է ավելացնել 2,0—2,5 անգամ: Այդ հնարավորություն կտա բարձրացնելու մի շարք աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը՝ շարահերկ կուլտուրաների ցանքի (տնկման), միջշարային տարածությունների մշակման, փոշոտման, սրսկման, պարարտացման, բեռների բարձման-դատարկման համար, ինչպես նաև կօգտագործվի որպես փոխադրամիջոց և այլն: Ռեսպուբլիկայի անիվավոր տրակտորների մոտ 70 տոկոսը գտնվում է Արարատյան հարթավայրի տնտեսություններում: Ճիշտ է, այս գործում, համամասնության տեսակետից, թույլ են տրված որոշ անճշտություններ, սակայն, փաստը մնում է փաստ, որ Արարատյան հարթավայրի տնտեսություններում անիվավոր տրակտորների համեմատաբար շատ լինելը նպաստել է ավելի շատ պրոցեսների մեքենայացմանը և այդ պրոցեսների մեքենայացման աստիճանի բարձրացմանը:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների՝ անցած մի քանի տարիների մեքենա-տրակտորային պարկի գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ ընդհանուր առմամբ, տեխնիկայի օգտագործման ցուցանիշներն իջնում են: Այսպես, անցած յոթ տարիների ընթացքում 15 ձիաուժի մեկ տրակտորի տարեկան արտադրանքը, միջին հաշվով, իջել է 107 հեկտար փափուկ վարով կամ 36,4 տոկոսով և 1964 թվականի վերջին կազմեց 187 հեկտար: Հացահատիկային կոմբայնի սեզոնային բեռնվածությունն իջել է մոտ 35 տոկոսով և 1964 թվականին կազմել 130 հեկտար: Կոլտնտեսությունների մեքենա-տրակտորային պարկի շահագործական ծախսումները (առանց աշ-

խատանքի վարձատրության) ավելացել են մոտ կիսով չափ։ Մեկ հեկտար փափուկ վարի հաշվով վառելանյութի ծախսն ավելացել է 3,8 կգ-ով կամ 26,7 տոկոսով։ Տրակտորային ագրեգատների հերթափոխի արտադրանքը, այդ նույն ժամանակամիջոցում, 2,5 հեկտար փափուկ վարից իջել է 1,3-ի, իսկ օրվա ընթացքում կատարված հերթափոխերի գործակիցը 1,6-ից՝ 1,1-ի։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրությունը տարեկան ներմուծում է հազարից ավելի նոր տրակտոր և մոտ 300 կոմբայն, բայց այդ նոր տեխնիկայի ղեկավարման համար պատրաստվող տրակտորիստ-մեքենավարների թիվը կազմում է մոտ 500—600, կամ ընդհանուր պահանջի մոտ կեսը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման բազայի ընդլայնման և մասնագիտացման ուղղությամբ որոշ աշխատանքներ նախաձեռնվում են, սակայն փաստը մնում է փաստ, որ եղած արտադրական հզորությունների օգտագործումը դեռևս հեռու է բավարար համարվելուց։ Նորոգման գործում դեռևս գերակշռում է նոր մասերի, մեխանիզմների և հանգույցների փոխանակումը, քան դրանց նորոգումը, որը հանգեցնում է նորոգման աշխատանքների ինքնարժեքի բարձրացման։ Օրինակ, ըստ նորմատիվային տվյալների, ԴՏ—54 մարկայի հիմնական նորոգման ժամանակ փոխանակվող նոր մասերի արժեքը ընդհանուր կալկուլյացիայի մեջ պետք է կազմի մոտ 40 տոկոս, սակայն այդ ռեսպուբլիկայում հասնում է 60—70 տոկոսի։

Ուրեմն, այն կարծիքը, թե մեքենա-տրակտորային պարկը տեխնիկապես անսարք է և դա է, որ առաջ է բերում նյութական արժեքների գերածախս, այնքան էլ ճիշտ չէ։ Տեխնիկան աշխատունակ է, դրա օգտագործման կազմակերպումն է վատ, որը, թերևս, պայմանավորվում է լեռնային հողագործությանը համապատասխանող տեխնիկայի բացակայությամբ։ Այդ հաստատվում է թեկուզ վերը բերված վառելանյութի, պահեստամասերի և նորոգման նյութերի գերածախսով ու տեխնիկայի ոչ արտադրողաբար օգտագործմամբ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տեխնիկայի օգտագործման ցուցանիշները համեմատաբար ավելի ցածր են տնտեսապես թույլ և արտադրական ոչ խոշոր բազա ունեցող կոլտնտեսություններում։ Դրա հիմնական պատճառն այն է, որ նման տնտեսություններում արտադրության համեմատաբար փոքր ծավալը, նորոգման բազայի և ինժեներա-տեխնիկական կադրերի բացակայությունը զգալի սահմանափակումներ են մտցնում օրըստօրե հզորացող նորագույն տեխնիկայի արմատավորման գործում։ Եվ, պատահական չէ, որ այդպիսի տնտեսություններում խիստ ցածր է տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման մակարդակը և բարձր՝ տրակտորային աշխատանքների ինքնարժեքը։

Բերվածից հետևում է, որ ռեսպուբլիկայի լեռնային հողագործության պայմաններում եղած գյուղատնտեսական տեխնիկայի շահագործումը բարելավելու և արտադրության մեքենայացումը ընդլայնելու համար խիստ անհրաժեշտ է ձեռնարկել կազմակերպչական բնույթի մի շարք միջոցառումներ՝ տեխնիկայի համակենտրոնացումն առանձին շահագործական կայաններում, մեքենայացված ջոկատների ստեղծումը, մեքենա-վարձակալային, մեքենա-անասնապահական, մեքենա-մելիորացիոն կայանների կազմակերպումը և այլն, որոնք պայմանագրային կարգով կսպասարկեն կոլտնտեսություններին։ Այդպիսի փորձեր կան Վրաստանում, Ադրբեջանում, Տաջիկստանում և այլ ռեսպուբլիկաներում, որոնք զգալի չափով նպաստում են տեխնիկայի շահավետ օգտա-



գործմանը և տնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդմանը։ Ի դեպ, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը հավանություն տվեց տեխնիկայի համակենտրոնացված օգտագործման ձևին և համանման կայանների ստեղծմանը։

Բոլորովին հնարավոր չէ պատկերացնել, թե որևէ արդյունաբերական ձեռնարկություն կադրերի պակասության կամ գործի վատ կազմակերպման պատճառով կարող է նախատեսված երկհերթ կամ եռհերթ աշխատանքը կրճատել և հասցնել մեկ հերթափոխի։ Սակայն գյուղատնտեսության մեջ, ցավոք սրտի, այդպես է, և այդ չի անհանգստացնում ինչպես իրենց՝ տնտեսությունների ղեկավարներին, այնպես էլ համապատասխան գերատեսչություններին։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ մասում յուրաքանչյուր տրակտորիստ-մեքենավար աշխատանքի է դուրս գալիս երկու օրը մեկ անգամ, կամ մեկ ամսում՝ 10—13 անգամ և ընդամենը կատարում 6—8 հերթափոխային նորմա, իսկ տարվա ընթացքում՝ 90—110։ Դա նշանակում է, որ մեխանիզատորը տարվա կեսից ավելին չի մասնակցում հանրային աշխատանքներին։ Մինչդեռ ռեսպուբլիկայում մեխանիզատորական կադրերի խիստ պակաս է զգացվում։

Իսկ թեկուզ մի քանի հիմնական աշխատանքները (վար, կուլտիվացիա, փոցխում, ցանք և այլն) ագրեգատների երկհերթ աշխատանքի պայմաններում կազմակերպելը հավասարազոր կլինի ընդհանուր նշանակման թրթուրավոր տրակտորային պարկը և մյուս մեքենա-գործիքների թիվը մոտ 35 տոկոսով ավելացնելուն։ Այս միջոցառման կիրառումից ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան կշահեին մոտ 4 միլիոն ռուբլի։

Տրակտորային բրիգադների աշխատանքի լավ կազմակերպման և մեքենայական պարկի շահագործական ցուցանիշների բարելավման համար անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր բրիգադ ունենա իր շարժական դաշտային տնակը (վագոն) և մեքենաների լիցքավորման սայլակները. դրանց բացակայության հետևանքով տրակտորիստ-մեքենավարները ստիպված, յուրաքանչյուր հերթափոխից հետո, լիցքավորման պատրվակով տրակտորը դաշտից տեղափոխում են գյուղ և հակառակը։ Մոտավոր հաշվարկները ցույց են տալիս, որ միայն 1964 թվականին այդ պատրվակով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում տրակտորները կատարել են մոտ 2,2 միլիոն կմ դատարկ վազք, որի համար ծախսվել է մոտ 3,3 հազար տոննա վառելանյութ։ Եվ հիմնականում այդ է պատճառը, որ մեկ հեկտար փափուկ վարի հաշվով վառելանյութի ծախսը վերջին յոթ տարիների ընթացքում ավելացել է 3,8 կիլոգրամով։ Նախկինում ռեսպուբլիկայում կային շարժական տնակներ և 800-ից ավելի լիցքավորման ձիաքարշ սայլակներ։ ՄՏ կայանների վերակազմումից հետո դրանք խոտանվեցին, բայց դրանց փոխարեն ռեսպուբլիկա չներմուծվեցին նորերը։ Տրակտորների և կոմբայնների լիցքավորման համար նպատակահարմար է ձեռք բերել ՄԶ—3904 մարկայի լիցքավորման մեքենայացված սայլակ։ Այդ սայլակը փոխարինում է 3—4 ավտոցիստեռնի կամ 6—8 ձիու աշխատանքին։

Հայգյուղտնտտեխնիկայի ռեսպուբլիկական միավորումը և պետպլանը այս ուղղությամբ պետք է մտահոգվեն և մոտակա երկու-երեք տարիներում կոլտնտեսություններին ու սովխոզներին ապահովեն այդպիսի շարժական տնակներով ու լիցքավորման սայլակներով։ Ընդ որում ռեսպուբլիկայի արդյունաբե-

րական ձեռնարկություններից մեկում կարելի է կազմակերպել այդպիսի տնակների և սայլակների թողարկումը, թեկուզ ավելի պարզ կառուցվածքով։

Խրախուսելի պետք է համարել, որ վերջին 2—3 տարիների ընթացքում Հայգյուղտնտեխնիկայի ռեսպուբլիկական միավորումը կազմակերպչական մեծ աշխատանք կատարեց՝ իր վրա վերցնելով բազմաթիվ կոլտնտեսությունների մեքենայական պարկի տեխնիկական սպասարկման գործը։ Սակայն արդարությունը պահանջում է նշել, որ տեխնիկական սպասարկման, ինչպես և նորոգման պլանավորման գործում Հայգյուղտնտեխնիկան թույլ է տալիս մի անճշտություն։ Դա այն է, որ տեխնիկական սպասարկման և նորոգման գործում Հայգյուղտնտեխնիկայի շրջանային միավորների արտադրական գործունեության պլանավորումը հիմնականում կատարվում է ըստ համախառն արժեքի, որում հաշվի չի առնվում տեխնիկական սպասարկման ենթակա կամ նորոգումից դուրս եկած տեխնիկայի շահագործական ցուցանիշների (նյութական միջոցների ծախսի իջեցումը, տեխնիկայի օգտագործման երաշխավորված երկարատև ժամկետը և այլն) բարձրացումը։ Ժամանակն է հրաժարվել այդպիսի մոտեցումից, որը ձեռնտու չէ կոլտնտեսություններին։

Մի երկու խոսք ավտոպարկի շահագործման մասին։ Գյուղատնտեսական բեռների փոխադրման ծավալը տարեցտարի ավելանում է ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում։ Միայն 1964 թվականին ավտոմեքենաներով փոխադրվեց մոտ 12 միլիոն տոննա բեռ։ Ընդ որում, տվյալ բեռների փոխադրման աշխատանքների 80—85 տոկոսը կատարվում է տնտեսությունների ներսում։ Հաշվարկված է, որ փոխադրման աշխատանքների վրա կատարված աշխատանքային ծախսումները կազմում են արտադրության ընդհանուր ծախսումների մոտ 30 տոկոսը, իսկ գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքում դա հասնում է 35—40-ի։ Ինչո՞ւ այդքան բարձր են տրանսպորտի շահագործման ծախսերը։ Դրա հիմնական պատճառները պետք է փնտրել ավտոմեքենաների ու անիվավոր տրակտորների միջև փոխադրական աշխատանքների պլանավորման ոչ ճիշտ համամասնության, հանդիպակաց բեռների փոխադրման գործը չկազմակերպելու, ավտոտրանսպորտային կցասայլակների անբավարար քանակի և այդ նպատակով եղած տեխնիկայի վատ շահագործման մեջ։

Բավական է ասել, որ 1960—1964 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ավտոպարկի դատարկ վազքը կազմել է ընդհանուր վազքի գրեթե կեսը (47—49 տոկոս)։ Եթե նույնիսկ 20 տոկոսի սահմաններում կազմակերպվի հանդիպակաց բեռների փոխադրում, որի համար հնարավորություններ կան, ապա դա հավասարազոր կլինի կոլտնտեսությունների ու սովխոզների ավտոմոբիլային պարկի 10 տոկոսով մեծացմանը, կամ 700 մեքենայով համալրելուն։ Հաշվարկված է նաև, որ տնտեսապես ձեռնտու է ներտնտեսային փոխադրումները անիվավոր տրակտորներով կատարելը, որի ծախսերը, ավտոմեքենաների համեմատությամբ, պակաս են 2,0—2,5 անգամ։ Ընդհանրապես պետք է մտածել նաև յուրաքանչյուր շրջանում ավտոմեքենաների համակենտրոնացման և ավտոշարասյուների ստեղծման մասին։

Այս հիմնական հարցերի լուծումը կնպաստի լեռնային հողագործության պայմաններում գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման բարելավմանը, հետևապես և տնտեսություններում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԱԶԴԱԿԸ

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Արդյունաբերական արտադրության վիճակը ճիշտ գնահատելու համար, ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի սեպտեմբերյան պլենումը, անհրաժեշտ է պարզ պատկերացում ունենալ ոչ միայն ձեռք բերած հաջողությունների, այլև թերությունների ու դժվարությունների և դեռևս չլուծված այն խնդիրների մասին, որոնք առկա են արդյունաբերության ասպարեզում։ Վիթխարի չափերով աճած սոցիալիստական արտադրության մասշտաբները, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն առավելագույն արագությամբ արտադրության մեջ արմատավորելու անհրաժեշտությունն առաջին պլան են մղում հանրային արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման, կենդանի և առարկայացված աշխատանքի ծախսումների խնայողության, կապիտալ ներդրումների և հիմնական արտադրական ֆոնդերի փոխհատուցման անշեղ և նշանակալի ավելացման անհրաժեշտությունը։

Սոցիալիստական տնտեսությունն այժմ ապրում է իր զարգացման այն էտապը, երբ նրա հետագա առաջընթացը գնալով ավելի ու ավելի մեծ չափերով է կախված արդեն ստեղծված արտադրական կարողությունների և հիմնական ֆոնդերի, նրա բոլոր ներքին ռեսուրսների էլ ավելի արդյունավետ օգտագործումից։ Այս կապակցությամբ նորից առաջնահերթ նշանակություն են ստանում հասարակական աշխատանքի խնայողության և նրա արտադրողականության հետագա բարձրացման հարցերը։ Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթը, որ «աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար», այսօր առանձնակի կարևորություն է ստանում սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման համար մղվող պայքարում։ Այժմ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում է ԱՄՆ-ի արդյունաբերության 65 տոկոսը, այնինչ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն ԱՄՆ-ում ավելի է 2—2,5 անգամ։ Ճիշտ է, յոթնամյակի անցած հինգ տարում աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աճել է 31, իսկ Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ՝ 22 տոկոսով, բայց և այնպես աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը վերջին տարիների ընթացքում նվազել են, դրա հետևանքով դանդաղել են նաև ազգային եկամտի և արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերը։

*Արդյունաբերության համախառն արտադրանքի աճի և աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի միջև գոյություն ունի սերտ կապ, որը երևում է ներքոհիշյալ աղյուսակում բերված տվյալներից.*

(Տոկոսներով 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ)

| *Տարիներ* | *ՍՍՌՄ* | | *Հայկ. ՍՍՌ* | |
|---|---|---|---|---|
| | *համախառն արտադրանքի աճը* | *աշխատանքի արտադրողականության աճը* | *համախառն արտադրանքի աճը* | *աշխատանքի արտադրողականության աճը* |
| 1958 | 110 | 106 | 111 | 105 |
| 1959 | 111 | 107 | 112 | 109 |
| 1964 | 107 | 104 | 107 | 102 |

*Ինչպես ցույց են տալիս տվյալները, արդյունաբերության արտադրանքի աճի տեմպերը ՍՍՌՄ-ում 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, նվազել են 3, իսկ ռեսպուբլիկայում՝ 4 տոկոսով, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը համապատասխանաբար՝ 2 և 3 տոկոսով։*

*ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներն արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին՝ նշանավորեց արդյունաբերության ամբողջ աշխատանքի բնագավառում մի այնպիսի արմատական ռեֆորմ, որը տալիս է սոցիալիստական տնտեսության արդյունավետության բարձրացման, այդ թվում նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման բանալին։*

*Խոսքը վերաբերում է նախ և առաջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ռեզերվների հայտաբերմանն ու օգտագործմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացման բոլոր հիմնական գործոնների լրիվին օգտագործմանը։*

*Արդյունաբերական արտադրանքի աճը, ինչպես հայտնի է, տեղի է ունենում երկու գործոնների՝ արդյունաբերության մեջ աշխատող անձնակազմի թվաքանակի ավելացման և դրանց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի արտադրողականության աճը ոչ միայն արդյունաբերական արտադրանքի աճի գլխավոր աղբյուրն է, այլև հասարակական աշխատանքի խնայողության հիմնական ուղին։ Ինչպես հայտնի է, այժմ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի աճի 2/3-ն ստացվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Իրագործվող տնտեսական ռեֆորմը ապահովելու է աշխատանքի արտադրողականության դերի էլ ավելի բարձրացումը ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում։*

*Այս տեսակետից դրությունը յուրահատուկ է Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ։ Աշխատանքի արտադրողականության հաշվին այստեղ ստացվում է արտադրանքի աճի միայն 1/3-ը, իսկ մնացած 2/3-ը ստացվում է անձնակազմի թվաքանակի աճի հաշվին։ Թեև արդյունաբերության տարբեր ճյուղերում այդ հարաբերությունը տարբեր է, օրինակ՝ թեթև արդյունաբերության մեջ համախառն արտադրանքի աճի միայն 30 տոկոսն է աշխատանքի արտա-*



*դրողականության բարձրացման արդյունք, իսկ փայտամշակման մեջ՝ 77 տոկոսը։ Բնորոշ է և այն հարաբերակցությունը, որը գոյություն ունի ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ համախառն արտադրանքի, անձնակազմի թվաքանակի և աշխատանքի արտադրողականության աճի միջև։ Յոթնամյակի անցած հինգ տարում ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 58, անձնակազմի թվաքանակը 27, իսկ աշխատանքի արտադրողականությունը 31 տոկոսով։ Մինչդեռ ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ պատկերն այլ է։ Համախառն արտադրանքն այստեղ աճել է 63, անձնակազմի թվաքանակը՝ 50, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 22 տոկոսով։*

*Այս նշանակում է, որ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յոթնամյակի տարիներին ավելի մեծ չափերով զարգացել է էքստենսիվ եղանակով, այսինքն՝ նոր ձեռնարկությունների և ցեխերի գործարկման շնորհիվ։ Յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկայում կառուցվել և գործարկվել են մոտ 300 նոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք արդյունաբերական աշխատողների մեծ պահանջ հարուցեցին։*

*Սակայն այժմ խնդիրն այլ կերպ է դրվում։ Պետք է ամեն ջանք գործադրել արտադրական նոր կարողությունների ու հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու միջոցով հասնել աշխատանքի արտադրողականության զգալի աճի։ Այս տեսակետից մեծ նշանակություն ունի աշխատանքի ֆոնդազինվածության, նրա արտադրողականության բարձրացման և ֆոնդահատույցի աճի միջև ճիշտ հարաբերակցության հաստատումը։ Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը պետք է գերազանցեն աշխատանքի ֆոնդազինվածության աճի տեմպերին։ Այդ դեպքում միայն կարող է աճել ֆոնդահատույցը, որն արդյունաբերության արդյունավետության կարևորագույն ցուցանիշն է։*

*Փաստերը վկայում են, որ երբ աշխատանքի արտադրողականությունն աճում է ավելի բարձր տեմպերով, քան աշխատանքի ֆոնդազինվածությունը, իրոք որ ֆոնդահատույցն աճում է։ Բայց վերջին տարիների ընթացքում նկատում ենք հակառակ պատկերը։ Աշխատանքի ֆոնդազինվածությունն աճում է ավելի արագ, քան նրա արտադրողականությունը և դրա հետևանքով ֆոնդահատույցը նվազում է։*

Աշխատանքի ֆոնդազինվածության աճի, արտադրողականության աճի և ֆոնդահատույցի դինամիկայի հարաբերակցությունը Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ *(տոկոսներով 1958 թվականի նկատմամբ)* [1]

| *Տարիներ* | *Հիմնական ֆոնդերի աճը* | *Աշխատանքի ֆոնդազինվածության աճը* | *Աշխատանքի արտադրողական. աճը* | *Համախառն արտադրանքի աճը* | *Ֆոնդահատույցի դինամիկան* |
|---|---|---|---|---|---|
| 1958 | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| 1959 | 110 | 106 | 109 | 112 | 102 |
| 1960 | 124 | 100 | 112 | 125 | 101 |
| 1961 | 137 | 102 | 116 | 136 | 101 |
| 1962 | 161 | 115 | 119 | 149 | 92 |
| 1963 | 185 | 123 | 122 | 163 | 88 |
| 1964 | 210 | 133 | 125 | 174 | 83 |

Բերված տվյալները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ մինչև 1961 թվականը աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է ավելի արագ, քան նրա ֆոնդազինվածությունը և դրա հետևանքով ֆոնդահատույցը թեև զգալի աճ չէր տալիս, բայց և չէր էլ նվազում։

Դրությունն զգալիորեն փոխվեց հետագա տարիներին, երբ շարք մտան բազմաթիվ նոր ձեռնարկություններ, որոնց արտադրական ֆոնդերն անբավարար օգտագործվեցին և դրա հետևանքով աշխատանքի արտադրողականությունը համապատասխան չափերով չաճեց. այդ իր հերթին հանգեցրեց ֆոնդահատույցի նվազմանը։ Յոթնամյակի անցած 6 տարում աշխատանքի ֆոնդազինվածությունն աճեց 33, իսկ արտադրողականությունը՝ 25 տոկոսով, այլ խոսքով՝ խախտվեց այն օրենքը, ըստ որի աշխատանքի արտադրողականության բարձրացումը պետք է գերազանցի աշխատանքի ֆոնդազինվածության աճին։

Ինչպես հայտնի է, տնտեսական օրենքների խախտումը տալիս է բացասական հետևանքներ։ Դա նկատելի է և այս դեպքում։ Նշված օրենքի խախտման հետևանքով արդյունաբերության ֆոնդահատույցը ռեսպուբլիկայում 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, նվազեց 17 տոկոսով, մինչդեռ ՍՍՌՄ արդյունաբերության մեջ այն նվազել է ընդամենը 8 տոկոսով։ Այստեղից չի կարելի հանգել այն եզրակացության, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության վիճակն ավելի վատ է։ Պետք է նկատի ունենալ, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության ճյուղային կառուցվածքի յուրահատկությունները բացասաբար են անդրադառնում ինչպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, այնպես էլ ֆոնդահատույցի ցուցանիշների վրա։ Որպեսզի այդ առանձնահատկությունները և աշխատանքի արտադրողականության ֆոնդահատույցի ցուցանիշի վրա դրանց ազդեցությունն ավելի հասկանալի լինի, անհրաժեշտ է վերլուծել վերը նշված ցուցանիշների հարաբերակցությունն ըստ արդյունաբերության առանձին ճյուղերի։

Ինչպես ցույց են տալիս տվյալները, աշխատանքի ֆոնդազինվածությունն առանձնապես բարձր տեմպերով է աճում արտադրության միջոցների արտադրության ճյուղերում, բայց արդյունաբերության միմիայն մեկ ճյուղում՝ այն է, գունավոր մետալուրգիայի ճյուղում է, որ աշխատանքի արտադրողականության աճի տեմպը գերազանցում է նրա ֆոնդազինվածության աճի տեմպը և այդ իսկ պատճառով արդյունաբերության հենց այդ ճյուղում է, որ ֆոնդահատույցը 1964 թվականին (1958-ի համեմատությամբ), մասնակի չափով աճել է։ Արդյունաբերության մնացած բոլոր ճյուղերում նկատելի է հակառակ պրոցեսը։ Յուրահատուկ պատկեր է նկատվում մեքենաշինության և մետաղամշակման ճյուղում, որտեղ աշխատանքի արտադրողականության աճը նշված ժամանակամիջոցում թեև մեկ տոկոսով գերազանցել է նրա ֆոնդազինվածության աճը, բայց և այնպես ֆոնդահատույցը նվազել է 5,5 տոկոսով։ Դա ունի իր ուրույն պատճառները, ուստի, ընդհանուր օրինաչափության վրա չի կարող ազդել։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի համեմատաբար ցածր տեմպերի պատճառներից են նրա ճյուղային կառուցվածքի յուրահատկությունները։ Իրականում ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ֆոնդատար ճյուղերը համեմատաբար մեծ տեսակարար կշիռ ունեն և, որ կարևորն է, դրանք զարգանում են ավելի արագ տեմպերով։ Իսկ



ֆոնդատար ճյուղերի արագ զարգացումը (դրանց շարքին են պատկանում գլխավորապես էլեկտրաէներգիայի արտադրությունը և քիմիական արդյունաբերությունը), աշխատանքի արտադրողականության որոշման գոյություն ունեցող մեթոդիկայի պայմաններում, որպես կանոն, հակադարձ ներգործություն է ունենում մեկ աշխատողի արտադրանքի արժեքային մեծության վրա։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ճյուղային կառուցվածքի առանձնահատկությունների մասին պատկերացում են տալիս ստորև բերված տվյալները։

ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի ճյուղային կառուցվածքը *(տոկոսով ամբողջի նկատմամբ)*

| | ՍՍՌՄ | | Հայկ. ՍՍՌ | |
|---|---|---|---|---|
| | առ 1/I 1960 թ. | առ 1/I 1964 թ. | առ 1/I 1960 թ. | առ 1/I 1964 թ. |
| Ամբողջ արդյունաբերությունը . . | 100 | 100 | 100 | 100 |
| Այդ թվում՝ | | | | |
| Էլեկտրական էներգիայի արտադրություն . . . . . . . . . | 11,9 | 14,2 | 31,7 | 25,7 |
| Քիմիական արդյունաբերություն . . . . . . . . . . . | 4,9 | 7,3 | 11,4 | 15,1 |

Ինչպես տեսնում ենք, արդյունաբերության ֆոնդատար ճյուղերի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայում երկու անգամ մեծ է ՍՍՌՄ արդյունաբերության միջին ցուցանիշներից. դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ ոչ-ֆոնդատար այնպիսի ճյուղեր, ինչպիսին են՝ թեթև և սննդի արդյունաբերությունը, մի շարք պատճառներով (հիմնականում հումքի անբավարար ապահովվածության հետևանքով), վերջին տարիներին դանդաղ են զարգանում։ Այդ իսկ պատճառով աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության նշված ճյուղերում անբավարար տեմպերով է բարձրանում։ Բայց այս բոլորը աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերի նվազման օբյեկտիվ պատճառներն են։ Կան նաև սուբյեկտիվ պատճառներ։ Փաստերը վկայում են, որ վերջին տարիների ընթացքում արդյունաբերական ձեռնարկությունների մեկ քառորդը թերակատարում է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները։ 1962 թվականին այդ պլանները չեն կատարել ռեսպուբլիկայի ժողտնտխորհի 60, 1963 թվականին՝ 50 ձեռնարկություն։

Ճիշտ է, ռեսպուբլիկայի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններում լուրջ քայլեր են արվում աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակով (Կիրովի անվան, Երևանի ալյումինի, ավտոդողերի գործարանները և այլն), բայց, ինչպես վկայում են փաստերը, կան և շատ ձեռնարկություններ, որտեղ պատշաճը չի արվում նոր ռեզերվները հայտաբերելու և գործադրելու համար։

Աշխատանքի արտադրողականության պլանավորման ասպարեզում ևս գոյություն ունեն էական թերություններ։

1964 թվականին ժողտնտխորհի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները կատարվեցին 104,4 տոկոսով, բայց 1963 թվականի համեմատությամբ այն աճեց ընդամենը մոտ 2 տոկոսով։ Բանն այն է, որ ձեռնարկությունների 50 տոկոսը (140 ձեռնարկություն)

*1964 թվականին ստացել է աշխատանքի արտադրողականության ավելի ցածր պլան, քան 1963 թվականի փաստացի մակարդակն է եղել և, չնայած դրան, նշված ձեռնարկություններից 56-ը չեն կատարել նաև այդ առաջադրանքը:*

*Ինչպես ցույց տվեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, լուրջ թերություններ կային թե արդյունաբերության կառավարման, թե պլանավորման և թե արդյունաբերական արտադրանքի նյութական խթանման և արդյունաբերության աշխատողների տնտեսական շահագրգռվածության բնագավառում, որոնք, բնականաբար, բացասաբար են անդրադառնում արդյունաբերության արդյունավետության, ինչպես և աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա: «Արդյունաբերական արտադրության պլանավորումը կատարելագործելու և տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1965 թվականի հոկտեմբերի 4-ի որոշման մեջ ընդգծված է, որ «Չի ստեղծված աշխատողների պատշաճ նյութական շահագրգռվածություն ձեռնարկությունների աշխատանքի ընդհանուր արդյունքների բարելավման, իրենց ներքին ռեզերվների օգտագործման և արդյունաբերության շահութաբերության բարձրացման գործում»:*

*Այս ասպարեզում գոյություն ունեցող թերությունները վերացնելու նպատակով պարտիան և կառավարությունը որոշեցին արդյունաբերության աշխատողների վարձատրությունն անմիջական կախման մեջ դնել ո՛չ միայն նրանց անհատական աշխատանքի արդյունքներից, այլև ձեռնարկությունների աշխատանքի ընդհանուր արդյունքներից:*

*Պլանավորման նոր սիստեմի աշխատանքի արտադրողականության բարձրացման ցուցանիշը պետական պլանում չի նախատեսվում, բայց այդ ցուցանիշը, ինչպես և արտադրանքի ինքնարժեքը, աշխատողների թվաքանակը, միջին աշխատավարձը և արդյունաբերության աշխատանքի վերլուծության ու տնտեսական արդյունքների գնահատման համար անհրաժեշտ այլ ցուցանիշներ պետք է պլանավորեն իրենք՝ ձեռնարկությունները և արտացոլեն իրենց վիճակագրական հաշվետվությունների մեջ: Ընդ որում, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի որոշման մեջ, հատկապես, ընդգծված է, որ «հատուկ ուշադրություն պետք է հատկացվի աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացմանը՝ որպես արտադրության աճի և ժողովրդի բարեկեցության վերելքի տեմպերի արագացման վճռական պայմանի»:*

*Աշխատանքի արտադրողականության հետագա արագ աճը և ամբողջ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը նոր հնգամյակի միջուկն է կազմում: Հնգամյակի տարիներին արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը աճելու է 33—35 տոկոսով:*

*Աշխատանքի արտադրողականության տեմպերի աճը ամբողջապես համապատասխանում է տեխնիկական պրոգրեսի, արտադրության և աշխատանքի կազմակերպման բարելավման մասին պարտիայի Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումի վարած կուրսին:*

---

# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ



## ԼԱՅՆԱԽՈՀ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԸ

(ԱԼ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Հորիզոնի վրա ճամփաները խաչաձևվում էին: Նոր նախիջևանցի պատանին որո՞վ պետք է ընթանար: Նա համառորեն որոնում էր՝ ուսումնասիրելով գրքերի աշխարհին ու շրջապատը: Պատերազմից առաջ նա ճանաչված հրապարակախոս էր և գրաքննադատ: Անսովոր հաջողությամբ գեղարվեստական խոսքի էությունն էր վերլուծում, հեղինակային ինքնատիպության չափը որոշում. և՛ խոսքով, և՛ գործով բախվում տիրապետող կարծիքին: Սկսվեց պատերազմը. պինվորներին պաշտոնական կարծիքի կողմնակիցների օգտին արյունալի կռվի կոչելու փոխարեն, նրանց բոլորովին այլ մարտի էր նախապատրաստում: Երբ բորբոքվեց Հոկտեմբերյան մեծ ճակատամարտը, նա կանգնեց հրամանատարական բարձունքի վրա, և եղավ մի պահ, որ նորաստեղծ բանվորական ռեսպուբլիկայի բոլոր կորքերի հրամանատարը դարձավ:

Իր վերելքի համար նա պարտակա՞ն էր արդյոք անցյալ հրապարակախոսական գործունեությանը: Անպայման: Ալ. Մյասնիկյանը մեծ նշանակություն էր տալիս հրապարակախոսի կոչմանը: Երբ պատմաբան Լեոն Միք. Նալբանդյանին որակեց «գլխավորապես իբրև բանաստեղծ», Ալ. Մյասնիկյանն այդ համարեց «տարօրինակ թյուրիմացություն» և վարմանքով նշեց, թե ինչպես Միք. Նալբանդյանը «հերքվում է որպես հրապարակախոս, և բանաստեղծ է հայտարարվում»: Սրանով նա բանաստեղծին չէր թերագնահատում, այլ միայն ընդգծում էր, թե Միք. Նալբանդյանի մեջ հրապարակախոսն է գերակշռում:

Ժամանակի կենսահույզ խնդիրներն արտահայտող, հասարակության առաջադեմ խավերի շահերը պաշտպանող հրապարակախոսն աչքի ընկնող քաղաքական դեմք է, հասարակական գործիչ: Նրա և՛ ճիշտ գրվածքների, և՛ արդարացի գործերի համար քիչ է սոսկ ժամանակի ոգին ընկալելը: Նրան պետք են հարուստ ու հիմնավոր գիտելիքներ, պատշաճ ստեղծագործական ձիրք՝ դարաշրջանի բնույթը, հասարակական զարգացման տնտեսական ու սոցիալ-քաղաքական դրդապատճառներն ու շարժիչ ուժերը բացահայտելու և բացատրելու, հասարակական կյանքի վրա ներգործելու համար: Ալ. Մյասնիկյան հրապարակախոսը օժտված էր այդ առավելություններով: Ուստի, գրիչ վերցնելիս նա առաջին հերթին ժողովրդի հսկայական մեծամաս-

նության ապրած տնտեսական և քաղաքական ծանր վիճակը հաղթահարելու ուղիներն էր մատնացույց անում: Վերլուծելով համառուսաստանյան և կովկասյան տնտեսական կյանքը, 1912 թվականին նա պարզ տեսնում էր, թե ինչպես այն ենթակա է փլուզման և դրանով «հարթելու է այն ուղին, որով արդի տնտեսական կյանքը դիմում է դեպի կոլեկտիվիզմ»: Այդ փլուզումից հետո պետք է փոխվեր նաև հայոց կյանքը:

Հայ աշխատավորների ազատագրական իղձերի թարգմաններն անցյալում եղել էին Խաչատուր Աբովյանն ու Միքայել Նալբանդյանը, այժմ այդ կռվի ռահվիրաններն էին դառնում Ստեփան Շահումյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը և նրանց մյուս համախոհները: Սկզբում հերոսը դեմոկրատ լուսավորիչն էր, հետո՝ ռևոլյուցիոներ դեմոկրատը, այժմ ասպարեզ էր իջնում պրոլետարական ռևոլյուցիոները: Դարի ազատագրական պայքարի բարձրակետը պրոլետարական ռևոլյուցիոն շարժումն էր: Այնտեղ կողք-կողքի ընթանում էին բանվորը, ընչազուրկ գյուղացին և առաջադեմ ու լուսավոր ինտելիգենտը: Տարբեր ազգերի զավակներ էին նրանք: Չկար ազգային խտրականություն: Համատեղ սոցիալական կռիվը նրանց բարձրացրել էր ազգային համերաշխության գագաթը, որը կոչվում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմ: Այնտեղ էր նաև Ալ. Մյասնիկյանը: Ուրիշների հետ նա էլ մերժել էր ազգայնականն ու ձեռնոց նետել դրան:

Արդար գործի հաղթանակի գրավականներից մեկը դարաշրջանի էության ճիշտ ըմբռնումն է: Սկսվող դարաշրջանի ճիշտ բնութագրումը, նրա շարժումը լիցքավորող ուժերի բազմակողմանի ճանաչումն ու վերլուծությունը, հեռանկարների կանխատեսումը սովորական մահկանացուին ունակ էին բարձրացնելու հանճարի աստիճանին:

Ո՞վ եղավ այդ հանճարը:

Անունը տալուց առաջ հիշատակենք հանճարի մարքսիստական բնորոշումներից մեկը. «Հանճարն այդ այնքան կանոնավոր մարդ է, որ նա առանց սահմանափակումների, լիովին հասկանում է իր դարաշրջանի շարժիչ ուժերը և վարվում է այնպես, ինչպես այդ դարաշրջանն է պահանջում» (Լունաչարսկի, 1928 թ.):

Այդ «կանոնավոր մարդը», այդ հանճարը Վ. Ի. Լենինն էր: Եվ նա միայնակ չէր: «Մեծ մարդիկ հազվադեպ են միայնակ հանդես գալիս», ասում է ֆրանսիացի մեծ ռոմանտիկը: Վ. Ի. Լենինը գլխավորում էր առաջադիմության համար մարտնչող հերոսների մի ամբողջ սերունդ: Այդ սերնդի մեջ էր նաև Մյասնիկյանը:

●

Երբ 1894-ին նոր նախիջևանցի մանր առևտրական Աստվածատուրի որդի ութամյա Ալյոշան հայրենի քաղաքի հայկական Սուրբ Խաչ վանքի ծխական դպրոցը մտավ, այնտեղ և՛ ուսման, և՛ դաստիարակության վրա խոր դրոշմված էր հայկական ազգային կնիքը: Նույնն էր նաև Նոր Նախիջևանի հայոց թեմական դպրոցում, ուր նա սովորեց 1898-ից մինչև 1904 թվականը: Մոսկվայի Արևելյան լեզուների ինստիտուտը՝ հայտնի Լազարյան ճեմարանը, և Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետի տնտեսագիտական բաժինը, որն ավարտեց 1911-ին, ընդարձակեցին երիտասարդի մտահորիզոնը, նրան դուրս բերին հասարակական, քաղաքական գործունեության լայն ասպարեզ: 1906 թվականին նա մտավ ՌՍԴԲՊ շարքերն ու սկսեց ապրել ռևոլյուցիոն գործչի՝ վտանգներով լի բուռն կյանքով:

Որպես մարքսիստ ռևոլյուցիոներ, որպես պրոլետարական ինտերնացիոնալիստ ձևավորվելու ճանապարհին. և հետագայում էլ, Մյասնիկյանը երբեք չանտեսեց հայկական կյանքի յուրահատկությունը, բայց ավելի պայծառ հայացքով տեսավ ուրիշ ազգերի հետ հայերին կամրջող ընդհանուրը: Այս կարևոր առնչության և ազգային ճակատագրի առանձնահատկությունների ճիշտ ըմբռնումը նրան մղեց դեպի միջազգայնականություն, դեպի, ինչպես կասեր Բ. Կնունյանցը, «համայն Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի» հետ համատեղ պայքարի գաղափարն ու բուն պայքարը:

Այսպիսով, հայ ուսանողներից մեկը (երբ ազգն այնքան քիչ ուսանող ուներ և ուսյալ ու կրթյալ մարդկանց այնքան մեծ կարիք) դառնում էր ինտերնացիոնալիստ, կոխ չգնալով ազգայնական գործիչների ողբ ու կականին, ազգի ճակատագրի վերաբերյալ նրանց մերթ աղեկտուր հառաչանքներին, և մերթ ամպագորգոռ հայտարարություններին:

Ալ. Մյասնիկյանի սերնդից ելած կարկառուն ռևոլյուցիոներները դասակարգայինը դրին առաջին պլանի վրա և նրա լուծման մեջ տեսան ազգային և այլ սոցիալական հարցերի արմատական լուծման երաշխիքը: Եվ իրենք էլ ընկղմվեցին միևնույն նպատակի համար բազմազգ պրոլետարիատի մղած պայքարի մեծ ծովը, որի գոռ ալիքների շառաչների միջից հնչում էր Բ. Կնունյանցի խոսքը. «...քաղաքական անցքերի գնահատման հարցում սոցիալիստի վրա նրա ազգային ծագումը ոչ մի ազդեցություն չունի»:

Ալ. Մյասնիկյանը սովորական «ազգասերի» անուն չէր ուզում վաստակել, որով հրապուրվել կարող էր միայն բուրժուական ինտելիգենտը: Այդ էր պատճառը, որ երբ հրապարակի վրա բորբոքվում էր արևմտահայության ճակատագրի հարցը, նա այն ոչ թե պարզեցնում էր, այլ դրա բարդությունը ցուցադրելու համար բոլորի ուշադրությունը հրավիրում էր հարցի յուրահատուկ կողմի՝ հայկական պայմանների վրա: 1913 թվականին, երբ սովորական «ազգասերը» փլքված ու խանդավառված էր արևմտյան դիվանագետների ու քաղաքագետների խոստումներով և ահա-ահա հարցը լուծված էր համարում, Ալ. Մյասնիկյանը, բազմակողմանիորեն վերլուծելով իրադրությունը, գրում էր, որ Թյուրքիայի վիճակը «լավանալու հույս չի ներշնչում»:



Այս գրում էր Ալ. Մյասնիկյանը 1915-ի ապրիլի 24-ից ընդամենը մեկ տարի ու չորս ամիս առաջ: «Ազգասերի» համար այդ կանխատեսումը կարող էր պարմանալի թվալ, մինչդեռ Ալ. Մյասնիկյանն իրեն հաշիվ էր տալիս, որ ով-ով, բայց քաղաքական գործիչն անպայման պետք է արագ կանխատեսելու ընդունակություն ունենա: Այլ կերպ կառքը հեռու չի տանի, գործն առաջ չի գնա:

Բայց եթե բուրժուական նացիոնալիստները ելնում էին ժողովրդի ազատագրության, նրան հուզող հարցերի լուծման կեղծ ու վտանգավոր դիրքերից, որդեգրելով արկածախնդրական տակտիկա, ապա դրանց հակառակ, կային նաև զգաստ մտածողներ: Վերջիններիս շարքում էր Ալ. Մյասնիկյանը, որը աշխատավոր ժողովրդի փրկության միջոցը համարում էր բուրժուական կարգերի տապալումը, սոցիալական ռևոլյուցիայի հաղթանակը:

Հայ մարքսիստներից շատերը դեռ ասպարեզի վրա չէին բարձրացել, երբ Ստ. Շահումյանը գրում էր, թե «Հասարակական գործչի անունը արժանավորապես կարող է կրել մեր ժամանակներում միայն նա, ով ունի որոշ գիտական հայացքներ հասարակությունների, ժողովուրդների կարգացման օրենքների մասին, ուրիշ խոսքով՝ ով ունի որոշ հասարակական կրթություն, հետո՝ ով ուսումնասիրել և ըմբռնել է իր ժողովրդի առաջադիմության պայմանները և պինդ է որոշ, իր բոլոր մանրամասնություններով պարզված, գիտակցված գործունեության ծրագրով»:

Ժողովուրդների փոխհարաբերությունները քննելիս Ալ. Մյասնիկյանը, չանտեսելով ազգայինի տեղն ու դերը, շեշտը դասակարգայինի վրա էր դնում, դրանով էր գլխավորապես պայմանավորում եղածն ու լինելիքը: Ազգային առանձնահատուկը չի կարող մեկի ճնշման պատճառ լինել, մյուսի բարձրացման: Իսկ առհասարակ ճնշողները տվյալ ազգի կեղեքիչներ են, որոնք շահագործում են իրենց և այլազգի աշխատավորներին: Թափանցելով խնդրի էության մեջ Ալ. Մյասնիկյանը պարզաբանում էր, թե ժողովուրդներից ու ազգերից ամեն մեկը ի՜նչ կարող էր ձեռք բերել, եթե սոցիալ-տնտեսական կարգերն այլ լինեին, և բարքերն էլ ուրիշ: Ազգերի փոխօգնությունը, նրանց հաշտ ու խաղաղ կյանքն ամենայն վերելքի ու առաջադիմության երաշխիք են: Բայց դա հնարավոր է աշխատավոր դասակարգերի համատեղ պայքարի միջոցով, նրանց դասակարգային համերաշխության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի պատվանդանի վրա:

Ազգային սնապարծությանն այլևս տեղ չի մնում, երբ հասարակական կյանքի կարգացման օրինաչափությունների խոր ըմբռնումը բերում է այն համոզման, որ ազգի կազմավորման պրոցեսը միաժամանակ մի որոշ կուլտուրայի, նյութական և հոգևոր հարստությունների ստեղծման պատմական պրոցես է: Խնդրի նկատմամբ պատմադասակարգային մոտեցումը միայն կարող է հարգանք ներշնչել ուրիշ ժողովուրդների և հենց իր սեփական ժողովրդի նկատմամբ: Մարքսիզմի ոգուն համաձայն, Ալ. Մյասնիկյանը ազգերի համերաշխության և եղբայրության մեջ ոչ թե ազգային, այլ սոցիալական իմաստ էր տեսնում, ուստի, դրան հասնելու միջոցը համարում էր բուրժուազիայի դեմ պրոլետարիատի մղած սոցիալական կռվի հաղթական վախճանը:

Այժմ պարզ է, թե ինչու էր Ալ. Մյասնիկյանը Բունդը դիտում որպես հրեական բանվորների համար մի շղթա, «որով կապված էր նրանց ճիշտ շարժումը դեպի սոցիալիստական նպատակը»: Խնդրի ազգայնական պարզաբանման մեջ նա տեսնում էր բանվորական շարժման շղթայակապումը: Եվ կռվելով նացիոնալիզմի դեմ, ձգտում էր բանվորական կռվի շղթայազերծմանը:

Հեշտ չէր այդ կռիվը: Ազգի անունից հանդես եկող հայ բժիշկը, փաստաբանն ու ինժեները՝ ժամանակի ինտելիգենցիան, «դրանցից ամեն մեկը նստած իր սենյակում՝ մտածում էր իր օրվա պարենի, իր անձնական հաճույքների, իր երջանկության մասին»: Նեղ անձնականը այնպես էր գերել նրանց, որ կարծես բուն հասարակականը չկար այլևս: Ալ. Մյասնիկյանն ընդհանուր ֆոնի վրա կույլ չէր գնում խավարին ու հետամնացությանը, տեսնում էր լույսի և հույսի առկայծումները և կրկնում էր բանաստեղծի խոսքերը.

«Որքան մութ է գիշերը,
Այնքան պայծառ են աստղերը»:
*(Ա. Ն. Մայկով)*

Նա խավարից գնում էր լույսին ընդառաջ: Գնում էր մաքառելով, պայքարելով:

Եթե մանրամասն քննենք, թե ինչպես երիտասարդ պրոպորշչիկ Ալեքսանդր Մյասնիկյանին հաջողվեց պատերազմի սկզբին բանակ կանչվելուց հետո իր վրա բևեռել հակացարական տրամադրություններ ունեցող զինվորների ուշադրությունը և ապա նրանցից ամենաաչքի ընկնողներին ձևավորել բոլշևիկյան խմբում, ապա դրա պատճառը մենք կգալիորեն կտեսնենք նրա միջազգայնական բնավորության մեջ: Հոկտեմ-

բերի անմիջական հասունացման ամիսներին նա, Մ. Վ. Ֆրունզեի և պարտիական այլ գործիչների հետ միասին Արևմտյան ռազմաճակատում բազմազգ զինվորների մեծ ջոկատները համախմբում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո: Ռևոլյուցիոն կռվի տանելուց առաջ նրանց ինտերնացիոնալ համերաշխությունն ու եղբայրությունն էր կռում:

1917-ի սեպտեմբերին ընտրվելով պարտիայի Հյուսիս-Արևմտյան մարզային կոմիտեի նախագահ, իսկ մեկ ամիս հետո՝ Արևմտյան մարզի ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահ, Ալ. Մյասնիկյանը զուգակցում է քաղաքական գործչի և ռազմագետի իր բարձր ընդունակություններն ու զարմանալի հաջողությամբ միացնում, միևնույն նպատակին ծառայեցնում զորամասերի և քաղաքացիական օրգանների բազմազգ կոլեկտիվների գործողությունները: Դրանով է նվաճում Արևմտյան ռազմաճակատի ռևոլյուցիոն շարժման առաջնորդի բարձր համբավը: 1917-ի նոյեմբերի վերջին Ալ. Մյասնիկյանը Արևմտյան մարզի ժողկոմխորհի նախագահն էր, միաժամանակ լինելով մարզային պարտիական կոմիտեի նախագահը:

Նա իր համոզիչ խոսքով ավելի տեսանելի ու հասկանալի էր դարձնում արևմտյան մարզերում բունդականների, մենշևիկների, էսեռների ու մանրբուրժուական մյուս տարրերի ազգայնական քարոզների վնասակարությունը: Նա այդ անում էր ոչ թե արևմտյան մարզերի աշխատավորների ազգային զգացմունքները բթացնելու, ազգային շահերն ու ձգտումները մոռացության տալու, այլ ընդհակառակը, նրանց ազգային ինքնագիտակցությունը դասակարգային ինքնագիտակցության մակարդակին բարձրացնելու, նրանց մեջ իսկական հայրենասիրական տրամադրություններ արթնացնելու միջոցով: Ոչ այլ ոք, բայց եթե հենց Ալ. Մյասնիկյանն էր Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի և բելոռուսական կոմունիստական պարտիայի ստեղծման ամենաաչքի ընկնող կազմակերպիչներից մեկը: Չէ՞ որ ցարիզմի և բուրժուական Ժամանակավոր կառավարության օրոք Բելոռուսիան ազգային տերիտորիալ-վարչական ինքնուրույնությունից զուրկ էր:

Ի՞նչը կարող էր ավելի մեծ դեր խաղալ Ալ. Մյասնիկյանի առաջխաղացման, այդ թվում նաև 1919 թվականին պարտիայի Մոսկվայի կոմիտեի քարտուղարի պոստում նրա ընտրվելու գործում, քան կոմունիստի, քաղաքացու և մարդու նրա կատարյալ ինտերնացիոնալիստական կերպարը: Հենց այդպիսին էլ ճանաչեց և վստահեց նրան Վ. Ի. Լենինը: Կոմունիստ Ալ. Մյասնիկյանը մայրաքաղաքի պարտիական կազմակերպության ղեկավարի պոստում դրսևորեց պրոլետարական առաջնորդի հիանալի գծեր: Նրա աճի ու վերելքի դպրոցը լենինյանն էր: Դրանից էր սովորում, նրանով էր ստուգում, ուղղում իրեն, նոր մտքեր հղանում և ոգևորվում:

Պարտիայի Անդրկովկասյան երկրային կոմիտեի քարտուղարի և Անդրֆեդերացիայի ժողկոմխորհի նախագահի բարձր պաշտոններում Ալ. Մյասնիկյանը Ս. Մ. Կիրովի, Գ. Կ. Օրջոնիկիձեի և երկրամասի մյուս ականավոր գործիչների հետ միասին, բոլոր ուժերով պայքարում էր Վ. Ի. Լենինի մեծ խորհուրդը կատարելու՝ Անդրկովկասում ազգային համերաշխությունը ամրապնդելու համար: Ալ. Մյասնիկյանը եղավ Անդրկովկասյան ռեսպուբլիկաների ֆեդերացիայի և ժողովուրդների սովետական դաշինքի՝ ՍՍՌՄ-ի ամենաակտիվ կազմակերպիչներից մեկը:

Անդրկովկասում սովետական կարգերի հաստատումից հետո կտրուկ դնելով նացիոնալիզմի դեմ պայքարի, դրա վերացման հարցը, անմիջապես ընդգծում էր, որ «դա ժամանակ է պահանջում, դրա համար մենք տևական ու սիստեմատիկ աշխատանքի կարիք ենք զգում Անդրկովկասում եղբայրական, բարեկամական և միջազգային համերաշխության հիման վրա»:

Պատմությունը տխուր հուշեր է թողել, թե ինչպես հայ բուրժուազիան ու նրա որդեգիր պարտիաները, կողմնորոշվելով դեպի բուրժուական Արևմուտքը, պնդում էին, որ «միայն բուրժուական Անգլիան, Ամերիկան կամ Ֆրանսիան են ընդունակ լուծելու... հայկական հարցի բախտը»: Արտաքին աշխարհի նկատմամբ Ալ. Մյասնիկյանի վերաբերմունքը ժխտողական չէր: Ավելին. նա մեծ հույսեր էր տածում մյուս երկրների ու ժողովուրդների նկատմամբ, միայն թե դա հույս էր միջազգային պրոլետարիատի, և ոչ միջազգային բուրժուազիայի հանդեպ, որի կառքին լծված էր (այժմ էլ լծված է) հայ ռեակցիոն բուրժուազիան, նրա հոգեորդի դաշնակցությունը: «Կազմակերպված բանվոր դասակարգի ղեկավարությամբ բոլոր երկրների աշխատավորների միավորման ու եղբայրության մեջ է միջազգային հարցերի, փոքր ազգերի ճնշման և հալածման փաստի հետ կապված հարցերի լուծման բանալին»,— գրում էր Ալ. Մյասնիկյանը:

Հարցի ոչ թե դիվանագիտական, ինչպես որ այն կար մի որոշ ժամանակ, այլ դասակարգային լուծման մարտիկն էր Ալ. Մյասնիկյանը: Նա գրում էր. ««Հայկական հարցի» լուծման դիվանագիտական ճանապարհը դեպի կորուստ տարավ: Որովհետև նա չէր գնում իսկական ուղղությամբ»: Եվ նորից կրկնում էր իր համոզմունքը. «Իսկ ուղղությունը անսխալ ընտրելու համար ճանապարհորդը զինված պետք է լինի իրական կյանքից բխած օրենքների ըմբռնումով»: Այդ արդեն բուրժուազիայի ու նրա պարտիաների գործը չէր: «Վերջիններիս համար,— գրում էր Ալ. Մյասնիկյանը,— հայ աշխատավորները եղել են որպես սոսկ հում նյութ, գործիք և ոչ թե գործող, առաջընթաց ուժ...»:

Երբ տարիներ առաջ Ալ. Մյասնիկյանը բացահայտում էր հայ ժողովրդի նկատմամբ ազգերի լիգայի վարած քաղաքականության խարդախությունը, դաշնակցականները հոխորտալով փորձում էին ցույց տալ, թե դրանով իբր կոմունիստները ձգտում են ձախողել գործը, չկամություն են ցուցաբերում Սփյուռքի հայ աշխատավորների հանդեպ: Կյանքը ցույց տվեց Մյասնիկյանի իրավացիությունը: Եվ ի պատասխան դաշնակցականների նա գրում էր. «Ազգերի լիգան ոչինչ է: Նա պատրանք է. նա խաբող է, նա դավաճանող է, նա օգտաշահող է և ոչ թե օգնող: Գիշատիչների շահերի համար ստեղծված որջը այլ կերպ էլ չի կարող լինել»:

Ալ. Մյասնիկյանը բանվոր դասակարգի պայքարի մեջ էր տեսնում քաղաքական կռվի դպրոցն ու քաղաքական ազատության միջոցը: Ասելով այդ, նա մատնացույց էր անում Սփյուռքի հայ բնակչության հույս ու ապավենը՝ Սովետական Հայաստանը: Իսկ Սովետական Հայաստանի ուժը տեսնում էր սովետական ռեսպուբլիկաների միության մեջ: Եվ իր անսահման նվիրվածությամբ աշխատում էր հանուն Սովետական Հայաստանի, Սովետական Անդրկովկասի և Սովետական մեծ Միության ամրապնդման:

Անդրկովկասի ստեղծման երրորդ տարելիցի օրը Ալ. Մյասնիկյանն ասում էր, թե «... մեզնից յուրաքանչյուրը մի ցանկություն ունի՝ էլ ավելի ամրապնդել մեր Միությունը, ամրապնդել Անդրկովկասի ժողովուրդների դաշինքը»: Իսկ մտովի պատկերացնելով գալիք պատմական ժամանակները, ավելացնում էր. «...ապագա սերունդները կարող են լավ խոսքերով հիշել մեզ և ասել՝ ա՛յ, եղել են մարդիկ մի ժամանակ, իր ժամանակի լավագույն մարդիկ, ...որոնք ոչինչ չխնայեցին, ոչ իրենց ուժերը, ոչ իրենց եռանդը, ոչ իրենց կյանքը, որպեսզի ստեղծեն աշխատավորների միասնական ճակատ»:

1921 թվականի մայիսին Ալ. Մյասնիկյանը մեծ եռանդով գործի կպավ որպես Սովետական Հայաստանի կառավարության ղեկավար: Երևանի կոմունիստների հետ առաջին հանդիպումների ժամանակ նա ասաց. «Մենք այստեղ հավաքվել ենք խոսելու... թե ինչպես մեր բազմատանջ աշխատավորությանը հանենք այս ծանր վիճակից»:

Ում հայտնի չէր, որ Հայաստանը Ռուսաստանի հետ միասին ու նրա օգնությամբ պետք է իր նոր կյանքը կառուցեր: Ասաց այդ մասին, բայց հիշեցրեց Վ. Ի. Լենինի խորհուրդը տեղի ուժերն ու հնարավորությունները ինչպես հարկն է օգտագործելու, տեղական յուրահատկությունները հաշվի առնելու մասին: Եվ կրկին բարձրության վրա երևաց իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստը: Իր հետ միաժամանակ (Դոնից) Հայաստան եկած ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար Սարգիս Լուկաշինի, պարտիական և պետական մյուս ղեկավար գործիչների հետ համախմբեց կոմունիստների ուժերը, ստեղծեց ամուր պետական ապարատ, աշխատավորներին լծեց ստեղծարար մեծ աշխատանքի:

Ալ. Մյասնիկյանն իր անձով հրապուրված չէր, խնդիրներին նայում էր պետականորեն, հանուն ժողովրդի, նրա շահերն արտահայտող գաղափարի տեսանկյունից: Անձնական կյանքում զուսպ էր, դեմ էր շռայլումներին և ցոփությանը, մեծ նշանակություն էր տալիս կոմունիստի բարոյական բարձր կերպարին: Ուստի, հաճախ էր շեշտը դնում կոմունիստի բարոյական մաքրության, նրա հոգևոր հարստության և բարձր կուլտուրայի վրա:

Մեծ գործիչը հարցերի ստեղծագործական լուծումներ էր որոնում, կյանքի բարդ իրադրություններին ինքնուրույն մոտեցում էր հանդես բերում և այդ կերպ աշխատում գտնել հաջողության, հաղթանակի ելքը: Ալ. Մյասնիկյանը անձնական մեծ հմայք ուներ և մարդկանց համախմբելու բացառիկ տաղանդ: Աշխատողների մասին ասում էր, թե նրանց «պետք է գնահատել ոչ ըստ... այն բանի, թե նրանք ինչ ֆրազներ են արտասանում, այլ ըստ նրանց պիտանիության՝ պրակտիկ անհրաժեշտ կազմակերպական ու գործարար աշխատանքում»: Գործն էր բոլորից վեր դասում:

1925 թվականին, երեսունինը տարեկան հասակում զոհված Ալեքսանդր Մյասնիկյանն այժմ ութսուն տարեկան է: Մեզ հետ է նա իր միշտ ջահել սրտով, մեծ ինտերնացիոնալիստի իր մեծ ոգով: Ալ. Մյասնիկյանի և՛ խոսքը, և՛ գործը տոգորում են իսկական հայրենասիրությամբ: Նրա կյանքի խորհուրդը աշխատավոր ժողովրդին անկեղծորեն ու անձնվիրաբար ծառայելն էր:

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ

## ԲԻՈՆԻԿԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Բ. ՍՈՏՍԿՈՎ (ՍՍՌՄ ԳԱ թղթակից-անդամ), Լ. ՂԱՄԲԱՐՅԱՆ (բժշկական գիտությունների դոկտոր), Ս. ՄԿՐՏՉՅԱՆ (ինժեներ)

Մարդկային մտքի զարգացման ճանապարհին առավել կարևոր և խոշոր խնդիրների լուծման համար անհրաժեշտություն է դարձել տարբեր գիտությունների զուգորդումը։ Ուստի, ստեղծվում են գիտության նոր ուղղություններ, մշակվում են նորանոր մեթոդներ, ձևավորվում մտածողության նոր ձևեր, որոնք հավասարապես կբավարարեն ֆիզիկայի, մաթեմատիկայի, էլեկտրոնիկայի, բիոլոգիայի, բժշկության և գիտության այլ բնագավառների գիտնականներին։ Այդպիսի սինթետիկ գիտություններից է բիոնիկան, որի հիմնական խնդիրն է բիոլոգիական սիստեմների կազմակերպման ու գործունեության սկզբունքների ուսումնասիրությունը՝ հին մեքենաների կատարելագործման և նորերի ստեղծման նպատակով։ Այլ կերպ ասած, բիոնիկայի հիմնական բովանդակությունը կենսագործունեության այն մեթոդների ուսումնասիրությունն է, որ հանդիպում է բնության մեջ, իսկ վերջնական նպատակը՝ այդ մեթոդների օգտագործումն է զանազան տեխնիկական մեքենաներում ու սարքավորումներում։

Բիոնիկա տերմինն առաջացել է հունական bios—կյանք բառից։ Սկզբնական շրջանում բիոնիկա էին անվանում գիտության այն ճյուղը, որն զբաղվում էր կենդանի օրգանիզմների հյուսվածքների և առանձին բջիջների ուսումնասիրությամբ (այժմ հյուսվածաբանություն)։ Ինչպես նախկինում, այնպես էլ այժմ այդ բառի տակ հասկացվում է նույն իմաստը, այն է՝ ճանաչել բիոլոգիական միավորը։ Սակայն, եթե նախկինում հիմնական նպատակն էր ճանաչել այդ միավորը, ապա այժմ կատարվում է ևս մի վճռական քայլ՝ ինքնին իրի ճանաչումից դեպի բարդ էլեկտրոնային սիստեմների ստեղծումը, որոնք նման են բիոլոգիական միավորին։ Այսպիսով, բիոնիկայի հիմնական նպատակը լայն իմաստով և նոր հասկացողությամբ հետևյալն է՝ սովորել կենդանի բնությունից, հայտնագործել նրա գաղտնիքները և դրանք ի սպաս դնել տեխնիկական պրոգրեսին։

Այս նոր գիտական ուղղության ծննդյան պաշտոնական տարեթիվն ընդունված է համարել 1960 թվականը, երբ ԱՄՆ-ում տեղի ունեցավ բիոնիկայի առաջին ազգային սիմպոզիումը՝ «Կենդանի նախատիպերը նոր տեխնիկայի



բանալին են» նշանաբանով։ Գոյություն ունեն կարծիքներ նաև այն մասին, թե բիոնիկան առաջացել է կիբեռնետիկայի հետ և նրա բաղադրիչ մասն է։ Սակայն, ինչպես ճշմարտացիորեն նկատել է ամերիկացի խոշոր հետազոտող Մակ-Կալոկը, բիոնիկան «...ոչ մի կերպ չի կարելի նույնացնել կիբեռնետիկայի հետ կամ համարել նրա մի մասը։ Ըստ էության բիոնիկան ավելի լայն բնագավառ է»։

Իր ծննդյան օրից մարդը գամված է եղել բնությանը և սովորել է նրանից։ Տեսնելով ինչպես են լողում գերանները ջրի վրա, մարդը կառուցել է առաջին լաստանավերը, ձկների օրինակով ստեղծել է առաջին նավակները, իսկ այնուհետև՝ ժամանակակից նավերը։ Ընդօրինակելով մկանների աշխատանքը՝ մարդը հորինեց ծանրություն փոխադրելու առաջին սարքերը և, վերջապես, թռչունների նմանությամբ պատրաստեց թռչող սարքեր և այլն։

Մեր ժամանակներում, երբ գիտությունը բուռն վերելք է ապրում, երբ կյանքը մարդկության առջև դնում է տեխնիկական նոր, բարդ խնդիրներ, մարդը նորից է դիմում բնության օգնությանը, նրա մեջ փնտրելով նոր բազմաթիվ հուզող հարցերի լուծման բանալին։ Այսպիսի գիտական մոտեցման օգտին է խոսում այն փաստը, որ միլիոնավոր տարիներ շարունակ բնական ընտրության ճանապարհով, բնության դարբնոցում ստեղծվել և պահպանվել են բիոլոգիական սիստեմների այնպիսի որակներ ու հատկություններ, որոնք ամենից ավելի լավ են համապատասխանել շրջապատի պայմաններին ու պահանջներին։ Իսկ ինչ վերաբերում է տեխնիկական սիստեմներին, ապա դրանք ստեղծվել ու կատարելագործվել են բնության և հասարակության պատմության համեմատաբար մի աննշան ժամանակահատվածում՝ քաղաքակրթության գոյության ընթացքում։ Այստեղից էլ բխում է բիոլոգիական սիստեմների սկզբունքների ուսումնասիրության և այդ ուսումնասիրությունների արդյունքները էլեկտրոնային տեխնիկայում կիրառելու անհրաժեշտությունը։

Բիոլոգիական գիտությունների հետ համագործակցելու տեսակետից ռադիոէլեկտրոնիկան համարվում է ամենաակտիվը և արդյունավետը։ Այս երկու գիտությունների (բիոլոգիա և ռադիոէլեկտրոնիկա) նմանությունը այն է, որ շատ կարևոր պրոցեսներ երկու սիստեմներում էլ կապված են ինֆորմացիայի ստացման, մշակման ու հաղորդման հետ։ Չնայած այս էական նմանությանը, բիոլոգիական սիստեմներն ունեն մի շարք առավելություններ տեխնիկականի նկատմամբ։ Դրանք են՝ փոքր չափսերը, մեծ զգացողականությունը, գործողության մեծ ճշտությունն ու հուսալիությունը։ Իսկ տեխնիկական սիստեմներն էլ իրենց հերթին գերազանցում են բիոլոգիականին իրենց հզորությամբ և գործողության մեծ արագությամբ։

Մեր ասածը պարզելու համար կարելի է նշել հետևյալ փաստերը։ Ինֆորմացիայի ընտրության, մշակման և պահպանման արդյունավետությամբ մարդկային ուղեղն անհամեմատ բարձր է ամենակատարյալ կիբեռնետիկական մեքենաներից։ Սակայն, ի տարբերություն ուղեղի, վերջիններս օժտված են թվաբանական գործողությունների կատարման անհամեմատ մեծ արագությամբ։ Որոշ կիբեռնետիկական մեքենաներ ի վիճակի են մի քանի րոպեում վճռելու այնպիսի խնդիրներ, որոնց լուծման համար չէր բավականացնի մարդկային կյանքը։ Այսպիսով, բիոնիկայի խնդիրն է՝ ստեղծել այնպիսի էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, որոնց ֆունկցիոնալ հատկությունները հնարավորին չափ մոտենան բնական նախատիպին՝ մարդկային ուղեղին։ Կարելի է բերել

բիոլոգիական սիստեմների առավելությունները հաստատող նաև շատ այլ օրինակներ։ Փորձերով հաստատվել է, որ դելֆինները ծովային ջրերի մեծ խորություններում, մի քանի կիլոմետր հեռավորության վրա, հիդրոլոկացիայի շնորհիվ կարողանում են հայտաբերել իրենց համար սնունդ հանդիսացող ձկներին։ Հետաքրքրական է նշել, որ ձկների մարմնի և ջրի ակուստիկական հատկությունները նույնն են, որի հետևանքով արձագանք ազդանշանն առաքվում է ձկների լողափամփուշտից։ Մինչդեռ տեխնիկական հիդրոլոկացիան այսպիսի նուրբ և կատարելագործված սարք չունի և ներկայումս հարց է դրված այս տվյալներն օգտագործել հիդրոլոկացիայի կատարելագործման համար։

Կապի մեծ զգացողականությամբ են օժտված որոշ թիթեռների բեղիկները։ Այդ հնարավորություն է տալիս արու թիթեռին 10 կմ հեռավորության վրա հայտաբերելու էգին, նույնիսկ այն դեպքում, երբ վերջինս փակված է ապակյա անոթի մեջ։ Բայց երբ էգ թիթեռը փակվում է ինֆրակարմիր ճառագայթների համար անթափանց ապակյա անոթի մեջ, ապա արու թիթեռին չի հաջողվում հայտաբերել էգին. Նույն բանը տեղի է ունենում նաև այն դեպքում, երբ արուն զրկվում է բեղիկներից։ Ենթադրվում է, որ էգ թիթեռն արձակում է էլեկտրամագնիսային ազդանշաններ, որոնց որսալու միջոցով էլ արուն հայտաբերում է էգին։ Եվս մի օրինակ կենդանական աշխարհից։ Փորձերով ապացուցված է, որ որոշ կենդանիների հոտառական օրգանը կարող է արձագանքել նույնիսկ մեկ մոլեկուլով առաջացրած գրգռին և տարբերել միմյանցից իզոմերները։ Ներկայումս մեծ աշխատանքներ են տարվում հոտառական օրգանների ֆունկցիան պարզաբանելու ուղղությամբ։

Բերված օրինակներից երևում է, որ բիոլոգիական սարքերը վերին աստիճանի նուրբ ֆունկցիոնալականության հետ մեկտեղ ունեն և այլ առավելություններ՝ փոքրածավալ են և շահավետ։ Այս բանում համոզվելու համար բավական է բերել հետևյալ տվյալները։ Մարդկային ուղեղում կան մոտ 14—17 միլիարդ նյարդաբջիջներ, որոնք գրավում են ընդամենը 1,5 դմ$^3$ ծավալ, իսկ ուղեղի սպառած էներգիան չի անցնում մի քանի տասնյակ վատտից։ Եթե փորձենք կառուցել տեխնիկական մի սարքավորում, որի էլեմենտներն ունենան 1 սմ$^3$ ծավալ և թվով հավասար լինեն բիոլոգիականին (14—17 միլիարդ), ապա կստացվի մի երկնաքեր՝ 100 մ բարձրությամբ և 10×10 մ հիմքով, իսկ այդ հսկայի սնուցման համար կպահանջվի ժամանակակից ամենամեծ հիդրոկայանը՝ 100 միլիոն կիլովատ հզորությամբ։ Այդ իսկ պատճառով արհեստական սիստեմների նրբացումն ու փոքրացումը պետք է համարել ժամանակակից տեխնիկայի հրատապ պրոբլեմներից մեկը և բիոնիկան պետք է որոշակի դեր խաղա այդ գործում։

Բիոնիկայում տարբերում են հետևյալ երեք ուղղությունները՝ բիոլոգիական բիոնիկա, տեսական բիոնիկա և տեխնիկական բիոնիկա։

Բիոլոգիական բիոնիկայի խնդիրն է՝ ուսումնասիրել կենդանի օրգանիզմների ֆիզիոլոգիական ֆունկցիաները և պարզաբանել սրանց հիմնական սկզբունքները։ Այն հենվում է ֆիզիոլոգների, բիոֆիզիկների և անատոմների հետազոտությունների արդյունքների վրա։ Տեսական բիոնիկան մշակում է այդ պրոցեսների մաթեմատիկական մոդելները, որոնք հավասարապես անհրաժեշտ են ինչպես բիոլոգներին՝ ֆիզիոլոգիական հետազոտությունները խորացնելու, այնպես էլ ինժեներներին՝ էլեկտրոնային նույնատիպ սարքավորումներ ստեղծելու համար։ Տեխնիկական բիոնիկայի խնդիրն է՝ ստեղծել էլեկտրոնա-



յին կամ բիոլոգիական նախատիպով մեքենաներ, որոնք կաշխատեն նույն սկզբունքով, ինչ որ կենդանի օրգանիզմի էլեմենտները։

Ներկայումս բիոնիկայում հետազոտությունները տարվում են հետևյալ ուղղություններով՝ բիոէներգետիկայի, բիոմեխանիկայի, ռեցեպցիայի, մեծ թվով հաղորդումների մշակման ու պահպանման կազմակերպման, մտածողության, հուսալիության, ղեկավարման ու կարգավորման և այլ պրոբլեմների շուրջ։ Բիոնիկայի հարցերն առնչվում են, հատկապես, ռազմական տեխնիկայի պահանջների հետ։

Հայտնի է, որ էներգիայի բիոլոգիական աղբյուրները, օրինակ, տրոպիկական ձկների մեծ մասի մոտ տարբերվում են տեխնիկականից ո՛չ միայն իրենց փոքր չափերով, այլև օգտակար գործողության բարձր գործակցով։ Անկասկած, այս մեխանիզմների ուսումնասիրությունը կնպաստի նոր, փոքր մասշտաբի և բարձրարժեք էներգիայի աղբյուրների ստեղծմանը ժամանակակից ռեակտիվ շարժիչներով։

Ինքնաթիռաշինությունը, որը մեզ մոտ բարձր հիմքերի վրա է դրված, դեռևս որոշ հարցերում զիջում է թռչուններին ու միջատներին, այն էլ այնպիսի կարևոր խնդիրներում, ինչպես տեսակարար հզորությունը, բեռ բարձրացնելու հարաբերական ունակությունը և անվայրէջք թռիչքի տևողությունը։ Կենդանի բնության «շինարարական» որոշ նյութեր, օրինակ, ոսկորը, թռչունի փետուրը տեսակարար կայունությամբ ո՛չ միայն չեն զիջում, այլև գերազանցում են ժամանակակից ավիացիոն շինանյութերը։ Այս բոլորի հիմքում ընկած են ո՛չ միայն ոսկորների քիմիական բաղադրությունը և սպեցիֆիկ ձևերը, այլև նրանց հատուկ միկրոկառուցվածքը (միկրոստրուկտուրան)։ Ավիաշինության մեջ կիրառվող շերտավոր և սպունգանման կոնստրուկցիաները իրենց կառուցվածքով որոշ չափով մոտենում են ոսկրի կառուցվածքին։ Հավանական է, որ բնական «շինանյութերի» ուսումնասիրությունները կնպաստեն նոր, թեթև և կայուն ավիացիոն շինանյութերի ստեղծմանը։

Շատ արժեքավոր փաստեր է ստանում բիոնիկան բիոլոգիական սիստեմներում կապը և կողմնորոշումը ուսումնասիրելիս։ Վերը մենք բերեցինք հիդրոլոկացիոն և էլեկտրամագնիսային ազդանշանի օրինակներ։ Ոչ պակաս հետաքրքրական է նաև բնական ռադիոլոկացիան։ Հայտնի է, որ չղջիկը թռիչքի ժամանակ կողմնորոշվում և որս է անում ուլտրաձայնային լոկացիայի շնորհիվ։ Սովորաբար նա արձակում է ուլտրաձայնային 10—15 հաճախականության ազդանշաններ, որոնք անդրադառնալով շրջապատող առարկաներից, կենդանուն հնարավորություն են տալիս «ճանաչելու» շրջապատը և գտնելու կերը։ Հատուկ փորձերով ցույց է տրված, որ չղջիկը բացարձակ մթության մեջ վստահ թռչում է 0,12 մմ տրամագծով լարացանցի միջով, երբ հարևան լարերի հեռավորությունը 300 մմ է, այսինքն՝ չղջիկի թևերի թափահարման ծավալից մի փոքր ավելի։

Հետագայում պարզվել է, որ կերի նախնական հայտաբերումից հետո չղջիկը որոշակիորեն ավելացնում է ուլտրաձայնային ազդանշանների հաճախականությունը՝ գրոհի պահին հասցնելով մի քանի հարյուր հազարի՝ 1 վայրկյանում։ Այս փաստը, որն ապացուցված է բիոլոգիական բիոնիկայով, օգտագործվել է գոյություն ունեցող ռադիոլոկացիոն հարմարանքների կատարելագործման համար։

Ուսումնասիրելով միջատների ֆասետային աչքի գործունեության սկզբունքները, մոդելացնելով այն, առաջարկվել են օպտիկական սարքավորումների կատարելագործման մի շարք մեթոդներ՝ տիեզերական մարմինների դիտման համար։

Այժմ մի քանի խոսք կենդանիների և մարդու ուղեղում ստացված ինֆորմացիան ճանաչելու, դասակարգելու, ընդհանրացնելու, ինչպես նաև վարքագիծը ձևավորելու հատկության մասին։ Մասնագետի տեսանկյունով, օրինակ, ավտոմատիկայի բնագավառում մեծ հետաքրքրություն են ներկայացնում բիոլոգիական մարմինների «ղեկավարող սիստեմները», նրանց կառուցվածքային և ֆունկցիոնալ սկզբունքները։ Չէ՞ որ այս կենդանի ապարատների կամ օրգանների աշխատանքը, վերջին հաշվով, ղեկավարվում է կենդանու նյարդային սիստեմի կողմից և յուրաքանչյուր ապարատ ունի իր նյարդային կենտրոնները, ինչպես ասենք, ռադիոլոկացիոն սիստեմներն ունեն իրենց ղեկավարող կենտրոնը՝ «ուղեղը»։

Հետաքրքիր է, թե ինչպե՞ս և ինչի՞ հաշվին է ապահովվում կենդանի օրգանների գործունեության արդյունավետությունը իրենց փոքր մասշտաբներով, էներգիայի աննշան ծախսերով և բարձր հուսալիությամբ հանդերձ։ Այդ մասին առայժմ քիչ բան է արված և տարբեր երկրներում մեծ աշխատանքներ են տարվում։

Պետք է նկատել, որ այս բնագավառում հետազոտությունները հիմնականում տարվում են մոդելացման և արհեստական սիստեմների կառուցման ուղիով։ Սակայն վերջին տարիներում հանդես է եկել մի նոր ուղղություն, որն իր առջև խնդիր է դրել բիոլոգիական սիստեմն ընդգրկել «ղեկավարող սիստեմ-ղեկավարող օբյեկտ» օղակի մեջ։

Ամերիկացի գիտնական Քելը նշել է հետազոտությունների մի ամբողջ ծրագիր կենդանու ուղեղը ղեկավարող սիստեմներում օգտագործելու համար։ Օրինակ, կատվի ուղեղը նախատեսվում է օգտագործել «օդ-օդ» դասի արկերում՝ նավարկության ու ղեկավարման համար։ Ենթադրվում է արկերի արտաքին հաղորդիչներից ինֆորմացիան ուղարկել կատվի ուղեղը, վերջինս էլ նախօրոք մշակված պայմանական ռեֆլեքսների հիման վրա պետք է ընդունի որոշում և իրականացնի արկի ղեկավարումը։ Ենթադրվում է, որ «ղեկավարվող սարք-կատու սիստեմը» կհայտաբերի հետապնդվող օբյեկտը և կհասնի նպատակին, ուստի պատահական չէ, որ շատ կապիտալիստական երկրներում (ԱՄՆ, Անգլիա, ԳՖՌ) բիոնիկայի վերաբերյալ աշխատանքները ֆինանսավորվում են ռազմա-օդային և ռազմա-ծովային մինիստրությունների կողմից։

Ուսումնասիրվող պրոբլեմների մեջ բացառիկ կարևոր նշանակություն ունի և հուսալիության հարցը։ Այդ բնագավառում բիոնիկան հետաքրքիր հեռանկարներ է բացում։ Չէ՞ որ բիոլոգիական սիստեմները, չնայած իրենց բարդ կառուցվածքին, ցուցաբերում են գործունեության շատ բարձր հուսալիություն։ Այս առումով լավ օրինակ կարող է լինել մարդկային ուղեղը։ Տասնյակ տարիներ նա գործում է առանց տատանումների։ Խոսքն այստեղ ուղեղի վարքագծային ֆունկցիաների մասին չէ։ Հայտնի է, որ ուղեղը միլիարդավոր նյարդաբջիջներ պարունակող մի բարդ սիստեմ է։ Նրա բջիջների քանակը կյանքի ընթացքում ո՛չ միայն չի ավելանում, այլ ընդհակառակը՝ պակասում է։ Որոշ հեղինակների տվյալներով 100 տարեկան հասակում մարդու ուղեղում ոչնչանում են բջիջների մոտ 20, նույնիսկ 30 տոկոսը։ Այդ նշանակում է, որ



ամեն օր մեր ուղեղում ոչնչանում են մոտ 2000 նյարդաբջիջ և, չնայած դրան ուղեղը գործում է միանգամայն նորմալ։ Մեր հաշվումները ցույց են տալիս, որ ուղեղի ֆունկցիոնալ էլեմենտի՝ նյարդաբջջի հուսալիությունը բավական ցածր է, այսինքն՝ ուղեղը, լինելով ամենահուսալի սիստեմը, բաղկացած է վերին աստիճանի անհուսալի էլեմենտներից։

Թե ինչպես է կազմակերպված ուղեղը, ի՞նչն է նրա հուսալիության հիմնական աղբյուրը, առայժմ պարզ չէ։ Հուսալիության պրոբլեմը լուծելու, հետևաբար և ինքնակազմակերպող էլեկտրոնային սիստեմներ ստեղծելու տեսանկյունից մեծ նշանակություն է ստանում ուղեղի ուսումնասիրությունը։ Այդ նպատակի համար, մի կողմից՝ անհրաժեշտ է նյարդային համակարգության և ուղեղի կառուցվածքային ու ֆունկցիոնալ սկզբունքների գիտական ուսումնասիրություն, մյուս կողմից՝ ստացված տվյալների մոդելացում ու արդյունքների տեխնիկական ռեալիզացում։

Այս կարևոր պրոբլեմի ուսումնասիրությանն են նվիրված ՀՍՍՌ ԳԱ նեյրոբիոնիկայի լաբորատորիայի երիտասարդ կոլեկտիվի ջանքերը։ Հայաստանում բիոնիկայի զարգացման նոր խթան կհանդիսանա ՀՍՍՌ գիտությունների ակադեմիայում բիոֆիզիկայի և բիոնիկայի ինստիտուտի ստեղծումը։

Բարձր հուսալիությամբ ինքնակազմակերպող մեքենաների ստեղծումն առավել անհրաժեշտ է այժմ, երբ առօրյա հարց են դարձել հեռավոր տիեզերական մարմինների հետազոտությունն ու յուրացումը։ Այսպիսի մեքենաները կդառնան մարդու «ընդունակ» ու «խելացի» օգնականները տիեզերանավերի ղեկավարման և անծանոթ մոլորակները հետազոտելու գործում։

Ժամանակակից ֆիզիոլոգիան այսօր էլ հսկայական գործ է կատարում ուղեղի գաղտնիքները հայտնաբերելու ուղղությամբ։ Սակայն մի շարք բարդ պրոբլեմների (օր. հիշողության, մտածողության) հաջող լուծումն այսօր հնարավոր է ֆիզիոլոգների, բիոֆիզիկների, մաթեմատիկոսների, ֆիզիկոսների և ինժեներների համատեղ աշխատանքի պայմաններում։

Բիոնիկան գիտության այն բնագավառն է, որին բախտ է վիճակվել համախմբելու ֆիզիոլոգների, ռադիոֆիզիկների, նեյրոֆիզիոլոգների և ինժեներների ջանքերը մարդկության առջև դրված մի շարք կենսական պրոբլեմներ լուծելու համար։



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԼՈՒՐՋ ՀԵՏԱԶՈՏՄԱՆ ԿԱՐՈՏ ԹԵՄԱՆԵՐ

*Արդի ժամանակաշրջանում, երբ ամուր հիմքերի վրա է դրված սոցիալիստական գյուղատնտեսության հետագա առաջընթացի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, առանձնապես կարևոր նշանակություն է ստանում կոլտնտեսություններում կուտակման և սպառման ֆոնդերի ճիշտ, տնտեսապես հիմնավորված հարաբերակցության հարցը, որն անմիջապես առնչվում է կոլտնտեսականների հանրային և անձնական շահերի զուգակցման պրոբլեմի հետ: Ամեն մի լուրջ ուսումնասիրություն այս ասպարեզում մեծ օգուտ կարող է բերել և՛ մեր տընտեսությանը, և՛ տնտեսագիտությանը: Այս առումով, ուշագրավ է Ս. Ղուկասյանի գրքույկը* [1]*:*

*Ս. Ղուկասյանի գրքույկի բաժինների վերնագրերից երևում է, որ հեղինակը միտում է պարզաբանել բաշխման հարաբերությունների էությունը և դրանց զարգացման խնդիրները կոլտնտեսություններում: Խրախուսելի է, որ աշխատությունը գրված է ռեսպուբլիկայի կոլտընտեսությունների հարուստ վիճակագրական նյութի հիման վրա: Սակայն որոշ հարցերի լուսաբանումը անհամոզիչ է ու առարկելի:*

*Աշխատենք այդ ցույց տալ մի քանի օրինակով: Գրքի ներածությունում Ս. Ղուկասյանը բնութագրում է կոլտնտեսային եկամուտների բաշխման հիմնական գծերը, որոնք, ըստ նրա, պայմանավորված են հետևյալով. արտադրության զարգացման և կոլտնտեսականների առավելագույն պահանջմունքների բավարարման խնդիրներով, հանրային և անձնական շահագրգռվածության ճիշտ զուգորդմամբ, կոլտընտեսականների աշխատանքի քանակի ու որակի և պլանի համաձայն (էջ 4—5):*

*Նույնիսկ ոչ բծախնդիր ընթերցողի համար դժվար չէ նկատել, որ այդ սկզբունքները կամ գծերն այնքան ընդհանուր են, որ բնորոշ են, առհասարակ, սոցիալիստական բոլոր տիպի (ինչպես կոոպերատիվ, այնպես էլ պետական) ձեռնարկությունների համար, հետևաբար ամբողջական պատկերացում* չեն տալիս կոլտնտեսային արդյունքի բաշխման առանձնահատուկ բնույթի մասին: *Մինչդեռ, չունենալով այդ առանձնահատկությունների ճշգրիտ ըմբռնումը, դժվար թե հնարավոր լինի բացահայտել ու լուծել այս ասպարեզում եղած առօրյա խնդիրները:*

*Իրավացի է ընկ. Ս. Ղուկասյանը այն բանում, որ եկամուտների ճիշտ բաշխումը, վերջին հաշվով, արտադրության ծախսված միջոցների հատուցման, կուտակման և սպառման ֆոնդերի միջև տնտեսապես հիմնավորված համամասնության սահմանումն է: Միաժամանակ նա նշում է, որ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների զգալի մասում ճիշտ չի զուգակցվում կուտակման և բաշխման փոխհարաբերությունը (էջ 6, պետք է լինի՝ կուտակումը և սպառումը—Ն. Մ.):*

*Շատ հետաքրքրական և կարևոր հարց է սա և, պետք էր սպասել, որ հետագայում հեղինակն ավելի հանգամանորեն, կոնկրետ նյութի վրա պարզաբաներ այն: Բայց գիրքն ընթերցողը հուսախաբվում է. հեղինակը քննության է առնում առանձին կոլտնտեսությունների զանազան ֆոնդերի գոյացման ու բաշխման հարցերը և ոչ մի անգամ չի քննարկում կուտակման և սպառման ֆոնդերի փոխհարաբերությունը և ցույց չի տալիս, թե ինչով է արտահայտվում հիշյալ ֆոնդերի հարաբերակցության խախտումը, որոնք են դրա պատճառներն ու հաղթահարման ուղիները:*

*Վերցնենք, օրինակ, կոլտնտեսություններում վարձատրության ֆոնդերի գոյացման ու բաշխման հարցը, որը կոլտնտեսային եկամուտների բաշխման կարևորագույն մոմենտներից է: Հեղինակն անդրադառնում է այս հարցին գրքի առանձին բաժնում (գլ. 2, § 4) «Համախառն եկամտի բաշխումը կոլտնտեսություններում և աշխատանքի վարձատրության ֆոնդի առանձնահատկությունները»), սակայն չի տալիս հիշյալ ֆոնդի բավարար տնտեսագիտական բնորոշումը: Մեկ այլ բաժնում, որտեղ խոսքը սոցիալիստական սեփականության երկու ձևերի տարբերության մասին է, հանդիպում ենք հեղինակի հետևյալ անփույթ ձևակերպմանը. «Սոցիալիստական ձեռնարկության մեջ բանվորի եկամտի միակ աղբյուրը նրա աշխատանքն է, կոլտնտեսականը հանրային տնտեսության եկամտի հետ միասին ունի նաև անձնական օժանդակ տնտեսություն» (էջ 134): Եթե մի կողմ թողնենք այն, որ ըստ հեղինակի, կոլտնտեսականի անձնական տնտեսությունից ստացվող եկամտի աղբյուրը կարծես աշխատանքը չէ, առավել կարևոր է, որ նա չի տեսնում կոլտնտեսություններում վարձատրության սիստեմի հիմնական հակասությունն ու առանձնահատկությունը, ա՛յն, որ աշխատանքի չափը շատ թե քիչ որոշակի է, իսկ վարձատրության չափը՝ անորոշ, անկայուն, չի երաշխավորված: Այս պատճառով էլ նա չի բացահայտում դրա պատճառները, որոնք բխում են հենց եկամուտների բաշխման ներկա կարգի թերություններից:*

*Ս. Ղուկասյանի գրքում բերված են թվական բազում տվյալներ, տասնյակ աղյուսակներ, սակայն դրանց վերլուծությունը և, մանավանդ, հետևությունները անբավարար են. շատ դեպքերում պարզ չէ, թե ինչ է ուզում հաստատել կամ հերքել հեղինակը: Ուստի, թվերը հաճախ ինքնանպատակ են: Օրինակ, բերելով Հայաստանի «Երեք տարբեր գոտիների 64 կոլտնտեսությունների խմբավորումն ըստ 100 հեկտարին ընկնող դրամական միջոցների մուտքի» ընդարձակ աղյուսակը, հեղինակն այն միակ հետևությանն է հանգում, որ «խմբավորված կոլտնտեսություններում որքան շատ է մեկ կոլտնտեսությունում դրամական եկամուտների միջինը, այնքան բարձր է նաև անբաժանելի ֆոնդի գումարը» (էջ 121): Հարց է առաջանում. արժեր արդյոք այս հանրահանաչ իրողությունն ապացուցելու համար բերել մեկ էջանոց աղյուսակ: Եվ վատն այն է, որ հեղինակը միանգամայն նորմալ է համարում անբաժանելի ֆոնդերի գումարի ավելացումը դրամական եկամուտներին համեմատ, մի սկզբունք, որը հաշվի չի առնում տնտեսության իրական եկամուտների մեծությունը և ակնհայտ հակասություն է ստեղծում կուտակման և սպառման ֆոնդերի, կոլտնտեսականների հանրային և անձնական շահերի միջև: Բաշխման գործող եղանակի միակ թերությունը հեղինակը համարում է այն, որ «Ներկա ժամանակաշրջանում չկա մի ընդհանուր հրահանգ, որով բոլոր կոլտնտեսություններին ցուցում տրվեր որոշելու անբաժանելի ֆոնդին փոխանցվելիք գումարների չափը» (էջ 123): Իսկ ըստ հեղինակի ինչպիսի՞ն պետք է լինի նոր կարգը: Այդ մասին նա լռում է: Հեղինակը մնում է անօգնական, վարանում է մեր անտընտեսավարության հանրահայտ նորմաներից ու հրահանգներից մի քայլ այն կողմ գնալ: Դրանում մի անգամ ևս համոզվելու համար բավական է ծանոթանալ գրքի երկրորդ գլխին:*

*Հայտնի է, որ կոլտնտեսային եկամուտների բաշխման հարցերն աշխույժ քննարկվում են տնտեսագիտական գրականության մեջ, ընդ որում տնտեսագետների մեծ մասն իրավացիորեն քննադատում է այդ եկամուտների բաշխման տարիներ առաջ սահմանված կարգը, որի համաձայն կոլտնտեսականների վարձատրության չափերը սահմանվում են (ի հայտ են գալիս) հասարակական բոլոր ֆոնդերի ու ծախքերի սահմանումից հետո միայն: Դրանից էլ բխում է վարձատրության չափերի անորոշությունը. Ուստի, առաջարկվում է եկամուտների բաշխման նոր սկզբունք, ըստ որի կոլտնտեսականների վարձատրության ֆոնդի որոշակի չափերի ապահովումը պետք է դնել բաշխման առաջին և ոչ թե վերջին պլանի վրա: Միաժամանակ հարց է դրվում կարգավորելու անբաժանելի ֆոնդերի հատկացումները և այլն: Զարմանալի է, որ Ս. Ղուկասյանը բոլորովին չի արձագանքում այդ վիճաբանությանը և դրանով իսկ գցում է գրքի արժեքը:*

*Չի կարելի չհամաձայնել Ս. Ղուկասյանի հետ, երբ նա գրքի առաջին էջերում գրում է, որ եկամուտների ճիշտ բաշխումը մեծ նշանակություն ունի նյութական շահագրգռվածության բարձրացման համար: Սակայն հետագայում նա մոռանում է դրա գործնական հիմնավորումը տալ, իսկ նյութական շահագրգռվածության սկզբունքի կիրառումը, որքան էլ այդ տարօրինակ է, հիմնականում առնչում է լրացուցիչ վարձատրության հետ (2-րդ գլխի § 10-ը այդպես էլ կոչվում է՝ «Լրացուցիչ վարձատրությունը և նյութական շահագրգռվածության սկզբունքի կիրառումը կոլտնտեսային արտադրության մեջ»): Մինչդեռ կոլտնտեսականների հիմնական վարձատրության հարցը, որը շատ ավելի կարևոր է, քննարկված է շատ մակերեսորեն, ընդամենը 8 էջում:*

*Այստեղից դժվար չէ եզրակացնել, որ հեղինակը չի տեսել կամ շրջանցել է հենց այն հարցերը, որոնք նրա ընտրած թեմայի կորիզն են: Դրան ավելացնենք նաև, որ մի շարք հաշվարկներում ու աղյուսակներում կատարյալ*

---

[1] *Ս. Հ. Ղուկասյան,* Բաշխման ձևերի կատարելագործումը և արտադրության վերելքը կոլտնտեսություններում, *Հայպետհրատ, 1964, 158 էջ:*

խառնաշփոթություն է (էջ 66, 77, 79 և այլն)։ Այսպես. 77 էջում բերված աղյուսակի տվյալներով մի դեպքում ստացվում է, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1960 թվականին կատարած ծախսերի յուրաքանչյուր 100 ռուբլու դիմաց ստացվել է 22 ռուբլու զուտ եկամուտ, մի այլ դեպքում՝ աղյուսակի 2-րդ սյունակի տվյալներով, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կատարած ծախսերի յուրաքանչյուր 100 ռ. դիմաց ստացվում է 263 ռուբլու համախառն արտադրանք, այսինքն՝ 163 ռուբլու զուտ եկամուտ (263—100), այլ կերպ ասած, եկամտաբերության ցուցանիշը երկրորդ դեպքում 7,4 անգամ գերազանցում է առաջինին։ Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների եկամտաբերությունը մի դեպքում 90 տոկոս է, մյուսում՝ 258, Իջևանի շրջանինը համապատասխանաբար՝ 33 ու 158 և այլն։ Ո՞րն է ճիշտը։ Ինչպես տեսնում ենք, հեղինակն ինքն էլ գլուխ չի հանել իր բերած թվերից։

Աշխատության մեջ հաճախ ենք հանդիպում տնտեսագիտական հայտնի կատեգորիաների սրխալ, խառնաշփոթ մեկնաբանումների։ Այսպես, Ա. Ղուկասյանը գրում է. «Սոցիալիստական հասարակության մեջ ազգային եկամուտն ստեղծվում է նյութական արտադրության մեջ, որը կազմված է ժողովրդական տնտեսության պետական սեկտորից և կոոպերատիվ կոլտնտեսային սեկտորից» (էջ 10)։ Հարց է ծագում, իսկ ո՞րտե՞ղ է թողել հեղինակը անձնական (օժանդակ) տնտեսության սեկտորը, որն ստեղծում է երկրի ազգային եկամտի որոշակի մասը։ Երկրի պաշտպանության միջոցները, չգիտես ինչու, հեղինակը զետեղում է կուտակման ֆոնդի մեջ (էջ 13)։ Մինչդեռ հայտնի է, որ այդ ծախսերը բացարձակ մինուս են, դուրս են մնում հասարակական ամբողջական արդյունքի վերարտադրության պրոցեսից և տնտեսագիտական իմաստով սպառման ֆոնդի մի մասն են կազմում։ Լավագույն դեպքում դրանք կարելի է ցույց տալ որպես առանձին ֆոնդ, և երբեք՝ կուտակման։

Ա. Ղուկասյանը ընդգծում է, թե անհրաժեշտ է տարբերել կոլտնտեսության ստեղծած և նրա իրացրած զուտ եկամուտը (էջ 45)։ Բայց արի ու տես, որ նա ոչ միայն չի պարզաբանում, այլ ավելի է խճճում հարցի էությունը։ 46 և 75 էջերում բերված ձևակերպումներից ու բանաձևերից պարզ երևում է, որ հեղինակը սխալմամբ նույնացնում է կուտակման ֆոնդը և զուտ եկամուտը (վերջինս կոչելով նաև հավելյալ մթերք՝ հավելյալ արդյունքի փոխարեն). մինչդեռ զուտ եկամուտը ավելի լայն հասկացություն է։ Այնուհետև նա նույնացնում է աշխատանքի վարձատրության և բանվորական ուժի վերարտադրության ֆոնդը (էջ 46, 75 և այլն), որը նույնպես սխալ է, քանի որ վերջինիս մեջ վարձատրության ֆոնդից բացի մտնում են նաև սպառման հասարակական ֆոնդերը։

Քննարկվող հարցերը շարադրված են ծանր, անփույթ։ Ահա մի քանի նմուշ. «Բաշխման սկզբունքը, որպես իրավական նորմաներ, կանոնավորում են պետության և կոլտնտեսության միջև եղած փոխհարաբերությունը» (էջ 5), «...արտադրանքը հիմնականում վաճառվում է պետմթերումներին...» (էջ 42), 85 էջի աղյուսակը վերնագրված է «Մեկ աշխատունակ կոլտնտեսականի համախառն ու զուտ եկամուտը...» և այլն։

Գրքի խմբագիրն է տնտեսագիտության թեկնածու, դոցենտ Ա. Ջուրարյանը։ Թվում է, որ հեղինակի ու խմբագրի պատշաճ աշխատանքի, պատասխանատվության դեպքում գիրքը զերծ կլիներ նման թերություններից։

Ուշադրության արժանի է նաև Գ. Դավթյանի գիրքը[1]։ Գրքի առաջին բաժնում հեղինակը կարողացել է հանրամատչելիորեն տալ կոլտնտեսային էկոնոմիկայի կարևորագույն կատեգորիայի՝ անբաժանելի ֆոնդերի համառոտ պատմությունը և սոցիալ-տնտեսական ճիշտ բնութագիրը։ Լավատեղյակ լինելով այս հարցերի շուրջ գոյություն ունեցող վիճաբանություններին, նա առաջադրում և հիմնավորում է իր տեսակետը կոլտնտեսային սեփականության բնույթի վերաբերյալ։

Գրքի հաջորդ երեք բաժիններում Գ. Դավթյանը պարզաբանում է անբաժանելի ֆոնդերի աճման աղբյուրները, այդ ֆոնդերի դերը կոլտնտեսային էկոնոմիկայում և կոլտնտեսային սեփականության հետագա զարգացման ընթացքում։ Սակայն հեղինակը երբեմն սխալ է ընկալում որոշ սկզբունքային հարցեր և տուրք տալիս գրականության ու պրակտիկայում տեղ գտած այս կամ այն շաբլոն դրույթին։

Հայտնի է, որ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի լրացման համար արվող մասհանումները մինչև այժմ կատարվում են տընտեսության դրամական միջոցներից։ Իրավացի է հեղինակը, սխալ համարելով հիշյալ պրակտիկան, քանի որ մասհանումների իսկական տնտեսական հիմքը տնտեսության զուտ եկամուտն է (էջ 57—58)։ Սակայն նյութը վերլուծելիս հեղինակն առաջնորդվում է հենց այդ պրակտիկայի սկզբունքով։ Բնական է, որ այդպիսի անհետևողականությունը չէր կարող հեղինակին չհանգեցնել սխալ եզրակացությունների։ Այսպես, հաճախ պնդելով, որ Արտաշատի շրջանի, ինչպես և Արարատյան դաշտավայրի կոլտնտեսու-

[1] Գ. Դավթյան, Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը, Հայաստան, 1965, 178 էջ։



թյուններն ավելի քիչ դրամական հատկացումներ են արել անբաժանելի ֆոնդի լրացմանը, քան նախատեսված է եղել գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությամբ, հեղինակն այն միտքն է հայտնում, որ բարձր դրամական եկամուտ ունեցող կոլտնտեսությունները կարող են մասհանել ոչ պակաս, քան դրամական եկամուտների 25 տոկոսը։ Բայց դա չի արվում այն պատճառով, որ այդ եկամուտների հիմնական մասը բաշխվում է աշխօրերին, որը, ըստ հեղինակի, նորմալ չէ (էջ 41—44, 48, 52, 53)։

Սա խոսում է այն մասին, որ այստեղ հեղինակը տուրք է տալիս մի ժամանակ տարածված այն տեսակետին, որը պաշտպանում է կոլտնտեսականների սպառման շահերի հաշվին տնտեսական հիմքից զուրկ կուտակման ֆոնդերի անվերջ ավելացման արատավոր պրակտիկան։ Քիչ է հայտարարել, թե անբաժանելի ֆոնդի հատկացումների տոկոսը ցածր է կամ վարձատրության հատկացումը՝ բարձր. անհրաժեշտ է ապացուցել այդ։ Տարբեր ֆոնդերի միջև դրամական միջոցների բաշխման այս կամ այն տոկոսն ինքնին դեռևս ապացույց չէ այդ ֆոնդերի մեծության մասին դատողություն անելու համար։ Անհրաժեշտ է ավելի խոր ուսումնասիրել հարցը՝ քննել (հաշվարկել) տնտեսության կուտակման և սպառման չափերը՝ հողատարածության միավորի կամ մեկ աշխատողի հաշվով, ընդամին օգտագործելով ժողովրդատնտեսական ընդհանուր ցուցանիշները։

Նման հարցադրման դեպքում հեղինակը, թերևս, ավելի լավ «տեսներ» և գնահատեր իր իսկ ձեռքի տակ գտնվող վիճակագրական տըվյալները, որոնք բերված են գրքի մյուս՝ վերջին մասում։ Իսկ տվյալներն ասում են, որ Արտաշատի շրջանի 42 կոլտնտեսություններից 9-ում մեկ աշխատունակ կոլտնտեսականի միջին տարեկան վաստակը եղել է 753 ռուբլի, 23-ում՝ 614,5 և 10-ում՝ 403,9 ռուբլի (էջ 132), որը միջին ամսականի հաշվով կազմում է համապատասխանաբար 62, 51 և 33 ռուբլի։ Այս համեմատելով շրջանի բանվորի միջին աշխատավարձի հետ, դժվար չէ եզրակացնել, որ շրջանի կոլտնտեսությունների մեծ մասում աշխատանքի վարձատրությունը հիշյալ մակարդակից զգալիորեն ցածր է։ Զարմանալի է, որ իր եզրակացությունները հեղինակը կառուցում է ոչ թե ընդհանուր, զանգվածային տվյալների, այլ հատ ու կենտ առաջավոր տնտեսությունների ցուցանիշների հիման վրա (չնայած վերջիններում ևս վարձատրությունը գրեթե չի անցնում բանվորի աշխատավարձի չհարկվող մինիմումից)։ Ինչպես տեսնում ենք, առանձին թվերի և օրինակների հետևում հեղինակը չի նկատել տնտեսական կյանքի իրական պրոբլեմները։

Կուտակման ֆոնդերի ավելացման վերաբերյալ Գ. Դավթյանի եզրակացությունների սխալը ավելի ևս ակնհայտ է, եթե նկատի ունենանք, որ նրա խոստովանությամբ իսկ, հետազոտվող շրջանի կոլտնտեսություններում անբաժանելի ֆոնդին հատկացված գումարներն անբավարար են իրացվում. դրանցում բարձր է չօգտագործված դրամական միջոցների տեսակարար կշիռը, մեծ է անավարտ շինարարության տոկոսը և այլն (էջ 121, 122, 143)։ Այս պայմաններում պահանջել անբաժանելի ֆոնդերի դրամական հատկացումների տոկոսի ավելացում, նշանակում է անգործության մատնել հանրային հարստության զգալի մասը։

Սկզբունքորեն համաձայնելով այն բանի հետ, որ անբաժանելի ֆոնդերի հատկացումները պետք է կատարել ոչ թե դրամական միջոցներից, այլ զուտ եկամտից, հեղինակն այն վերապահումն է անում, որ «պրակտիկայում այդ սկզբունքը կարելի է կիրառել միայն դրամական վարձատրության անցած և տնտեսապես հզոր, բարձր եկամուտ ստացող կոլտնտեսություններում... մնացած բոլոր, այսինքն՝ տնտեսապես թույլ կոլտնտեսություններում, նպատակահարմար է այդ մասհանումները կատարել համախառն եկամտից» (էջ 59)։ Բայց քանի որ համախառն եկամուտը կազմված է զուտ եկամտից ու վարձատրության ֆոնդից, նշանակում է՝ տնտեսապես թույլ, զուտ եկամուտ չունեցող կոլտնտեսություններում այդ մասհանումները կատարվելու են վարձատրության ֆոնդի հաշվին։ Հետևաբար, այս առաջարկի իրագործումը նշանակում է՝ շարունակել ավելացնել կուտակումներն ի հաշիվ կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի թուլացման, որը տնտեսապես անհիմն է, գործնականորեն անթույլատրելի։ Ցավոք, պետք է ասել, որ կոլտնտեսությունների պրակտիկայում և, հատկապես, տնտեսապես թույլ կոլտնտեսություններում հաճախ ենք հանդիպում հանրային և անձնական շահերի զուգակցման սկզբունքի նմանօրինակ խախտման։ Սակայն տնտեսագետի խնդիրը մեր տնտեսական պրակտիկայի քննադատական ընկալումն է հենց և ոչ նրա թերությունների հիմնավորումը։

Արդ, ո՞րն է ելքը։ Կոլտնտեսություններում կուտակման և սպառման շահերի զուգակցման միակ ճիշտ ուղին այն է, որ յուրաքանչյուր տընտեսություն իր բնաիրային և դրամական միջոցների հաշվին ամենից առաջ փոխհատուցի ծախսած արտադրամիջոցների արժեքը և աշխատուժի նորմալ վերարտադրության ծախքերը. ինչ վերաբերում է կուտակման ֆոնդերին, որոնք ծախսվում են արտադրության հետագա ընդլայնման նպատակով, ապա դրանք պետք է գոյա-

ման բացառապես տնտեսության զուտ եկամտի հաշվին: Կատարել կուտակումներն ի հաշիվ վարձատրության ֆոնդի՝ նշանակում է խախտել ընդլայնված վերարտադրության նորմալ պայմանները:

Որքան էլ վճռական լինի կուտակվող արտադրական ֆոնդերի դերը, չի կարելի մոռանալ արտադրության իսկական վճռական գործոնի՝ մարդու, աշխատողի ու նրա կենսապայմանների ապահովման մասին, մի բան, որը կարծես մոռացության է տրվում Գ. Դավթյանի (և, դժբախտաբար, ո՛չ միայն նրա) կողմից: Պատճառը գուցե այն է, որ տարվելով իր ընտրած թեմայի՝ անբաժանելի ֆոնդերի ուսումնասիրությամբ, Գ. Դավթյանը հաճախ մոռանում է կոլտնտեսային արտադրության մյուս կարևորագույն գործոնների մասին: Սա, իհարկե, պատճառներից մեկն է, բայց ոչ հիմնականը: Հիմնականն այն է, որ հեղինակի շարադրանքը կրկնում է նախկինում տարածված այն դրույթը, թե յուրաքանչյուր կոլտնտեսության առաջնակարգ պարտքն է, նախ՝ պետական պարտավորությունների կատարումը (ինչ գնով էլ այդ լինի), ապա՝ հանրային արտադրության և ապահովագրական ֆոնդերի լրացումը և վերջում միայն կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը: Անմիջական արտադրողի շահերի այդպիսի անտեսումը երկար տարիներ շարունակ խախտում էր վերարտադրության նորմալ ընթացքը գյուղատնտեսության մեջ: Հայտնի է, որ հետագայում շատ կոլտնտեսություններ, կատարելագործելով բաշխման ձևերը, հանրային ֆոնդերի հետ հավասարապես հոգ են տանում կոլտնտեսականների անձնական սպառման ֆոնդերի համար:

Գրքույկում կան նաև առարկելի այլ մեկնաբանություններ:

Սխալ է հեղինակի այն կարծիքը, թե որոշ կոլտնտեսություններում կիրառվող դրամական վարձատրության ձևը իր սոցիալ-տնտեսական իմաստով քիչ է տարբերվում պետական ձեռնարկություններում կիրառվող վարձատրության ձևերից, այսինքն՝ աշխատավարձից (էջ 174): Հեղինակն այստեղ պարզապես շփոթում է նոր երևույթի ձևն ու բովանդակությունը: Չպետք է մոռանալ, որ պետական ձեռնարկության աշխատողների աշխատավարձը սահմանվում և երաշխավորվում է պետության կողմից, ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով, իսկ կոլտնտեսականների վարձատրությունը, այդ թվում և դրամական վարձատրությունը, սահմանվում է յուրաքանչյուր տնտեսության կողմից, ելնելով տվյալ կոլեկտիվի աշխատանքի տարեկան արդյունքից և, ըստ էության, մնում է չերաշխավորված: Պարտիայի վերջին տարիների միջոցառումները, հատկապես, գների և եկամտահարկի կարգավորումը, կոլտնտեսությունների զուտ եկամտի և կոլտնտեսականների վարձատրության չհարկվող մինիմումի սահմանումը պարտավորեցնում են արժանի տեսական լուսաբանում տալ այս հարցին:

Չնայած Գ. Դավթյանի այս օգտակար գրքում տրվել է քննարկվող հարցի՝ անբաժանելի ֆոնդերի էության հիմնականում ճիշտ և մատչելի շարադրանքը, սակայն վերը նշված թերությունները չէին լինի, եթե հեղինակն ավելի խստապահանջ լիներ:

Գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերը լուրջ հետազոտման ու խոր վերլուծության կարոտ են: Հրատարակչությունները կոչված են այժմ այսպիսի պահանջով մոտենալ տնտեսագիտությամբ զբաղվող հեղինակներին:

Ն. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

# ՄԻ ՍԻՐՈ ԼԵԳԵՆԴ

Ռադիում, ռադիոակտիվություն... այս բառերը մեր դարասկզբին անցնում էին շրթեշուրթ, հռչակ ու փառք բերելով Պիեռ և Մարի Կյուրիներին: Նրանց հայտնագործումները, որ գիտական աշխարհն ընդունեց խանդավառ հիացմունքով, շուռ տվեցին ֆիզիկայի և քիմիայի բնագավառում մինչ այդ եղած պատկերացումները և հիմք դրեցին ատոմային էներգիայի կիրառման դարաշրջանին:

Ո՞վքեր են այդ հզոր տաղանդի տեր մարդիկ, ի՞նչ պայմաններում են ապրել ու աշխատել, ինչպիսի՞ անձնավորություններ են նրանք. հաճախ այրող հետաքրքրությամբ հարց էին տալիս միլիոնավոր մարդիկ: Իսկապես, շատերին էին հայտնի Կյուրիների անունն ու գործը, բայց հազվագյուտ մարդիկ գիտեին նրանց արտասովոր կենսագրությունը: Ամեն ինչ պարզ է դառնում, երբ կարդում ենք Պիեռի կնոջ՝ Մարի Կյուրիի և դստեր՝ Եվա Կյուրիի գրքերը[1]:

«Անհրաժեշտ է կյանքից ստեղծել երազանք, իսկ երազանքից՝ իրականություն», իր օրագրում գրել է քսանամյա Պիեռը: Խոսքն ամենից առաջ գիտական երազանքի մասին է: Նա ձգտում էր ամբողջովին նվիրվել գիտությանը: Դառնում էր

1 Մ. Կյուրի, Պիեռ Կյուրի, Ե. Կյուրի, Մարիա Կյուրի. Հայաստան հրատ., 1965 թ., 486 էջ:



տեսնում նա իր կոչումը, կյանքի նպատակը: Այդպես էլ արեց: Հաղթահարելով ամեն տեսակ խոչընդոտներ ու ձախորդություններ՝ երազանքը դարձրեց իրականություն:

Պիեռի մանկությունն անցնում է կիրթ մտավորականի ընտանիքում: Սկզբնական կրթությունն ստանում է հորից՝ բժիշկ Էժեն Կյուրիից: Հետագայում տասնչորսամյա պատանուն հանձնում են ժամանակի հռչակավոր մանկավարժ Ա. Բազիլին: Վերջինս տարրական և բարձրագույն մաթեմատիկա է պարապում և հիանում իր սանի զարմանալի ընդունակությամբ: Պիեռը չի հաճախում ո՛չ դպրոց, ո՛չ գիմնազիա: Ծնողները, նկատելով կրտսեր որդու յուրօրինակ մտավոր ընդունակությունները, գիտակցում էին, որ դպրոցի ուսուցման ավանդական դրվածքը լուրջ վնաս կհասցնի նրա մտավոր զարգացմանը: Եվ չէին սխալվում:

Պիեռի պատանեկությունն անցնում է Փարիզի շրջակայքում, բնության գրկում: Ազատամիտ դաստիարակությունը, երևակայության անկաշկանդ զարգացումը, բնության հետ անմիջական շփումը որոշակի ուղղություն են տալիս նրա հզոր մղումներին: Հորից պատանին սովորում է երևույթները տեսնելու և ճիշտ բացատրելու հմտություն: Գնալով հարստանում են նրա գիտելիքները բնական գիտությունների և մաթեմատիկայի վերաբերյալ: Տասնվեցամյա Պիեռին շնորհվում է բնական գիտությունների բակալավրի (կրտսեր գիտաշխատողի) կոչում: Սեփական ջանքերով նա ձեռք է բերում մեծ գիտելիքներ: Երեք տարի անց նշանակվում է բարձրագույն հետազոտական ինստիտուտի դիրեկտորի ասիստենտ և ֆիզիկայի գծով ուսանողների հետ տարվող գործնական աշխատանքների ղեկավար: Շուտով Պիեռը և նրա ավագ եղբայր Ժակը գիտական աշխարհին հայտնի են դառնում պիեզոէլեկտրական երևույթների հայտնաբերմամբ, ստանալով Պլանտեի մրցանակ: Երիտասարդ ֆիզիկոսը ինքնամոռաց հափշտակությամբ շարունակում է հետազոտական-փորձարարական աշխատանքները խիստ աննպաստ պայմաններում, որը երբեմն դառնացրել է հոգին, բայց չի խաթարել նրա լավատեսությունը մարդկության և գիտության ապագայի նկատմամբ: Մագնիսականության բնագավառի փորձերը (որի համար 35 տարեկանում ստացավ դոկտորի կոչում), կատարել է ինստիտուտի շենքի միջանցքում: Ֆրանսիայում և արտասահմանում աճում է նրա նկատմամբ եղած հետաքրքրասիրությունը: Նրա հետ հաշվի են նստում ժամանակի խոշոր ֆիզիկոսները:

Պիեռ Կյուրին ո՛չ միայն հիանալի ֆիզիկոս էր, այլև հատուկ կերտվածքի մարդ: Ռադիումի հայտնագործման և Նոբելյան մրցանակ շնորհելու կապակցությամբ առաջացած աղմուկը, հրավերները, լրագրողների այցերը զզվեցրել էին թե՛ նրան, թե՛ կնոջը: «Գիտության մեջ պետք է հետաքրքրվել երևույթներով և ոչ թե անձնավորություններով»,— այս էր Պիեռ և Մարի Կյուրիների նշանաբանը:

Նա բնավորությամբ ամաչկոտ ու զուսպ էր, արտակարգ անշահախնդիր ու համեստ: Չնայած իր մեծ համբավին, տասներկու տարի վարում է գործնական աշխատանքների ղեկավարի համեստ պաշտոնը: Երբ նրան խորհուրդ են տալիս առաջադրելու իր թեկնածությունը, ֆիզիկայի ինստիտուտում պրոֆեսորի պաշտոն ստանալու համար, պատասխանում է. «Ինձ ասացին, որ թերևս պրոֆեսորներից մեկը կթողնի պաշտոնը... Որևէ մեկի տեղը թեկնածու լինելը ստոր բան է, ես սովոր չեմ նման փորձերի, որը մեծապես փչացնում է մարդկանց» (էջ 35): Իհարկե, որոշ ժամանակ անց գիտնականի համբավն ստիպում է ինստիտուտի դիրեկտորին՝ հաջողացնել ֆիզիկայի նոր ամբիոնի կազմակերպումը: 1895 թվականին Պիեռը նշանակվում է պրոֆեսոր, բայց դրանով ամենևին չեն բարելավվում նրա աշխատանքային պայմանները: Մինչև իր կյանքի վերջն էլ լաբորատորիա ունենալը նրա համար մնաց նվիրական երազանք: Մահվանից ընդամենը հինգ օր առաջ միայն, Ֆրանսիայի կառավարող շրջանները խոստացան լաբորատորիա տալ ակադեմիկոս Պիեռին, բայց արդեն ուշ էր:

Քաղաքականությունից հեռու կանգնած մարդ էր նա, հակակրանք էր տածում բոլոր տեսակի տիտղոսների, կոչումների նկատմամբ, չէր ցանկանում բարձրաշխարհիկ ծանոթություններ ըստեղծել, գերադասում էր մնալ իր խոհերի հետ, քան պարապ զրույցով զբաղվել, ժամանակ վատնել: Խիստ սակավաթիվ ընկերներ ուներ նա. բոլորն էլ գիտության շահերով ապրող մարդիկ էին՝ անկեղծ ու համարձակ:

Պիեռ Կյուրին մինչև 35 տարեկան հասակը չամուսնացավ, որովհետև գտնում էր, որ ամուսնությունը կխանգարի գիտությանը նվիրվելու իր նպատակադրմանը: Ահա ինչ է գրել քսանամյա երիտասարդն իր օրագրում. «...Կինը մեզնից անհամեմատ շատ է կյանքը սիրում՝ հանուն կյանքի, մտավոր ընդունակություններով օժտված կանայք հազվագյուտ են: Դրա համար էլ, երբ մենք հափշտակվում ենք մի ինչ-որ միստիկական սիրով, ուզում ենք գնալ նոր, ոչ սովորական ուղիով և մեր ամբողջ մտքերը նվիրում ենք ստեղծագործական որոշակի աշխատանքի, որը մեզ հեռացնում է մարդկային շրջապատից, ապա մենք ստիպված ենք պայքարելու կանանց դեմ» (էջ 197):

Տարիներ անց «կանանց դեմ պայքարող» Պիեռը որոշեց ամուսնանալ: Հայտնվեց Վարշավա-

յից եկած, Սորբոնի համալսարանի լեհ ուսանողուհի Մարի Սկլոդովսկան: Նրանց պարզ ընկերական հանդիպումներն սկիզբ դրեցին մի ազնիվ ու մեծ սիրո: Նրանց հետաքրքրությունների, մտածողության, բնավորությունների ու նպատակների ընդհանրությունը երկու սրտերը ներդաշնակ սիրով ձուլում է իրար: Երկու տաղանդավոր մարդիկ սկսում են միասին խորհել, միասին գործել: Ի՜նչ հազվագյուտ զուգադիպություն: «Ամեն ինչ դասավորվեց այնպես և նույնիսկ ավելի լավ, քան ես կերազեի...— հետագայում գրում է Մարին.— Ես գնալով ավելի ու ավելի եմ հիանում նրա բացառիկ արժանիքներով, դրանք այնպիսի հազվագյուտ, այնպիսի վեհ արժանիքներ են, որ ինձ թվում է, թե նա իր տեսակի մեջ միակ անձնավորությունն է, որին օտար են ամեն տեսակի ունայնամտություն, ամեն տեսակի գծուծություն, որոնք և քո մեջ ես տեսնում, և ուրիշների ու ներողամտորեն ես մոտենում, բայց և այնուամենայնիվ որպես իդեալի ձգտում ես ամենակատարյալին» (էջ 334):

Պիեռը նույնպիսի հիացական կարծիք ուներ Մարիի մասին, որը Պիեռի երազած հազվագյուտ կանանցից էր՝ օժտված մտավոր բարձր ունակություններով: Այդ շիկահեր, աշխույժ ու նուրբ լեհուհին, ինչպես գրում է Եվա Կյուրին, մի քանի րոպեում կարող էր մանկանալ ու լրջանալ, լինել ընկեր և ընկերուհի, գիտնական ու սիրեցյալ:

Նա տասնվեց տարեկանում ոսկե մեդալով ավարտում է գիմնազիան, սկսում դասեր տալ, շփվում առաջադեմ երիտասարդության հետ, տարվում ռևոլյուցիոն տրամադրություններով, խորհում տիրող անարդար կարգերը փոխելու մասին: Մոր մահից հետո Սկլոդովսկիների ընտանիքի վիճակը ծանրանում է: Մարին հարուստների երեխաներին մասնավոր դասեր տալով միջոցներ է հայթայթում ուսումը շարունակելու համար: Մի քանի տարի հետո նա դառնում է Սորբոնի համալսարանի ուսանողուհի: Մեծ ընդունակություններ և վիթխարի աշխատասիրություն ցուցաբերելով, ստանում է լիցենցիատի երկու դիպլոմ՝ ֆիզիկայի և մաթեմատիկայի գծով: Ամուսնանալուց հետո Մարին աշխատում է ֆիզիկայի և քիմիայի ինստիտուտում՝ ամուսնու մոտ: Երկու տարի անց ամուսնու հետ հայտնագործում է պոլոնիումը և ապա՝ ռադիումը, ուսումնասիրում ռադիոակտիվ երևույթները: Եվ այդ խոշոր հայտնագործումները արվում են աշխատանքային ծայրահեղ վատ պայմաններում: Ռադիումի ռադիոակտիվ երևույթների հետ կապված փորձերը չորս տարի շարունակ նրանք կատարում են մի խարխուլ ու լքված կառույցում: Բայց հենց այդ խարխուլ ու հին կառույցում են անցել «...մեր կյանքի ամենալավ ու ամենաերջանիկ տարիները,— հիշում է Մարին,— որոնք ամբողջապես նվիրված էին աշխատանքին: Ես հաճախ ուտելու բան էի պատրաստում հենց այստեղ, որպեսզի բացառիկ կարևոր գործողությունների ընթացքը չընդհատվի: Երբեմն ամբողջ օրը երկար, համարյա իմ հասակին հասնող երկաթե ձողով խառնում էի եռացող զանգվածը և հոգնածությունից երեկոյան վայր ընկնում»:

Դեռ ավելին. ռադիում ստանալու համար պահանջվող հումքը, համապատասխան սարքերը ձեռք են բերել իրենց խնայած միջոցներով: 1903 թվականին Կյուրի ամուսիններն արժանանում են Նոբելյան մրցանակի՝ ֆիզիկայի գծով: Իսկ Լոնդոնի թագավորական ընկերությունը նրանց հանձնեց Դեվիի մեդալ: Ի դեպ, Ֆրանսիան միշտ վերջինն է գնահատել այդ խոշոր գիտնականների արժանիքներն ու գործը: Սակայն նյութական զրկանքները, աշխատանքի աննորմալ պայմանները չէին ընկնում գիտության անձնվիրաբար ծառայող ամուսիններին: Մարին համոզված էր, որ մեծ նպատակի ձգտող մարդը պետք է ունենա համառ կամք և մեծ զոհողություններ հանձն առնի: «Ինչպես երևում է,— գրում է Մարին,— մեզնից ոչ մեկին կյանքը հեշտությամբ չի տրվում: Ի՞նչ արած, պետք է համատակամություն ունենալ, իսկ գլխավորը վստահություն սեփական ուժերի նկատմամբ: Պետք է հավատալ, որ դու ինչ-որ մի բանի պետք ես և այդ «ինչ-որ մի բանին» պետք է ինչ գնով էլ լինի հասնել»: Եվ նա հասավ: Նա ո՛չ միայն շարունակեց իր ամուսնու կիսատ թողած գործը, այլև ստեղծեց ռադիումի ինստիտուտ, գլխավորեց ռադիումի արդյունաբերության կազմակերպման գործը Ֆրանսիայում, ստեղծեց լաբորատորիա:

1906 թվականի ապրիլի 16-ին Պիեռ Կյուրին Փարիզի փողոցներից մեկի խաչմերուկով մտազբաղ անցնելիս ընկնում է բեռնատար ձիակառքի տակ: Նրա եղերական մահը ցնցում է բոլորին: Ֆրանսիան սգում է մեծ գիտնականի կորուստը: Մարի Կյուրին շանթահարված այդ դժբախտ դեպքից, ջանում է հոգու խորքում պահել իր վիշտը, չհայտնել ոչ ոքի, ուրիշների կարեկցանքին ու խղճահարությանը չարժանանալու համար: Այդ ծանր օրերին նա իր խոհերը վստահում է միայն օրագրին, գրելով վիրավոր սրտի քնքուշ թախիծով ողողված տողեր: Ահա մի փոքրիկ հատված. «Սիրելի Պիեռ... Ուզում եմ քեզ ասել, որ այլևս ինձ համար սիրելի չեն ո՛չ արևը, ո՛չ ծաղիկները. նրանց տեսքն ինձ տանջանք է պատճառում, ես ինձ ավելի լավ եմ զգում մառախլապատ եղանակին, որպիսին քո մահվան օրն էր, եթե պարզ եղանակը չեմ ատում, ապա դա միայն նրա համար, որ այն անհրաժեշտ է երեխաներին» (էջ 351):



Իր ամուսնու ողբերգական մահից հետո Մարի Կյուրին փոխարինում է նրան: Նա դասընթացն սկսում է ճիշտ այն նախադասությունից, որի վրա կանգ էր առել ամուսինը: Նա խիզախորեն է տանում իր մեծ կորստի ցավը, խնամում իր դուստրերին՝ Իրենին և Եվային, նախապատրաստվում դասախոսությունների, վերսկսում ընդհատված փորձարարական աշխատանքները: Ամուսնու մահից հինգ տարի հետո նա դառնում է Նոբելյան մրցանակի կրկնակի լաուրեատ:

Մինչև օրս ոչ մի կին գիտնական այնպիսի ժողովրդայնություն չի վայելել և այնպիսի մեծարանքի չի արժանացել, ինչպես Մարի Կյուրին: Նրան շնորհվել է 10 մրցանակ և 16 մեդալ: Նա 106 գիտական հիմնարկների, ակադեմիաների և գիտական ընկերությունների պատվավոր անդամ է ընտրվել, ընդ որում 1926 թվականից՝ ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի պատվավոր անդամ էր:

Մարի Սկլոդովսկա Կյուրին որպես գիտնական ո՛չ միայն հռչակավոր էր, այլև զարմանալիորեն անշահախնդիր, ինչպես իր ամուսինը: Աշխարհի տարբեր կողմերից խնդրում էին հայտնել, թե ինչպես կարելի է ստանալ ռադիում, ինչ եղանակներով ու մեթոդներով: Առանց որևէ բան թաքցնելու նրանք հայտնում էին ամեն ինչ, չմտածելով օգուտ քաղել կամ նյութական շահ ստանալ իրենց գյուտից: Ուշագրավ է նաև մի այլ փաստ: Ամերիկայի նշանավոր ժուռնալիստներից մեկը՝ միսիս Մելոնեյը, Փարիզում այցելելով մադամ Կյուրիի լաբորատորիան՝ հարցնում է.

— Ի՞նչ կուզեիք ունենալ:

— Ինձ մի գրամ ռադիում է պետք, որպեսզի կարողանամ շարունակել իմ հետազոտությունները, բայց դա առնել չեմ կարող, իմ նյութական միջոցները չեն ներում,— հանգիստ պատասխանում է Մարի Կյուրին:

Մելոնեյը վերադառնում է Ամերիկա, հումանիստ ամերիկուհիների օգնությամբ ձեռք է բերում մեկ գրամ ռադիում (այն ժամանակ մեկ գրամ ռադիումի ապրանքային արժեքը 100 հազար դոլար էր) և խնդրում գիտնականին՝ գալ տեղում ստանալու: Մարին մեկնում է Ամերիկա. չտեսնված նոր ընդունելությունից հետո Ամերիկայի պրեզիդենտ Հարդինգը ցանկանում է այդ գանձը տալ թանկագին հյուրին հատուկ նվիրատվության ակտով: Մ. Կյուրին առարկում է. «Անհրաժեշտ է այս ակտը փոխել: Ռադիումը, որն Ամերիկան նվիրում է ինձ, պետք է ընդմիշտ պատկանի գիտությանը: Քանի ես կենդանի եմ, պետք է օգտագործեմ միայն գիտական աշխատանքների համար: Իսկ եթե ակտը մնա այդ ձևով, ապա իմ մահից հետո ինձ նվիրած ռադիումը որպես ժառանգական սեփականություն կմնա մասնավոր մարդկանց, այսինքն՝ իմ աղջիկներին: Դա անթույլատրելի բան է: Ես ուզում եմ այդ ռադիումը նվիրել իմ լաբորատորիային»:

Մարի Կյուրին մեծ հայրենասեր էր: Նրա երկրորդ հայրենիքը Ֆրանսիան էր: 1914 թվականի համաշխարհային պատերազմի առաջին իսկ օրերից նա հայրենիքի պաշտպանության ֆոնդին է առաջարկում իր ոսկե մեդալները: Նրա նախաձեռնությամբ և անմիջական մասնակցությամբ ստեղծվում են ռենտգեն սարքավորումներ, կազմակերպվում ռադոնային բուժում, հավաքագրվում ու պատրաստվում են տասնյակ ռենտգենոլոգներ՝ ֆրանսիացի վիրավոր մարտիկներին բուժելու համար: Պատերազմից հետո Մարի Կյուրին անցնում է հետազոտական աշխատանքների: Տարիների համառ ջանքերով ստեղծում է ռադիումի ինստիտուտ, ժամանակակից սարքավորում ունեցող լաբորատորիա. մինչև կյանքի վերջը մնալով որպես սիրված դասախոս ու անզուգական ընկեր:

Ապրելով Փարիզում, Մարի Սկլոդովսկա-Կյուրին երբեք չէր մոռանում սիրելի հայրենիքը, Վարշավան, հարազատներին: Նա երազում էր հայրենիքը տեսնել ցարիզմի լծից ազատագրված: Երբ Հոկտեմբերյան ռևոլյուցիան տապալեց ցարիզմը, Մարի Կյուրին ցնծությամբ ընդունեց Լեհաստանի անկախության լուրը: Նա նորից դիմեց Ամերիկայի օգնությանը մեկ գրամ ռադիում ձեռք բերելու՝ այս անգամ հայրենի Վարշավայում ռադիումի ինստիտուտ ստեղծելու համար: Եվ 1932 թվականին անձամբ մասնակցեց Վարշավայի ինստիտուտի բացման հանդիսավոր արարողությանը:

Մարի Կյուրին նաև հոգատար մայր էր ու լավ դաստիարակ: Երբ Իրենը հասնում է լիցեյ ընդունվելու տարիքին, Մարին մտադրվում է աղջկան բարձրագույն կրթության տալ ուրույն ձևով. պրոֆեսորների երեխաներից մի խումբ է ստեղծում, որի հետ պարապում են պրոֆեսորները, կիրառելով ուսուցման նոր մեթոդներ: Մարին սաներին ներշնչում էր սեր գիտության նկատմամբ, կիրառում աշխատանքի իր մեթոդները. ֆիզիկական երևույթները բացատրում կենդանի, շոշափելի փաստերով, պահանջում պատրաստել գործիքներ և օգտվել դրանցից:

Փայլուն դաստիարակության շնորհիվ է մեծ մասամբ, որ Կյուրիների դուստրը՝ Իրենը և փեսան՝ Ֆրեդերիկ Ժոլիո Կյուրին, նույնպես իրենց կյանքը նվիրաբերեցին գիտությանը՝ արժանանալով Նոբելյան մրցանակի: Իսկ Եվան՝ այդ տաղանդավոր ժուռնալիստը, իր ծնողների մասին գրեց մի սքանչելի լեգենդ, որը դաստիարակիչ խոշոր նշանակություն ունի երիտասարդ սերնդի համար:

Ա. ՅԱՎՐՅԱՆ

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ՀԿՊ Ալավերդու շրջկոմին կից գործող ակտիվի դպրոցի սեմինար պարապմունքներից մեկի թեման էր՝ «Ապրանքային արտադրություն: Ապրանք և փող». սկսվեց բանավեճ. ունկնդիրների մի մասը գտնում էր, որ կապիտալիստական արտադրության ժամանակ կապիտալիստի կողմից օգտագործվող այն իրերը (հաստոց, մեքենա, հագուստ և այլն), որոնք արտադրվել են տվյալ կապիտալիստին պատկանող ձեռնարկություններում, ապրանք չեն: Նրանք վկայակոչում են մարքսիստական այն սահմանումը, որ իրը ապրանք դառնալու համար պետք է օտարվի, վաճառվի, այսինքն՝ պետք է փոխվի դրա սեփականատերը: Ունկնդիրների մի մասի կարծիքով էլ պարզ ապրանքային արտադրության ժամանակ այդ իրերը ապրանք չեն, իսկ կուտ կապիտալիստական արտադրության դեպքում պետք է համարել ապրանք:

Խնդրում ենք վերոհիշյալ հարցը պարզաբանել ձեր ամսագրում:

Ռ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԿՊ Ալավերդու շրջկոմի քաղլուսկաբինետի վարիչ

Խմբագրության խնդրանքով ստորև այդ հարցին պատասխանում է տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ:

Նախ՝ պարզենք, թե ի՞նչ է ապրանքը և որո՞նք են կապիտալիստական ապրանքային արտադրության առանձնահատկությունները:

Ապրանքը աշխատանքի մի այնպիսի արդյունք է, որը նախանշված է ոչ թե արտադրողի անձնական պահանջմունքները, այլ մեկ ուրիշի՝ սպառողի, պահանջմունքները բավարարելու համար: Այլ կերպ ասած, դա սոսկ սպառողական արժեք չէ, այլ հասարակական սպառողական արժեք, որ ուրիշին է անցնում ոչ թե արտատնտեսական հարկադրանքի միջոցով, ինչպես, օրինակ, բահրան ֆեոդալական հարաբերությունների պայմաններում, այլ հասարակական սպառարժեք է, որ օտարվում, տրվում է ուրիշին փոխանակության միջոցով:

Այժմ պարզենք, թե «կապիտալիստի կողմից օգտագործվող այն իրերը (հաստոց, մեքենա, հագուստ և այլն), որոնք արտադրվել են տվյալ կապիտալիստին պատկանող ձեռնարկություններում» ապրա՞նք են, թե՞ ոչ:

Տրված հարցը ինքնին պարզորոշ չէ: Նախ՝ պետք է գիտենալ, որ տարբեր է տարբեր ապրանքների (իրերի) սպառման ձևը: Բոլոր այն ապրանքները (իրերը), որոնք բավարարում են մարդու պահանջմունքը, անմիջաբար՝ որպես կենսամիջոց (սնունդը, ոտնամանը, հագուստը և այլն) սպառման առարկաներ են: Իսկ այն ապրանքները (իրերը), որոնք բավարարում են մարդու պահանջմունքը կողմնակի ճանապարհով, օգտագործվում են արտադրողականորեն, արտադրամիջոցներ են: Հաստոցն ու մեքենան արտադրամիջոցներ են, իսկ հագուստը՝ սպառման առարկա:



Հաստոցն ու մեքենան (ինչպես և հումքը), որոնք արտադրվել են տվյալ կապիտալիստին պատկանող ձեռնարկություններում և օգտագործվում են կապիտալիստի կողմից իրեն պատկանող ձեռնարկությունում, իհարկե, ապրանք են: Դրանք կոչված են ապահովելու կապիտալի աճումը վարձու բանվորների շահագործման պրոցեսում նոր ապրանքներ արտադրելու միջոցով և իրենց արժեքը փոխանցելու ու պահպանելու են այդ ապրանքների արժեքի մեջ: Հասկանալի է, որ «կապիտալիստական արտադրության ժամանակ» հաստոցն ու մեքենան չի կարելի օգտագործել այլ կերպ, քան արտադրողաբար, այսինքն՝ նոր ապրանքներ արտադրելու համար:

Այլ բան է հագուստի հարցը: Եթե, օրինակ, կապիտալիստն ունի կարի գործարան և իր կամ իր ընտանիքի անդամների համար վերցրել է իր գործարանում կարված հագուստից, ապա այդ հագուստն ապրանք չէ, որովհետև դա վերցված է և ոչ թե ձեռք բերված փոխանակության միջոցով: Հագուստը ապրանք չի լինի նաև այն դեպքում, երբ գործարանատեր կապիտալիստը իր գործարանում կարված հագուստը ընծայի մեկ ուրիշին, թեկուզ և այս դեպքում տեղի կունենա սեփականության տիրոջ փոփոխություն: Հագուստը պատկանում էր կապիտալիստ-գործարանատիրոջն մինչև ընծայելը, իսկ ընծայելուց հետո դրա սեփականատերը դարձել է նա, ում ընծայվել է: Ճիշտ է, ապրանքային հասարակության մեջ միմյանց փոխադարձ ընծա մատուցելը իր հիմքում ունի ապրանքափոխանակության մի այլաձևություն և կողմերից յուրաքանչյուրը հաշվում է, թե ի՞նչ արժեքի իր ընծայեց, փոխարենը ի՞նչ ստացավ: Բայց այդ ուրիշ հարց է, որը խոսում է ապրանքափողային հարաբերությունների առկայության և մարդկանց վարքագծի, բնավորության ու հոգեբանության վրա նրա ունեցած ազդեցության մասին, հարց, որը դուրս է բուն քաղաքատնտեսության շրջանակներից և ըմբռնելի է դառնում քաղաքատնտեսության օգնությամբ:

Բայց դուք հարցնում եք «կապիտալիստական արտադրության ժամանակ օգտագործվող հագուստի» մասին: Ի՞նչ կնշանակի կապիտալիստական արտադրության ժամանակ օգտագործվող հագուստ: Այդ, հավանաբար, կնշանակի, որ կապիտալիստը ձեռնարկության աշխատողներին՝ բանվորներին ու ծառայողներին, հագուստ է տվել, ավելի ճիշտ արտադրության բնույթով պայմանավորված արտահագուստ: Եթե այն տրված է վճարով, պարզ է, որ ապրանք է, իսկ եթե տրված է անվճար, կապիտալիստների ու բանվորների միջև եղած հարաբերությունների ընթացքում ստեղծված կանոնի կամ կոլեկտիվ պայմանագրի հիման վրա, կասկածից վեր է, որ դա աշխատավարձի անբաժանելի մասն է, աշխատուժ ապրանքի գնի բաղկացուցիչ մասը, աշխատուժի վերարտադրության պայմաններից մեկը:

Այժմ այն մասին, որ «իրը ապրանք դառնալու համար պետք է օգտագործվի, վաճառվի, այսինքն պետք է փոխվի դրա սեփականատերը»: Ճշմարիտ է, որ իրը ապրանք դառնալու համար, ինչպես ասացինք սկզբում, պետք է օտարվի՝ ուրիշին անցնի փոխանակության միջոցով, այսինքն՝ վաճառվի: Այդ նշանակում է հարաբերություններ տարբեր սեփականատերերի միջև: Դրանից չի կարելի վերանալ ապրանքի էության ուսումնասիրության ժամանակ՝ ընդհանրապես: Բայց այդ չի նշանակում, թե որպեսզի իրը ապրանք դառնա, միշտ

*պետք է փոխվի սեփականատերը: Կապիտալիստական արտադրության զարգացման որոշ աստիճանում, հատկապես իմպերիալիստական ստադիայում, որոշ կապիտալիստներ ունեն բազմաթիվ գործարաններ, որոնց միջև կան տնտեսական կապեր: Յուրաքանչյուր գործարան ունի իր հաշվապահությունն ու հաշվեկշիռը: Տնտեսական կապերը նրանց միջև իրականանում են առք ու վաճառքի միջոցով, այլ կերպ ասած՝ տվյալ կապիտալիստին պատկանող մի գործարանը պահանջվող միջոցներ է վաճառում նույն կապիտալիստին պատկանող մյուս գործարանին: Այս դեպքում սեփականատերը չի փոխվում, բայց արդյունքը (ինչ էլ այն լինի՝ մեքենա, հաստոց, հումք) միևնույն կապիտալիստին պատկանող մի գործարանից մյուսին է անցնում որպես ապրանք:*

*Եվ, վերջապես, ապրանքը բնորոշելիս չի կարելի վերանալ սոցիալիզմի պայմաններում գոյություն ունեցող ապրանքային արտադրությունից, որին ի դեպ, Մարքսն ու Էնգելսը չեն անդրադարձել. այն ժամանակ նրանք կարծել են, թե սոցիալիզմի պայմաններում աշխատանքի արդյունքները ապրանք չեն դառնա և չի գործի արժեքի օրենքը: Կյանքը չի հաստատել այդ կարծիքը: Սոցիալիզմի պայմաններում մնում են ապրանքային արտադրությունն ու փողը, գործում է արժեքի օրենքը: Սոցիալիզմի պայմաններում ապրանք են և պետական ու կոոպերատիվ խանութներում և կոլտնտեսային շուկաներում վաճառվող սպառման առարկաները, ապրանք են և արտադրության այն միջոցները, որոնք պետությունը վաճառում է կոլտնտեսություններին (գյուղատնտեսական մեքենաներ, վառելիք, պարարտանյութ և այլն), կոլտնտեսությունները՝ պետությանը (գյուղատնտեսական հումք) և պետական ձեռնարկությունները՝ պետական ձեռնարկություններին: Վերջին դեպքում սեփականատերը չի փոխվում, երբ պետական մի ձեռնարկությունն արտադրամիջոց է վաճառում մյուս ձեռնարկությանը (օրինակ, մեքենաշինական գործարանը լինոտիպ ու տպագրական մեքենաներ է վաճառում պոլիգրաֆ ձեռնարկությանը): Դրանք համաժողովրդական ունեցվածք են, նրանց սեփականատերը միևնույն սոցիալիստական պետությունն է:*

*Իհարկե, ապրանքային արտադրությունը սոցիալիզմի պայմաններում ունի իր առանձնահատկությունները և արմատապես տարբերվում է կապիտալիստական ապրանքային արտադրությունից, բայց դա այլ հարց է, որին դուք կանդրադառնաք քաղաքատնտեսության կապիտալիզմի բաժնի ուսումնասիրությունից հետո:*




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 06009 Պատվեր 346 Տիրաժ 10.720 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 9/III 1966 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Պարտիական շինարարության հարցեր: *Լենհրատ. 1965, 656 էջ:*

*Մարքսիզմ-լենինիզմի, բարձրագույն պարտդպրոցների, արհմիութենական, կոմերիտական դպրոցների ունկնդիրների համար հրատարակված այս դասընթացձեռնարկը բաղկացած է երեք բաժնից՝ Պարտիական կազմակերպական աշխատանք. Գաղափարախոսական աշխատանք. Ժողովրդական տնտեսության, պետության և հասարակական կազմակերպությունների պարտիական ղեկավարություն: Գրքում զետեղված հոդվածներում լուսաբանվում են պարտիական շինարարության լենինյան աշխատանքի սկզբունքները, մարքսիզմ-լենինիզմի հետագա զարգացումը մեր պարտիայի XX և XXII համագումարների որոշումներում, պարտիայի նոր ծրագրում, Կենտկոմի որոշումներում և այլ նյութեր:*

Սովետահայ գրականության պատմություն *(երկրորդ հատոր) (1941—1964): Ե., ԳԱ հրատ., 1965, 773 էջ:*

*Մ. Աբեղյանի անվան ինստիտուտի պատրաստած այս հատորն ամփոփում է Հայրենական մեծ պատերազմի և հետպատերազմյան ժամանակաշրջանի սովետահայ գրականության պատմությունը: Այստեղ զետեղված են՝ Ս. Աղաբաբյանի՝ Ն. Զարյան, Հ. Քոչար, Հ. Շիրազ, Հ. Սահյան, Ս. Խանզադյան, Ս. Կապուտիկյան. Ս. Սողոմոնյանի՝ Հետպատերազմյան գրականության ներածություն, Հետպատերազմյան պոեզիան. Կ. Գրիգորյանի Ա. Իսահակյան. Տ. Հախումյանի՝ Դ. Դեմիրճյան. Ար. Գրիգորյանի՝ Գ. Սարյան, Գ. Էմին. Ս. Մանուկյանի՝ Գ. Սևունց. Լ. Հախվերդյանի՝ Հետպատերազմյան դրամատուրգիան. Խ. Գյուլնազարյանի՝ Վ. Անանյան, Մանկական գրականության աշխատությունները:*

ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա.—Նոր հերոսի որոնման ճանապարհին: *Ե., Հայաստան հրատ., 1965, 325 էջ:*

*Գիրքը պատմում է սովետահայ գրականության սաղմնավորման և նրա զարգացման առաջին տասնամյակի, սովետական հասարակարգի պայմաններում նոր մարդու ձևավորման և գեղարվեստական գրականության մեջ նրա արտացոլման մասին:*

Զրույցներ կրոնի և գիտության մասին: *Հանրամատչելի դասագիրք: Ե., Հայաստան հրատ., 1965, 405 էջ:*

*Այս գիրքը բաղկացած է հետևյալ բաժիններից՝ Գիտությունը երկրի, երկնքի և մարդու մասին. Կրոնի ծագումը և նրա դերը հասարակության մեջ. Կրոնը և սովետական իրականությունը. Հեղինակային կոլեկտիվը պատմում է կրոնի, գիտական աշխարհայացքի և կյանքի ճշմարտության մասին:*

ՄԱՅՍԿԻ Ի. Մ.—Սովետական դեսպանի հիշողություններ: *Պատերազմը: 1939—1943, Մ., «Наука» հրատ, 1965, 407 էջ:*

*Այս գիրքը հեղինակի «Սովետական դեսպանի հիշողություններ» երկհատորյա աշխատության շարունակությունն է: Հեղինակը հետաքրքիր ձևով շարադրում է պատերազմի տարիներին սովետական ներության արտաքին քաղաքականության, երկրորդ համաշխարհային պատերազմի իրադարձությունների, Ստալինի ու Չերչիլի փոխհարաբերությունների մասին:*

ԼԵՊՊ ՌԱԼՖ—Սպանություն և գերսպանություն: *Ե., Հայաստան, հրատ., 1965, 187 էջ:*

*Ամերիկյան ֆիզիկոս-գիտնականի այս գիրքը պատմում է ԱՄՆ-ում ատոմային մոնոպոլիաների և ռազմամոլների շահերի միահյուսման և սոցիալիստական երկրների դեմ հրթիռա-միջուկային պատերազմ նախապատրաստելու մասին:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՎՏՈՄԱՏԻԿ ՊԼԱԶՄԱՅԻՆ ԿՏՐԻՉ

Պլազմայի աղեղով գործող ավտոմատիկ կտրման *OC*—1 սարքը ալյումինե համաձուլվածքների, չժանգոտվող հրակայուն պողպատների մեխանիկական կտրման համեմատությամբ 45—50 անգամ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։ Ժամում 40 մետր արագությամբ կարելի է կտրել և ձևել 120 մմ հաստության 1500—3000 մմ ցանկացած կոնֆիգուրացիայի դետալներ։ Կտրումը կատարվում է պողպատից պատրաստված մագնիսային շաբլոնով։

## ՈՒԺԵՂ ԱԶԴՈՂ ԱՆՏԻԲԻՈՏԻԿ

Հարավսլավական իմունոլոգիական ինստիտուտի պրոֆեսոր Կռունա Կարովիչը ստացել է անտիբիոտիկ **ЛБК**։ Նոր անտիբիոտիկը ացիդոֆիլային բակտերիաների տարատեսակն է, որոնք ծառայում են ացիդոֆիլինի ստացման համար։ Տասնամյա փորձարկումների ընթացքում պրոֆեսոր Կարովիչը անտիբիոտիկ **ЛБК**-ից ստացված ացիդոֆիլինային կաթի ազդեցությունը փորձարկել է կենդանիների վրա։ Ստուգումը հիվանդ մարդկանց վրա պարզել է, որ **ЛБК**-ն ուժեղ գործող անտիբիոտիկ է, որը ազդում է նաև այն դեպքում, երբ մնացած անտիբիոտիկները ազդեցություն չեն թողնում։ Լավ արդյունքներ է ստացված զանազան բորբոքային պրոցեսների, տուբերկուլյոզի, թարախային վերքերի, էկզեմայի և այլ հիվանդությունների բուժման ժամանակ։

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ԿԱՐՈՒՄ Է

Վերջերս Անգլիայում սկսել են թողարկել կարի մեքենաներ, որոնք թել չեն օգտագործում։ Ի դեպ, դրանց ասեղներն էլ արտասովոր են՝ բութ ձողեր են, որոնց ծայրերը կարող են տատանվել ուլտրաձայնի հաճախականությամբ։ Այդպիսի «ասեղները» չեն կարում կտորը, այլ կարծես այն զոդում են ներքևում դրված լարի հետ։ Ուլտրաձայնային կարի մեքենաների վրա կարելի է «կարել» սինթետիկ, բրդյա, բամբակյա գործվածք և նույնիսկ թուղթ։

## ՆՈՐ ՄԱՆՐԱԹԵԼ-ՀԵԼԻՈՆ

Իտալական Շատիլյոն ֆիրման թողարկել է «հելիոն» ֆիրմայի անունը կրող պոլիամիդային մանրաթելից պատրաստված մի շարք գործվածքներ։ Այդ մանրաթելը նայլոնի կատարելագործված տարատեսակներից է՝ պոլիմերի մոլեկուլների ավելի խիտ «դասավորությամբ»։ Դրա շնորհիվ նոր մանրաթելը ավելի բարակ է, դիմացկուն և էլաստիկ, քան նայլոնինը։ Նրանից կարելի է պատրաստել լայն սպառման զանազան առարկաներ, որոնք աչքի կընկնեն իրենց բացառիկ նրբությամբ ու շքեղությամբ։ Այդ մանրաթելի նոր հատկությունները հնարավոր են դարձնում դրանք օգտագործելու տեխնիկական նպատակներով։ Դրանցից պատրաստում են ձկնորսական ցանցեր, քիմիական ֆիլտրեր, ամենագնաց ավտոմոբիլների դողերի համար կորդային հիմք։ Հելիոնային թելը նույնիսկ մշակման բարձր աստիճանի պայմաններում չի կտրվում, չի ձևափոխվում։

## ԿԻՍԱՀԱՂՈՐԴԻՉՆԵՐՈՎ ԶՈԴԻՉ ԱՊԱՐԱՏ

Չեխոսլովակիայում նախագծվել է կիսահաղորդիչներով աշխատող ապարատ, որը կարող է զոդել բարակ թիթեղը։ Այդ ապարատում օգտագործված են տիրիստորներ՝ կիսահաղորդիչ սարքեր, որոնց օգնությամբ կարելի է կարգավորել հաստատուն և փոփոխական հոսանքները գլանման ցեխերում, էլեկտրաքարշներում, տրոլեյբուսներում, արդյունաբերական ցենտրիֆուգաներում։ Տիրիստորները արդյունավետ են, հուսալի և տնտեսապես ձեռնտու։